# ՀՐԱՒԻՐԱԿ ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

ԵՐԿՆԱՍԻՐԵԱՑ
ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ
ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
ԵՐՈՒՍԱՂԷՄ

1892

Khrimean Hayrik, Catholicos of Arm.
Hrawirak Erkrin Aweteats ...

# ՀՐԱՒԻՐԱԿ
# ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

*ՇԱՐԱԴՐԵԱՑ Ի ՉԱՓՍ ՀԱՅԿԱԿԱՆՍ*

**ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ**

Ի ԼՈՅՍ ԸՆԾԱՅԵԱԼ ԲԱՐԵՐԱՐ ՁԵՌՆՏՈՒՈՒԹԵԱՄԲ
ԳԵՐԱԶՆԻՒ ԵՂԲԱՐՑ
ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
ԱՄԵՆԱՊԱՏԻՒ Տ. ՅԱՐՈՒԹԻՒՆ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

*Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ*
ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

1892



# Ի ՅԻՇԱՏԱԿ

ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՍԻՐԵՑԵԼՈՅ ՀՕՐՆ

ՍԵՐՈՎԲԷԻ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ

ԿԱՆԳՆԵՆ ՋՀՐԱՒԻՐԱԿՍ

## ԻԲՐԵՒ ԱՆՄԱՀ ՄԱՀԱՐՁԱՆ

ՈՐԴԻՔ ՀԱՐԱԶԱՏ

ՀԱՅՐԱՍԷՐ ԵՒ ԵՐԱԽՏԱԳԷՏ

ՊԱՏՐԻԿ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԻՒԼԱՊԻ

ԵՒ

ՅԱՐՈՒԹԻՒՆ

Այլ ընդէ՞ր այսչափ լոյս ու կոծ և համայն ազգային տխրութիւն. նա մանկանայու մարդ էր և մեռաւ։ Բայց չգիտէ՞ք միթէ զի մարդիկ չեն կամիր, որ առաքինիք բարձուին աշխարհէս. քանզի այդ կարի դառն կորուստ է ընկերութեան, որպէս կամիս մտածիր դու թէ նիւթապէս և թէ բարոյապէս։ Սորա համար առաւել քան զամէն ողբայ Կիւլպէնկեան նահապետական գերդաստանն, պակասեցաւ նահապետն իւր գլխէն և ծերն ՚ի տանէն. ողբացին ողջոյն Վորդպատրիկեան շառաւիղք, բարեկամք և սիրելիք զի բարի խնամակալն թողուց զիրենք երկնից Հօր պաշտպանութեան ու գնաց. լացին այն ամէն աղքատ զաղարաներ, զի այն բաց ու պատրաստ կարկառիչ ձեռն՝ կծկեցաւ ՚ի գերեզման.

Ես չգիտեմ, դուք ինձ ասացէք, զինչ էին ձեր հանգուցեալ բարի Հօր բարեմասնութեան տիպարներ։ Խօսեցէք և ես արձանագրեմ։ Թէ ասէք մեր Հայր գորովալի որդեսէր ընտանեսէր և քաղցր էր. այո, գիտեմ և դուք քան զիս աւելի գիտէք։ Թէ ասէք մեծահանճար կրօնասէր աստուածապաշտ էր, այդ աշխարհ գիտէ և կը վկայէ։ Թէ ասէք՝ եկեղեցին կը սիրէր, ազգ կը սիրէր, ընկերասիրութեան պարտքեր կը կատարէր, դպրոց կը սիրէր, յառաջդիմութիւն կը սիրէր, զայդ ամէն գիտէ ժողովուրդ։ Թէ ասէք պարկեշտ էր, համեստ էր՝ միշտ չափաւորութիւն կը սիրէր և չէր անձնացոյց, զայդ ես փորձով գիտեմ, նա ցուցէ իմաստնոյն խրատ կը յիշէր, «Ընչափ ՚ի մեծութեան հասանիցես՝ ՚ի խոնարհութեան կալ զանձն քո»։

Հապա չգիտենաք ասել, թէ մեր Հայր հմուտ, կշռող, խոհեմառող, անխոնջ աշխատող մեծակարող մի վաճառական էր, այդմ ոչ միայն Հայ ազգ, այլ և Եւրոպ, Ասիա զանազան ազգեր քաջածանօթ են, և զի Կիւլպէնկեան տան համբաւ համատարած է։

Թողունք այս ամէն, ինձ թէ մնում, Վասպուրական աշխարհ ինձ յիշել կու տայ սովալլուկ ժողովուրդին այն սեւ օրեր. երբ Պոլսոյ յանձնաժողովին Ատենապետ էր հանգուցեալ Հայրն, իւր համախոհ անդամներով, Վոսփորի ափունքէն մինչև ՚ի Վան Հայ կը մխիթարէր սովալլուկ ժողովուրդին, և ո՞վ կրնայ պատմել այդ անձնանուէր և դրամն գործունէութեան մեծախնամ առատութիւն։

Սորա համար ահա Խրիմեան Հայրիկ պարտականութիւն՝ եղաւ ինքնին, մի Ճմլուտ Հրաւիրակիս հանգուցելոյն անուն եւ յիշատակ նորձանագրել։

Ահա յԵրուսաղէմ Սիոնի լերան վերայ կանգնած, մի մահարձան կերտեցի գրչով։ Մահարձանս մարմարին չէ, զոր կը քանդակէ պեղարուեստին ձեռք խորհրդաւոր նշաններով։ այլ միայն պարզ թուղթ սեւագրեալ, որ կը բովանդակէ իւր վերայ Երուսաղէմի փառաց նկարներ։ Աւասիկ թուեմ ձեզ մի առ մի։

Նազարէթի սուրբ Աւետման տաճարին Գաբրիէլի եւ ողջունեալ կուսին՝ նկար։ Բեթղեհեմի սուրբ Այրին եւ Մսուրին՝ Մանուկ Յիսուսին նկար։ Յորդանանու այն սուրբ գետին Մկրտելոյն եւ Մկրտչին, 'ի վերան Աղաւնակերպ Հոգւոյն եւ Հօր վկայողին՝ նկար։ Թաբօրական լերին վերայ լուսափայլեալ Աստուածորդւոյն փառաց՝ նկար։ Սիօնի սուրբ Վերնատան Յիսուս զատկին եւ զատկական գառին՝ նկար։ Գեթսեմանի պարտիզին Հրեշտակին եւ բաժակին, աղօթող եւ քրտինք թափող Յիսուսի ձայնին՝ նկար։ Գողգոթայի գլխոյն վերայ բարձրացեալ փառաւորեալ խաչեալ Փրկչի թափեալ արեան կարմիր՝ նկար։ Քրիստոսի Գերեզմանին այն ահաւոր վիմին՝ նկար։ մեռեալ եւ յարուցեալ Յիսուսի յաղթանակին՝ նկար։

Ահա այսչափ եւ այսքան կենդանի եւ հոգեշունչ նկարներով Մահարձանս զարդարեցի, տեսէք, դուք աշխուժական շառաւիղք տանն Կիլիկեան, թէ կարէ՞ք բաղդատել մարմարին քարէ արձանին հետ որ բերան ունի՝ չի խօսիր, աչք ունի՝ չի տեսներ, որ կայ յամին եւ չի շարժիր։

Իսկ իմ գրական կենդանագիր արձանս եւ կը խօսի եւ կը շարժի եւ կը թռչի համայն աշխարհ, զի իւր թեւերն Քրիստոսի խաչն է եւ իւր բարբառ՝ Աւետարանն է։ Գիտեմ թէ գիտէք գնահատել թէ քանի՞ փառաւոր է այս յիշատակարան, զոր կը նուիրեմ Ձեր հանգուցեալ Հօր յիշատակին։

Իսկ դուք, որդիք երախտագիտաց, ի՛նչ արիւար հատուցէք այնպիսի արժանաւոր Հօր։ Շատ արկէք, այնպէս արէք, ինչպէս իւր ցանկութիւնն էր․․ տարէք թաղեցէք զինքն Փրկչին ծոց, այն մարգարէական կայանին մէջ, որ լի է աղքատ գաղթականներով. Հանգուցեալ Սերովբէի գերեզմանը մի մշտնջենաւոր նշան պիտի լի-

մարմնոյս այսպէս փլուզանի, զի ծերացայ և հնացայ։ Այլ հաւատամ, թէ Տէր պահէ զիս, դեռ եւս տարաժամ է. զի պարտական եմ նմա և եկեղեցւոյն։

Անդ յայնժամ 'ի փոքու սենեկին ամփոփեալ ծուարեալ ձեռնարկի Հրաւիրակիս աշխատութեան, զի վճարեցից զպարտս իմ առ Երուսաղէմ։

Յաւուր միում մինչ սպառապէր են ձայնարկեալ եղանակաւ երգէի եւ գրէի, զի առանց երգելոյ՝ երգ հոգի չունի. յանկարծ եկն եկաց առաջի դրան սենեկին հանգուցեալ Տէր Յովհաննէս մեծագործ Պատրիարքն։ Զայնդ առի ասաց, ափրացու Մկրտիչ, զի՞նչ երգես և գրես. Տէր Սրբազան, ասացի, զՀրաւիրակն Աւետեաց երկրին, գրեմ. զո՞վ հրաւիրես; ասաց. զմանկունս եւ զժողովուրդս Հայոց հրաւիրեմ, Տէր հայր։ Գրեա՛ գրեա՛, օրհնեալ լինիս; Հրաւէր կարդա, թող յուխտ գան Հայոց ջերմեռանդ ժողովուրդ. զի բազում գանձուց պէտս ունիմ և մտադիր եմ եթէ յաջողէ Տէր՝ նորանոր շինուածս կառուցանել (*), որ խիստ կարեւորագոյն է 'ի պատիւ Ս. Աթոռոյս և անուանս։ Արդարեւ այսօր իւր մեծագործութեանց յիշատակք փառաւոր հանդիսանան 'ի պարծանս ազգին Հայոց և Ս. Յակոբեանց գերապանծ Աթոռոյն։

Իսկ ես յետ աւարտելոյ զերկ Հրաւիրակիս՝ դարձայ 'ի Բիւզանդիոն. ուր բարերար ձեռնտուութեամբ Պալեան Ճարտարապետ Կարապետ Ամիրային տպագրեալ 'ի լոյս հանի ԶՀՐԱՒԻՐԱԿՆ ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ. Այժմ կրկնակի տպագրութեան պատեհութիւնն՝ առիթ եղաւ ինձ 'ի լոյս հանել և յայտնել զծածկեալ անուն Բարերարին։

Անցին իբր չորեքտասան ամք. 'ի ժամանակին, յորում ընտրեցաւ Պատրիարք Ս. Երուսաղէմի հանգուցեալ Տէր Եսայի Պատրիարք. զարթեաւ յիս դարձեալ յիշատակ Ս. Երկրին. ուստի ուղեկցելով ընդ նմին եկի միւսանգամ յԵրուսաղէմ, և կատարելով զուխտս իմ, վերադարձայ 'ի Կոստանդնուպօլիս և ես չէի յայնժամ սոսկ ափրացու Մկրտիչ, այլ Վարդապետ և վանահայր Վարագայ Վանից. իսկ այժմ եմ նաեւ Եպիսկոպոս Գլակայ Վանից և ինձ գայ յերազի և ասեն զինէն թէ Նախկին Պատրիարք եւս լեալ իցեմ Կոստանդնուպօլսոյ։ Անցին զինեւ այդ ամենայն և եմ այժմ հովիւ առանց հօտի և վանահայր առանց վանուց։ Միթէ տրտո՞ւնջ բառնամ արդ, քա՛ւ, ոչ երբէք, զի ես ճանաչեմ

(*) Հանգուցելոյն Մեծագործութեան պատկանին այժմեան Հայկական Պատրիարքարանն խաչաձեւ յատակագծի վերայ, գմբեթայարկ փառաւոր Ս. Աստուածածին և Գանձատուն նորին, մե- թաղ ուխտաւորաց. որ այժմ Գալաթիոյն կը ծառայէ։

զաշխարհ՝ եւ զխումն զճանապարհ սուրբ Հարցն, որոց ոտից փոշւոյն՝ չհամարիմ զանձն իմ արժանի։

Անցին զինեւ այլ եւս բազմադէպ ժամանակք իբրեւ մի քառորդ դար. եւ ես հասի հազար ութ հարիւր իննսուներորդ յամին, ուր փոխելով յաստիճան ծերութեան եւ թէպէտ ծերութիւն հանգիստ խնդրէ, անձն խառնեալ փութայ 'ի նաւահանգիստն եւ խոնջեալ վաստակեալ ծերոյս հանգստարան պիտոյ էր լինել Վարագայ Խաչի հովանիք։ Այլ յիշեցի դարձեալ զԵրուսաղէմ եւ յուշ եկն ինձ Սիոնի լերինն բարձրացեալ խաչին յիշատակ, զի մեծ քան զՎարագայն է սա։ Ուստի 'ի ժամանակի ծերութեան իմում յերրորդ անգամ եկի յԵրուսաղէմ. զի գէթ 'ի վերջալոյս կենաց իմոց մի անգամ եւս տեսից զշնորհաբեր Աւետեաց երկիրն. յորում երեւեցաւ շնորհն Աստուծոյ Փրկիչ ամենայն մարդկան եւ ոչ միայն Հրէին։

Տեսի այժմիկ զԵրուսաղէմ, մեծացեալ պանծացեալ եւ փառաւորեալ յոյժ. 'ի վերայ ամենայն լերանց՝ 'ի վերայ ամենայն բլրոց կառուցեալ բարձրացեալ կան մեծամեծ եւ նորանոր հաստատութիւնք, վանք, հիւրանոց, որբանոց, հիւանդանոց, դպրոց եւ այլ բազմաթիւ կրօնական եւ մարդասիրական հաստատութիւնք, եւ ո՞վ կարող է այժմէն գուշակել զապագայ փառաց մեծութիւն քաղաքին Աստուծոյ Երուսաղէմի։

Այլ Փրկիչն աշխարհի զհամատարած տիեզերս բերով Աւետարանաւ իբրեւ զԵրուսաղէմ մի տաճար շինեաց 'ի տեղի երկրպագութեան՝ համայն հաւատացելոց. զի, ասաց Յիսուս առ Սամարացի կինն, յորժամ վաստակեալ նստէր առ Ջրհորովն Յակոբայ. «Կին դու, հաւատա ինձ, զի եկեսցէ ժամանակ, յորժամ ոչ 'ի լերինս այսմիկ եւ ոչ յԵրուսաղէմ երկիրպագանիցեն Հօր» ... Այո՛ յամենայն տեղիս, ուր տիրէ Թագաւորութիւն Հօր եւ ուր հնչեն Աւետարանին ձայն եւ հաստատեցաւ հաւատն, պարտ է երկրպագանել Հօր հոգւով եւ ճշմարտութեամբ։

Այլ սակայն կայ մնայ Երուսաղէմ դարձեալ գեր 'ի վերոյ քան զամենայն գերազանցեալ եւ փառաւորեալ իբրեւ նախնական մայրաքաղաք համայն հաւատացելոց եւ իբրեւ քաղաք Աստուծոյ. զորմէ զգուշացուցանէր Յիսուս, մի բնաւ երդնուլ յայն սուրբ եւ պատկառելի անունն, զի ասէր թէ Երուսաղէմ քաղաք է մեծի Արքայի։

Յերրորդում նուագիս մինչ գտի զԵրուսաղէմ, տեսի, այս է հանգիստ իմ 'ի տան Սրբոց Յակոբեանց, եւ առաւել մխիթարեցայ երբ գտի զվաղագոյն մտերիմ եղբայրակիցն 'ի Քրիստոս, Ամենապատիւ Տէր Յարութիւն Սրբազան Հայրն, որ ժառանգեաց զմեր պանդխտութիւն կը

միթէ կարիցե՞մ 'ի պակասել աւուրս ծերութեան դադարել յամուլ մտաց՝ նորանոր ծնունդս արտադրել: Զայս դատաստան թողում քըննաբան քերթողին, զանազանել ընդ մէջ երիտասարդութեան եւ ծերութեան:

Այլ ես այնպէս համարիմ թէ դեռ ոգիս այնչափ թառամեալ չէ, ոգիք դիւրաւ չեն թառամիր, եթէ յերկնից զուարթարար ցօղ ընդունին, եւ ես հաւատամ, Հոգին է կենդանարար, մարմին ինչ ոչ օգնէ, ասաց Յիսուս:

Սիրելի՛ Մանկունք Հայոց, յառաջ քան զքառասուն ամ Հրաւիրակ եղէ ձեզ, Տէր որ կեանս տայ և կենաց աղբիւրն է, ողջ պահեաց զիս և այժմիկ դարձեալ յետ քառասուն ամաց՝ Հրաւիրակ լինիմ ձեզ և ո՞ տայր ինձ, որ նման արծուոյ նորափետուր մանկանայի և միշտ Հրաւիրակ լինէի ձեզ: Ահա 'ի Սուրբ լեռնէն Սիօնի ընծայ մատուցանեմ ձեզ դարձեալ զՀՐԱՒԻՐԱԿՍ ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ: Աւա՜ղ, մօտ չեմ ձեզ, զի կենդանի բարբառով խօսէի պատմէի զՆրուսաղէմէն, և դուք հարցանէիք զողջունէ եւ զշինութենէ նորին:

Այլ արդ մխիթարեալ իմ թող խօսի ընդ ձեզ Հրաւիրակս խօսնարան երդոյս, քանզի գիրն կենդանի մնայ եւ ապրի հազար հազար տարի. խոկ ես՝ եմ այսօր և վաղիւն ոչ. և դուք Մանկունք Հայոց և որդիք ժողովրդեան, միշտ նորածնելով եւ ապրելով՝ մշտնջենաւորէք աստի կեանս, կարդացէք յիշեցէք և Աստուած ողորմի ասացէք,

Խրիմեան Հայրիկի հոգւոյն:



Զի եղիցի յաւուրս յետինս յայտնի լեառն Տեառն, եւ տուն Աստուծոյ 'ի վերայ գլխոց լերանց, եւ բարձրասցի 'ի վերայ բլրոց, եւ եկեսցեն 'ի նա ամենայն հեթանոսք։ Եւ երթիցեն ժողովուրդք բազումք եւ ասասցեն. Եկայք ելցուք 'ի լեառն Տեառն եւ 'ի տուն Աստուծոյ Յակոբայ եւ պատմեսցէ մեզ զճանապարհս իւր եւ գնասցուք ընդ նա։ Զի 'ի Սիոնէ ելցեն օրէնք եւ բան Տեառն յԵրուսաղեմէ։

Եսայէ Բ. Գ. 2–3 համ.

## ՑԱՆԿ ԲՈՎԱՆԴԱԿ ՆԻՒԹՈՑ

# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ԱՌԱՋԻՆ ԵՐԳՈՑ



Ի ՍԿԻԶԲՆ առաջին գլխոյս հրաւիրէ զմանկունս նախ՝ ի սուրբ քաղաքն Նազարէթ. երդէ անդանօր զհրաշալուր Աւետական եւ զյղութենէն երջանիկ եւ անարատ Կուսին. Բանք երանութեան առ Նազարէթ յաղագս տեղի լինելոյ այնպիսում շնորհաց եւ յորդորակ առ մանկտին նմանող լինել Յիսուսի անմեղ մանկութեանն.

Աճէ անտի ՚ի վանս ծննդեան Յովհաննու կարապետին. Այցելութիւն եղանէ կոյսն Եղիսաբեթի մօրն Յովհաննու. Գովեստ առ Մկրտիչն Քրիստոսի, որ արժանի եղեւ մատակարար լինել գերագոյն շնորհաց տնօրէնութեան Աստուածորդւոյն.

Բերէ անդուստ ՚ի Բեթլեհէմ. եւ անդ նուագէ զսքանչելի ծընունդ Փրկչին մերոյ՝ Աւետիս տալով նախապատշաճ աւետաւորացն ծածկեալ խորհրդոյն, որ յայտնեցաւ. Համառօտ նկարագիր կատարման Բեթլեհէմեան մանկանցն.

Տանի յետոյ ՚ի Յորդանան գետ. Իջումն Յովհաննու յանապատէն, եւ բանք նորին կշտամբողական առ ազգն Հրէից. Մկրտութիւն Քրիստոսի ՚ի նմանէ, եւ իջանելն Հոգւոյն Սրբոյ աղաւնակերպ ՚ի վերայ Փառակցին. Վկայութիւն Հօրն զսիրելւոյ Որդւոյն, եւ բան զգուշութեան առ Յակոբ չթողուլ զխառնակ իւր այլում ազգի. Յորդոր առ մանկտին զգոյշ լինել անարատ պահելոյ զընկալեալ շնորհս մկրտութեան, մի՛ գուցէ կորզեսցին ի յարմատոյն. առ որ պատուաստեցան Քրիստոսի ձրի շնորհաց ձեռամբ.





# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

### ԵՐԳ ԱՌԱՋԻՆ

Սկիզբն 'ի քէն առնեմ Երգոյս, ով սուրբ քաղաքդ Նազարեթ,
Վիճակեալ տուն հայրենի խոնարհ ծերոյն Աստուածահօր.
Որ ըզկոյսն 'ի տաճարէն առ եւ պահեաց 'ի քեզ մաքուր.
Մինչ յածեալ Գաբրիէլն ընդ ոլորտըն բովանդակ.
Ի քեզ եկեալ միայն եգիտ ըզկոյսն երանեալ.
Ողջունեաց եւ ըզնշան եւ խօսեցաւ ընդ Յիսուսին.
Դու առագաստ երկնային կազմեալ եղեր անշուք տնակդ
Կոյս հարսին եւ փեսային անախտաւոր պատկերացն:

Վայելուչ իմն է, Մանկունք, յառաջ ըզձեզ տնդ հրաւիրել
Ի տաճարն մաքրութեան, ուր եկին Տէր յանկարծակի.
Եւ 'ի տուն Աստուածաբնակ աղքատ հիւսանըն Յովսեփայ.
Ուր ընտրեալն 'ի բիւրուց Դաւթեան բողբոջըն Մարիամ
Իբրու շուշան փըթթեցաւ 'ի մէջ հովտիս խոնարհագոյն:
Հրաշաւէտ եւ նորաքանչ դըրախտ է տեղիս այս վայելուչ.
Յորում տունկ ծառոյն կենաց երեւեցաւ որպէս յԱդին.

Մարիամըն հրաշագեղ, որ կուսութեամբն անմաշելի
Բոցանիւթ սրով Քերովբէից շուրջ փակեցաւ պարածածուկ,
Մինչ եբեր ըմբանչելի զպտուղ լուծիչ դառնպտղունին.
Յոր դիւրամերձ լեալ մեր արդ, վա՜շ ճաշակեմք ախորժօրէն.
Բոյս վարդին երփնափայլ ցուցաւ աստէն դառնից փշոց,
Էջ եւ նըստաւ սոխակն 'ի նմա վեհ դասապետըն Գաբրիէլ,
Գեղգեղեաց քաղցրախօսակ բանիւ զողջոյն իւր շնորհաբեր.
Թէ վարդիդ գեղս չքնաղ Երկնից արքայն է խանդակաթ,
Գայ իջանէ 'ի ծոցոյ Հօրն եւ ծոց 'ի թփոյդ օթագայի,
Ուրախ լեր, ողջոյն ընդ քեզ, երջանիկ մայրդ Մարիամ.
Տիպ կալոյն Գեդէօնի ճշգրիտ ցուցաւ մեզ աստանօր,
Մարիամ գեղմըն մաքուր եւ լուսակիզըն կուսութեամբ
Պարզեցաւ խոնարհ ոգւոյն ինքն 'ի ներքոյ երկնից պատրաստ
Լուսախառն եւ մանրամաղ ցօղն իջանէր 'ի գեղմըն սուրբ.
Այսպէս էջ Բանն 'ի Հօրէն, խաւար չ'երեւ բանին խորհուրդ.
Տեսիլըն հրաշաւոր ցուցեալ հովուին անդ 'ի Սինա,
Հրավառեալ 'ի մորենին, որ բորբոքէր անծախապէս.
Նոյնահրաշ եւ աստանօր տեսաք 'ի ծառըն Մարիամ,
Որ ըղձուըն աստուածեղէն հայրածին Բանն 'ի սկըզբանէ
Յարգանդի տարաւ մարմնով եւ ինքն եկաց անկիզելի.
Նոր երկիր բանեղէն եւ անդաստան իմն անարօր
Երեւեալ աստ Մարիամ սերման երկնից լեալ ընդունող.
Արբեալ 'ի ջրոյ Հոգւոյն եւ մըշակեալ աջովըն Հօր,
Սովելոյ բնութեանըս մեր եբեր ըղձացըն կենդանի.
Կուսութեամբ կընքեալ աղբիւրն, որ ըստ երգոյն Սողոմոնեան,
Աստ յամպոյ երկնից առեալ զկենդանի ջուր յիւր աւազան,
Բղխեցոյց 'ի Բեթլեհէմ, աղբիւրացաւ աշխարհ համայն.
Երջանիկ ես, Նազարէթ, զի քո վերայ բացաւ երկին,
Ուստ 'ի վայր շող արփենւոյն հրաշածագեալ Լոյսն 'ի Լուսոյ
Յղացաւ, եւ սքանչելեօք մուտ 'ի յարգանդ Կուսին անփորձ,
Ուր բնակեցաւ փառակից Բանն որ մարմին եղեւ ճշգրիտ,
Զոր նախապէս պատրաստեաց եւ յարդարեաց Հոգին Աստուած.
Երանիս ընդունողիդ անբաւ շնորհաց տամ բիւր անգամ,
Դու նախկին խանձարուր եւ բնակարանուդ տեղի Փրկչին.

Որ այն ինչ յամպ ՚թեթեւ նըստեալ փախեաւ նա յԵգիպտոս
Անդուստ ՚ի հայրենիդ եկըն դարձեալ եւ բնակեցաւ ։
Զքոյդ անուշակ օդ ծըծեաց եւ զարգացաւ Յիսուս մանուկ ․
Այն որ շընչովըն կենսատուր զոգիս մարդկան զարգացոյց ։
Երանիս տամ եւ դաշտացդ, աղբերց, լերանցդ քարաշատ,
Որ ոտից Մանկացելոյն եղեն տեղիք եւ ճեմարան ։
Առ ՚ի ջրոյդ քո էարբ կենդանի ջրոյն առատաբաշխն,
Ի հողոյդ վերայ ննջեաց այն որ ըստեղծ յերկրէ զԱդամ ։
Ընդ ապաշխուք եւ գեղջկական յարկիւդ քո անփառունակ,
Պատըսպարեալ օթեցաւ զերդ չքնական որք անուադ ։



Արդ, Մանկունք, ընդ օրինակ Յիսուս Մանկան հայեցարուք,
Եւ նորին ըղտղայութեան զանմեղութիւն ցուցէք ՚ի ձեզ ․
Թէ որպէս Մանուկ եղեալ յանձին եբեր ըզմանկական,
Եւ տակաւ տակաւ ՚ի տիս այրականին վերամբարձաւ ։
Նա որ Աստուած էր եւ կարող շուտ յաւելուլ զհասակ մարմնոյն,
Ում յաւէտ ըղձալի էր զձեռըն խաչին բառնալ յօժար,
Ելանել ՚ի Գողգոթա եւ զենանիլ ՚ի նմա կամաւ ․
Այլ ժուժկալեալ համբերէր ՚ի լինել սիրով զհօրըն սահման ․
Եւ տալ այսու մեզ ՚ի խրատ մի քան ըզժամ փութալ ՚ի գործ,
Զայս ուսոյց նախախնամարհ օրինակաւըն Մանկութեան ։

Զի՞ս տարեալ, Մանկունք, ըղձեղ Փրկչին 'ի Ծնունդըն Բեթղեհէմ
Նախ աստուածածել անկ է մեծին 'ի ծնունդըն Յովհաննու.
Եւ 'ի տուն լեռնակողմ Զաքարիայ քահանային.
Ուր ողջոյն 'ի տաճարին առ ընկալաւ նախ քան զԿոյսն,
Գաբրիէլի աւետաւք ծննդեան ծերոյն Եղիսաբեթ:
Ա՛յր ահա երեւալ դիմէր Կուսին յոյժ Հոգւոյն շնորհիւ.
Տալ ողջոյն համեմակից մօր Մկրտչին երիցագոյն.
Նաեւ 'ի լեռ ամուլ ծնողին պատմել բանիւ ուրախական,
Զաւետաւորն հրաշալուր ազդեալ լինելոյն 'ի Հրեշտակէն.
Մինչ մեղմիկ ձայն ողջունի յունկըն հընչէր պատուական,
Ցնծայ 'ի ներքուստ լըսէր ծառայն եւ կայր յողջոյն Տեառն առաջի.
Եւ նըկատիչ լեալ Լուսոյն՝ յորգանդ Կուսին տաղաւարեալ,
Ցընծալով խայտայր խաղայր նա ընդ գալուստ Փրկչին յաշխարհ.
Եւ խոնարհեալ յորովայնէ 'ի յորովայն երկրպագէր
Կարապետն, յառաջընթաց լըցեալ Հոգւովն աստուածեղէն:
Հրաշանայր ընդ այս յուէս մայրըն մանկան Եղիսաբեթ,
Նոյն հոգւով լըցեալ եւ ինքն աղաղակէր ձայնիւ առ Կոյսն,
Օրհնեալ ես 'ի կանայս, ով դու Լուսոյդ մայր Մարիամ.
Որ յորգանդի քում անբիծ իբրեւ 'ի տուն բնակի Լոյսն,
Եւ ուստի՞ ինձ այս բախտ զի եկեսցէ մայր Տեառն առիս,
Օրհնեալ է եւ այդ պտուղ կենաց ծառին 'ի քէն բերեալ,
Որ պարգեւէ մարդկան ազգի համեղ ճաշակ անմահական:
Մինչ մերձէր ժամ ծագելոյ արուսեկին ծննդեամբ յաշխարհ,
Տեղի տայ Մօրն Արեւուն՝ ժըտէր սիրով Եղիսաբեթ,
Որ անդրէն դառնայր առաւ ուրախ 'ի տուն իւր Նազարէթ.
Քանի՜ն մեծ խընդութեան հանդէս լինէր աստէն, Մանկունք,
Ի ծնանիլ ամուլ ծերոյն զանհամեմատն 'ի ծնունդս կանանց.
ԶՄկրտիչն Աստուածորդւոյն, մաքուր տաճարին անապատի,
Ի Քրիստոսի բերանոյն ըղձըղուաւեալն արժանացեալս.
Թէ մեծ որ յորդւոց կանանց չէ յարուցեալ քան զՅովհաննէս.
Որ անուամբըն շնորհաւէտ բաց ըզլեզուն պապանձեալ հօրն
Յորժամ գըծեաց 'ի տախտակին ըզտարփալի անուն Յովհաննէս.
Զարմացեալն աւետօք հրաշիս եւ որ լուան զլուր նորաքանչ,
Ափշեալ գուշակէին, զինչ լինիցի Մանուկս այս:

Մարգարէ բարձրելոյն, առ 'ի հօրէն անուանեալ
Երթալով Տեառն առաջի եւ պատրաստ. հորդել շաւիղ,
Զանպատրաստ ոգիս մարդկան գոլ դիւր եւ հարթ Փրկչին ոտից։
Նա՝ հանգիտն արուսեկին ընդ մերձ այգուն ծագեալ պայծառ
Զգերխորհրդոյն աւետիս ետ, որ 'ի Կուսէն հրաշածագէր.
Ղօղեցաւ յանապատին ըղձաւորիղս ամփոփելով.
Ում զուարթմունք 'ի վերուստ առաքեցան 'ի սպասաւոր
Պահպանել ըղցանկալին մինչ 'ի լրումն երեւմանն։
Զօրէն Եղիայի վարս ըստացաւ ըղհրեշտակաց,
Մաշկեղէն գօտի ընդ մէջ. եւ 'ի ստեւոյ ուղտու հանդերձ,
Զվայրենի մեղր եւ մարախ սորէն առեալ մարմնոյն 'ի պէտս։
Այնչափ գերազանցնի վեհանեցաւ նորոց շնորհաց,
Մինչ եռանձնեայ Աստուածութեան տեսող եղեւ 'ի Յորդանան։
Խորհրդեան Մարմնացեալին, ում յանկայն հեռուստ գուշակէր.
Ընդ աղօտ տեսին միայն զԲանն 'ի մարմնի՝ Թանձրացեալ,
Այլ Մկրտիչն Աստուածորդւոյն մարմնոյն աչօք հուպ նշմարեալ.
Ցոյց մատամբ իւրն 'ի մէտս ղԳառն Աստուծոյ բարձող մեղաց։
Եւ խուռն աշակերտացն 'ի բաց մերժեաց ըզտարակոյսն
Անշուշտ վկայելով վասն նորին Աստուածութեանն.
Ես չեմ, ասէր, Քրիստոս, այլ ընդ առաջ նորա հրեշտակ.
Զայս իսկ վասն իմ ձայնեաց տեսողն անդուստ Մաղաքիա.
Որ ունի զհարսն անարատ ըղնորածնեալ Եկեղեցին.
Այն է ահա փեսայն անախտ առ սէր հարսին իջեալ յերկնից։
Միայն ես հարսնուէր եւ բարեկամ եմ փեսային,
Ի հանդէս այս հարսանեաց, վա՜հ, փեսային ցնծամ ձայնիւ.
Որ եւ այս ուրախութիւն արդ ահա իմս լըցեալ եղեւ։
Ժամ է աճիլ սորա նըմա մեծ զօրութեամբն աստուածային։
Այլ ինձ նուաղեալ յոյժ ոտկար բընութեամբըս մարդկային,
Ես նըման գիշերայնոյ փոքրիկ աստեղն աղօտանշոյլ,
Ծագեցայ նըւաղ լուսով դըպըն բանիւ քարոզութեան.
Եւ 'ի գալ առաւօտեան պայծառ արփւոյն աշխարհալոյս
Ունի մուտ եւ 'ի նորին ձառագայթից աղօտանամ։



Սա գինարբու օրինամերժ Հերովդեսին լեալ կշտամբիչ.
Նա վասն այն խնդրէր հնարս գործել ընդդէմ մահու նորին.
Պատկառեալ երկնչէր նա յանբասիր նորին վարուց
Թաթաւեալ զձեռն իւր յարիւն յանդիմանչին իրաւապէս։
Աւաղ, 'ի ձեռն անպարկեշտ կնոջն մատնեալ վայր 'ի զնդան՝
Կաքաւամամբ լկտի դստերն՝ դահճին սրով գլխատեցաւ։
Այսպէս 'ի ջուր Մկրտիչն ինքն 'ի յարիւն իւր մկրտեալ,
Ճրագին այն գեղանշոյլ՝ լոյս առ աշխարհ աղօտացաւ։
Եւ այսու բանդն 'ի խաւար գնացեալ եղեալ դարձեալ զճրագ
Ցնծութեան աւետաւոր լեալ անդ հոգւոցն գերելոց,
Որ 'ի ստուեր մահու նստեալք՝ փրկող աջոյն ըսպասէին։
Մինչ ընձայն Կարապետին լուան աւետաց այս նորալուր
Խնդացին Նահապետք եւ գուշակող գունդքն բոլոր։
Այսպէս նախընթաց եղեւ յերկրի եւ 'ի դժոխս
կանխագոյն տալով նշան ըզՓրկողին գալըստեանն.
Եւ այսպէս ինքըն ցուցաւ մեծ 'ի ծառայսն Քրիստոսի,
Եօթնեկի խորհրդական գըտաւ անուանց արժանաւոր։
Յովհաննէս՝ յորջորջելով բացող եղեւ կարկեալ լեզուին.
Մկրտիչ՝ 'ի Յորդանան զԱստուածորդին մկրտելով,
Մարգարէ՝ մերձին գոլով Մարգարէիցն կանխագոյն.
Առաքեալ՝ 'ի նոր քարոզ լեալ ինքն ըսկիզբն Առաքելոյ.
Կարապետ՝ իջելոյ Բանին յաշխարհ յառաջընթաց,

Մարտիրոս՝ մարմնովըն իւր նահատակեալ 'ի մէջ բանտին,
Աւետիս՝ գոլ 'ի գլխովս աւետաւոր գերեալ հոգւոյն։
Ո՜վ, այսքան շնորհազարդ տնօրէնութեան Մարդացելոյն,
Դու եւ ևթ ըսպասաւոր 'ի սուրբ Հոգւոյն որոշեցար,
Յիսուսին բարեկամ եւ մտերիմ սուրբ Յովհաննէս։
Որ ըզկնի երջանիկ մօր սուրբ ընտանեացն աստուածամերձ
Յաւէտ սիրելի ցուցար Բանին մարմնացելոյ։
Լեր ուրեմն ընդ Տիրուհւոյն դու առ Քրիստոս աղերսահայց
Ըզմանկանց Եկեղեցւոյ հրաւիրելոց 'ի քո տաճար։
Նա՝ վասն իմ անարժանիս ըզքեզ երգող անուանակցիս,
Մաղթեմ լինել միջնորդ. քեւ ընդունել շնորհս Յիսուսէն,
Որ ևս ինձ ըղձեծարեալդ առ 'ի նմանէ երգաբանել։



Երանեմք ասոր, Մանկունք, որք եւ 'ի ծնունդ Փրկչին մերոյ
Բեթլեհէմ, տուն Եփրաթայ, քաղաք Դաւթի մեծ արքային
Յերջանիկ այրըն հովուաց սուրբ իջեւանն աղքատ կուսին։
Այլ զի՞նչ տայուք ընդ մեզ, որ ընդ Մոգուցն ընծայաբերս
Զօնեացուք Յիսուս Մանկան արքայ ծնելոյն Իսրայելի։
Ընդ ոսկւոյն հողանիւթ՝ ըզկատարեալ ամբիծ հաւատս,
Ընդ կնդրկին եւ զմռսոյ՝ ըղձուր սիրոյն Քրիստոսի
Բարձեալ 'ի սիրտ սուրբ եւ մաքուր իբր 'ի բուրվառ խընկամատոյց

Զօնեսցուք Մանկացելոյն բարդեալ 'ի ծուխ անուշահոտ,
Որ բազմի անդ 'ի Մըսուր եւ գիրկ կուսին քրովբէաթոռ.
Ո՛վ, անկեալ 'ի սուրբ Այրին՝ երկրպագցուք Մօրն եւ Մանկան,
Երգեցից ես անդ ապա զբանին ծընունդ անճառահրաշ։
Որ զոգին հանուր մարդկան թըւեալ ունէր իւր 'ի ձեռին,
Տէր ամենեցուն եւ թագաւոր միահեծան.
Ո՛վ, ինքն եւս 'ի կարգ մարդկան գայր 'ի համար աշխարհագրին.
Ել դիմեաց 'ի Բեթլեհէմ 'ի քաղաքէն իւր Նազարէթ։
Այն ի՛նչ արեւն 'ի մայր իւր մուտս առնէր յերեկորեայ
Ա՛յր եկեալ հասանէին վաստակեալ ծերն եւ Մարիամ,
Իջեւանեալ 'ի տուն հովուաց, ո՛հ, օթէին ընդ անասունս.
Բամբէ, որ եկեալն էր հանել զմարդիկ յերկնից քաղաքն.
Ի՛նքն 'ի մէջ երկրի անիջեւան եկաց արտաքս։
Վայելո՛ւչ էր իսկ հովուաց գոլ քաջ Հովուին ասպընջական։
Եւ Եւայի՛ն (*) իւր շիրման, յորում հեծէր ինքըն ցաւօք,
Հիւրընկա՛լ լինել այսպէս ամբիծ դըստեր. իւր եւ Թոռան
Որ զերկունս Մօրն եբարձ անախտ ծննդեամբըն կուսական։
Աստ 'ի լըրումն բոլորէր Լուսինըն մայր լուսոյն ծընող
Զինն ամսեա՛յ ժուժկալեալն 'ի յարգանդին ծնանէր հրաշիւք։
Որոյ զգեստն անմիւթական լոյսն էր երկնից արփիահրաշ,
Խանձարրօք նիւթականին պատեալ դընէր 'ի մէջ մըսրոյն
Զայն փափկիկ քնքուշ Մանկիկ 'ի ծղօտս յարդից քըստըմնափուշ։
Անդ յերկինս յաջմէ Որովբէք եւ յահեկէ հօյլք Քրովբէից.
Աստ յերկրի ըստ Ամբակումայ զարմանալեօք տեսանողին.
Ի մէջ երկուց կենդանեաց, եզինն ասեմ ես եւ իշոյն,
Ընդ հասանել ժամանակին անճառ սիրովըն ծանուցաւ։
Որ 'ի գահ չորեքկերպեանն փառօք ընդ Հօր բազմէր յերկինս.
Լոյսն անմատչելի միշտ ըղձովաւ պարածածուկ,
Ի մատաղ կուսին 'ի գիրկ գրկուեալ եղեւ որպէս Մանուկ։
Եւ որում չըբաւէր տեղի երկնից տաճար լայնակամար,
Խոնարհեա՛լ նուաստացաւ բովանդակեալ 'ի փոքրիկ այր.

---

(*) Աւանդութենէ ասեն թէ Եւայի շիրիմ անդ 'ի Բեթլեհէմ է, ուր պատահեցաւ ծնունդն Յիսուսի

Զի նորին խոնարհելովըն բարձրացուք մինչ 'ի յերկինս.
Եւ մարմնովըն նուաստացելով մեծամեծացելք 'ի հոգիս:
Որ ցանկային Թագաւորք ըղձի յաւուրց այս տեսանել,
Յառաջեալ քան ըզնոսա հովիւք տեսին զօրն անդրանիկ.
Եւ զուարթնոցըն զաւետիս նոքին եւ եթ լուան յերկնուստ.
Որ հընչէր մեծաբարբառ, ով փութացէք 'ի Բեթլեհէմ,
Նըշանծին Աստուածորդւոյն դուք-նախ եղէք խորհրդակցած:
Զի յայնժամ մի ըղձիւ փառփառէին 'ի տես հրաշից:
Այն ինչ մըտին այրին 'ի ներս տեսին ըզԿոյս մի նոր ծընեալ,
Նորահրաշ եւ ծիրանի լոյսն ըզնովաւ կամար կապէր.
Զունէր զոք մերձ մանկաբարձ, այլ միայնիկ զծերըն Յովսէփ.
Ի չգոյէ գոյզն ինչ տեղի՝ եդեալ զՄանուկն 'ի չոր 'ի Մըսուր.
Անկողմն էր գեղ դիմացն, երեսըն ողջ լոյս փայլէին.
Յայգւոյն բացեալ վարդի նըման, շաղն 'ի վերայ մարգարիտ էր.
Կոյսըն հըճուէր 'ի սրտին եւ խնդամիտ լինէր իրացն.
Զի ծնաւ Փրկիչ աշխարհի եւ ոչ ծընաւ մայր յաշխարհ:
Որպէս յայնժամ երջանիկ հովուացն 'ի ծունկըս խոնարհեալ
Փափագմամբ հոգւով սըրտիւ երկըրպագին Նորածնելոյն:
Զնոյն և ես որ-հասեալ կամ արդ.'ի տաճար քո սուրբ Ծնընդեան,
Տենչանօք համբուրեմ զտեղին, յորում խանձարրապատ
Եդար իբրեւ յօրրան, լացեր աստէն դու տղայաբար.
Ո՜վ, հայրածին Բան, վասն իմ կըրկին ծնեալ 'ի Կուսէն:
Եւ որ Տէր եւ նոյնագոյ Աստուած գոլով հաւասար Հօրդ.
Բայց, այնչափ խոնարհեալ փոքրըկացար եղեր Մանուկ,
Զի մեզ ըզմանկացեալս եւ ըզԹերուս 'ի քո շնորհէդ
Ի կատար. արութեան դու հասուսցես օրինակաւդ:
Այլ քեզ արդ աւետիս տամ, ո՜վ Նախահայրըդ մեղապարտ,
Որ 'ի ձեռըն Եւային կերեր զպըտուղըն մահառիթ.
Ո՜հ, այնու արտաքսելով յաստուածատունկ դըրախտէն,
Թափառեալ յերկիր փշոց բերէր ծնընդովք ըզփուշ մեղաց.
Դու արդ ցընծա զուարճացեալ, քանզի զարմէ քոյդ զաւակաց,
Յայտնեցաւ առանց վըրիպ Կոյս մի ամբիծ եւ անարատ,
Որ ծնաւ եղեւ Լուսոյն ծածկեալ 'ի ծոց Ծնողին անմայր,
Այն, որ ըզքեզ իւր Աստուածութեանն 'ի ձախ պատկեր

Յօրինեալ ինքնին ձեռօք, փչմամբ Հոգւոյն կենդանածին.
Նմին՝ ըղձառալից արդ ըղգեցաւ ըղկերպարան:
Որ զծառայդ ձոխացուցեալ 'ի վեր անդրէն բարձրացուցէ
Տիրականին 'ի պատիւ, յոր պանծայիր անդ 'ի դրախտին.
Ուստ. 'ի վայր անկանելովդ,. գտար անասնոց դու հաւասար:
Աւետիս եւ Եւայիդ, բերկրեալ ուրախ լեր ընդ Դըստերք.
Որ ելայծ ծընընդեամբըն իւր տըքտմածին Մօրդ վերկուհս ցաւոց.
Պարտեցար 'ի բանսարկուէն անդ 'ի յԵդեմ՝ դու պատրանօք.
Ջձեռդ 'ի ծառըն մահածին կարկառելով դառն 'ի պըտուղն.
Յաղթեաց սակայն խաբիչ օձին ընտրեալ՝ քո դուստըր Մարիամ
Ջաղխելով ըզգլուխ նորին խոնարհութեան դարշապարաւն.
Ջի չասաց Աստուած լինիմ, այլ աղախին եմ՝ ես Տեառն,
Ջաւակս անխծապարտ ոչ եւս ծընցիս այսուհետեւ.
Օրհնեցան քո զաւակունք Կուսիդ Որդւով փնախտածին.



Ցընծասջիր, Դաւիթ արքայ. ընդ քո բողբոջ լուսածաղիկ
Ընդ քընքուշ գեղմն ոռոջիդ, յոր լուսոյ՝ անձրեւ ամպէն
Էջ եւ ցօղեցաւ քաղցրածաւալ Բանն 'ի վերուստ:
Ջբանեղէն բոյսըս մեռեալ կենդանացոյց 'ի նոր կեանս:
Թագաւորք 'ի Սաբայէ եւ յԱրաբիոյ եկեալ տենչմամբ.
Մատուցին ըզպատարագըս քո Մանկան արքայածին:
Բարձրացաւ քան զԼիբանեան պըտուղ ծառոյդ լուսաբողբոջ

Ի քաղաքիդ քո եւ Տեառըն ծաղկեցաւ ծաղիկն Յիսուս։
Ցընծասջի՛ր ընդ Հօրդ եւ դու, ո՛վ իմաստունըդ Սողոմոն,
Խանդակաթ սիրով երգող ըզսէր հարսին եւ փեսային.
Բայց ա՛ւ՝ անճառ կերպիւ պարտիզին այն դուռըն փակեալ.
Ուստ 'ի դուրս բուրեաց անոյշ հոտ Նարդոսի եւ շուշանի,
Է՛ջ 'ի նմա Եղբօրորդին եւ ձեմեցաւ մարմնանալովն.
Եւ ա՛յն աղբեր կընքելոյ բըղխեաց հրաշիւք 'ի Բեթլեհեմ
Կենդանի ջուր 'ի նմանէ 'ի բանաւոր երկիր խաղաց.
Արբեցո՛ց ըզպապակեալս, այլ յաւիտեան ոչ ծարաւիմք։
Երջանի՛կդ առ 'ի զարմէ Ամովսածին Եսայիաս,
Գուշակո՛ղ յայտնաբարբառ զկուսին ծընունդըն հրաշալի,
Խընդա՛ յաւէտ հոգւով 'ի լըրումըն քո բանիդ ըստոյգ.
Աւադի՛կ 'ի Թագազարմ շառաւիղէ տանըն Դաւթի
Ընձիւղեա՛լ ծիլ կուսական եւ փըթթեցոյց ըզնոր ծաղիկն.
Ի հոտո՛յն անուշաբոյր ըզմայլեցաւ աշխարհ բոլոր,
Թըմրեցեալ հոգիքն 'ի մեղս ըսթափեցան նորին հոտովն։
Յանարօր անդաստանէն ոռոգելոյ ցօղով Հոգւոյն
Ե՛լ բուսաւ ցորեան առոյգ յերկնից իջեալ կենաց հացին.
Կոյսըն հրաշիւ յըղացեալ ծընաւ զորդին Էմմանուէլ։
Եւ ընդ մե՛զ փըրկողն Աստուած էջ շըջեցաւ իբրեւ ըզմարդ.
Ժողովո՛ւրդն 'ի խաւարի ետես ըզլոյսն եկեալ յաշխարհ։
Դու եւս ո՛վ լե՛ր զուարձալից հրեշտակացեալըդ Դանիէլ,
Այն փոքրի՛կ վէմն 'ի լեառնէն բարձրացելոյ խոնարհութեամբն
Ինքնի՛ն 'ի Կոյս մօրէն հատաւ 'ի դաշտ աշխարհիս այս,
Ուր զկանգնեա՛լ չարին պատկեր մանր փըշրեաց ուժգին հարուածովքն,
Զբարձրացեա՛լս հըպարտութեամբ ըզԹագաւորս խոնարհեցոյց,
Մեծութեամբըն լեռնացեալ ելից համայն ըզտիեզերս։
Եւ հի՛ն աւուրց ալեւորն մատաղացաւ նոր մանկութեամբն.
Որ յաթոռ բարձրութեան; աստ յանբանից 'ի Մսուր իջաւ,
Ընդ բիւրաւո՛ր Հրեշտակացն եւ երգեցի՛ն ըզնա հովիւքն։
Առաւե՛լ քան զամենայն դու խրախացիր Կոյս լուսածին,
Ըստ ողջունին Գաբրիէլի բերկրեալ ուրախ լեր, Տէր ընդ քեզ.
Լոյսն անպարունակ, որ 'ի յերկրի մարմնոյդ ագաւ,
Ծագելո՛վ 'ի քէն պայծառ ճառագայթեաց ըզտիեզերս.

Ցընծայի՛ն առ ընդ մահուն կիթով նըւագեալ ողբք մարդկան։
Քեւ յարձան ծանրք երկունք ցաւածին մօրըդ Եւային.
Որ միայնակ 'ի նմանէ նոր շառաւիղ անդաստապարտ.
Ըստ երգոյն իմ Մովսիսի դու յԱրմաւայն Ցեսսեայ բուսար,
Դու՛ զուարակ օրհնութեան մօրն Եւայի անիծելոյն
Եւ յերկի՛ր կործանելոյն կանգնիչ եղեր Որդւոյդ ձեռօք.
Կեանք եւսուր նախածնողին, որ մայր կոչէր ողջ կենդանեաց,
Այլ տիրապէս դու Մայր եղեր նոր Սիոնի ծնեալ մանկանց.
Ո՜վ. 'ի քեզ մեծ էր խորհուրդն, որ գեր հրաշիւք աւարտեցաւ.
Զանըմբռնելին ծնունդըն Հօր՝ ծնանիլ մարմնով ժամանակաւ.
Եւ 'ի դըրախտ կաթ ջամբելով 'ի կայս ըստեանցըդ քաղցրաբուխ
Սնուցանել դայեկապէս զտածիչ մարդկան բանին կաթամբ.
Եւ երգով մայրական զօրօր ասել Աստուածորդւոյն.
Եւ շըրթամբքըդ շուշանապէտ յըպել 'ի համբոյր անմատչելոյն.
Եւ զմարմինըն կուսագեղ քընքուշ ձեռօքըդ շօշափել,
Որ տըւաւ քեւ 'ի յերկնից համեղ ճաշակ մեզ քաղցրելոյս.
Այս անբա՛ւ գանձու շնորհաց գտիչ եւ միայն արժանաւոր
Դու՛ եղեր, ո՛վ 'ի կանայս անհամեմատըդ Մարիամ,
Ամրալի՛ խոնարհութեամբդ եւ քո վարուքըդ մաքրազարդ։
Զանչափ ըզմեծութիւնդ եղեալ 'ի կչիռ Սողոմոնի՝
Ցո՛յց ըզքեզ՝ առաւելեալ յոյժ 'ի զըստերս հրաշալիս
Լի՛ շնորհօքդ ամենազան՝ անցեալ զանցեալ զամենեքումբք։
Ի քեզ ո՛չ նըշմարեցաւ սուտ հաճութիւն եւ գեղ պաճոյճ.
Դու վասն այն ազատ գըտար սա 'ի պարտեացըն նախամօրդ.
Եւ տաճար անձեռագործ 'ի Հոգւոյն մաքրազարդիչ.
Ցօղեալ պատրաստեցար անճառելոյ Բընակողին,
Եւ ասացեր յայսուհետեւ ինձ երանեն ազգ եւ ազինք։
Ընդ Կուսին եւ քեզ հըրճուիլ արդ վայելէ, ո՜վ Բեթլեհեմ,
Որ յերկրի՝ երկին եղեր, Աստուած 'ի քեզ մարդ երեւեալ.
Այն քո այրիւրդ անձկութեան հանգոյն մաքուր արգանդին մօր,
Կըրկնակի տուն տաղաւար ըլճակեցար Անբաւելոյն.
Եւ զայնոյն անօթեւան, ուր ո՛չ եսուն մարդիկ տեղի,
Դու սիրով աղքատական լեալ հանգուցեր 'ի գոգ Մըսուրիդ։
Ուր ըզլալեն ձայնիկ բարձեալ եւ արտասուեաց նա տղայաբար.

Սիրայի՛ն յաչաց կաթիլքըն կայլակեալ իջին 'ի քեզ,
Որ զ'ի հօգս եւ խանձարուրս իմ լացուցիս սրբեաց զարտօսր։
Զի չէր մարդ մանկանացըս ծընեալն 'ի քեզ ըսքանչելեաց,
Այլ անմահ Աստուած գոլով ծնաւ առ 'ի տալ կեանս մեռելոց։
Զայն· առնէր քեզ Աւետաւեայ նախագուշակն Միքիաս.
Բեթլեհէմ, երկիր Յուդայ չ՚ես դու կրտսեր կամ անշքան.
Ի քէ՛ն ելցէ ինձ նոր իշխան հզօր, Իսրայելի.
Որ հովուէ՛ զիւր ժողովուրդ Տեառն Աստուծոյ մեծ զօրութեամբ.
Տուր ուրեմն այժմ աւետիս մարգարէիդ քո խնդալից,
Թէ յայրէն ել աւասիկ Մանուկ իշխան ըսքանչելի,
Ում ծկեալ երկըրպագին մեծ թագաւորք խոնարհելով։
Երջանիկ ես, Բեթլեհեմ, լեալ արժանի դու նախադոյն
Ընդ Գառին անարատի քոյդ ըղԳառինս տալ 'ի զենումն.
Զի զայն ողջանդ սպանեցին, որ 'ի սեղան խաչին անպարտ
Կամաւոր վասն աշխարհի զանձն ընծայեաց իւր յօժարակեց։



Որ ընդ իս այսր հասեալ հոգւով ձեմիք, փրկեալ մանկունք.
Առաջի ձեր նըկարեմ զկոտորումն անմեղ մանկանց.
Զորս Հերովդէս եւս խողխողել 'ի գիրկս մարց ողբագարմ
Առ 'ի բառնալ զկենանըս մանկանն, որ ծնաւ արքայ հրէաստանի.
Զերկեմեան պղպյս սանդեայս, ո՜հ, սուր գահծին անագորոյն
Ի բաց խըլեալ փողոտէր, ո՜վ աստ աղէտ պատմէր ըղմարցն.

Իսկ որ պ՚ինդ գըգուեալ զորդեակն, եւ նա ըզմօր փափուկ զլստինս
Ի բերան առեալ ծըծէր զկաթըն քաղցրիկ մայրենի ծոց,
Վերացեալ սուրն անարգել ընդ մէջ երկուցըն թափանցեալ
Զդիեցիկն հարեալ կըտրէր եւ կամ գըրկին ընդ մէջ զենոյր,
Ո՜հ, որի՜ն կաթամք խառնեալ թանայր ըզմօր ծոցըն ըզնոյր.
Ո՞ր միտ յայնժամ հանդուրժէր հայիլ 'ի տեսն այն աղաժոյժ։
Թէ խուճապէր սըրտաբախ մայրըն մանկամբ զերծիլ 'ի դաշտ,
Պարտասեալ կըթոտ ծընկովք անկեալ յերկիր ուշաթափէր.
Ո՜հ, ոտիւք հարեալ անդէն, զերթ ըլողկոյզ 'ի յուռ. որթոյն
Ճուռ ու մ՚ուռ ճըմլէր այնպէս ըզնոր մանկիկն 'ի հընձան մօր.
Կամ նըռնենեայ հանգունակ սըճնեալ գեղով կարմիր ծաղկանց
Ցըլակոտոր 'ի կարկտէ՝ վայր թօթափին ծիլք ընդ ծաղկս,
Նոյնակի՛ սպիտակաթոյր փափկիկ մարմինք արիւն թաթաւ
Ի վերայ գետնոյն թաւալ՝ թափեալ ծաղկանց նըմանէին։
Քո բան առաջէն կատարիւր, ո՛ մարգարէդ Երեմիաս,
Ի Հռամայ ողբեկոտոր մարցըն գուժեալ ձայն լալականչ։

Այսպէս, ով Մանկունք, նախանըւէր հոտանոյշ զոհ
Յիսուսի ընծայեցան Բեթղեհէմեան մատաղ մանկունք,
Ոյց ոգէք լուսատեսիլ կացին թէպէտ փոքր ինչ 'ի մթան,
Այլ ընդ աճիլ Մանկան Հօր եւ բարձրանալ խաչին 'ի թեւ.
Որպէս յայնժամ աղաւնանման եւ ձագախառն երամովին
Թռուցեալք 'ի վեր գնացին առ Հայրն ըստ Եսայեայ բարբառելոյն
Գըրգուիլ առ 'ի նմանէ, ուր Միածնին փոխան զենան։
Իսկ մեք ապա զի՞նչ տացուք ընդ մեր 'ի մահ զենեալ Գառինն.
Թէ չունիմք արեամբ զանձինս այժըմ ձօնել նորին փոխան,
Մի՛ սակայն վերջացուք լինել հաճոյ զոհ անարիւն
Ի սեղան սըրտից մերոց առ ուէր նորին ճենճերելով,
Կամ հոգւով խոնարհ ըզմեզ Հօր պատարագ նըւիրեսցուք.
Որ հաճոյ եւս է նըմին բուրմամբն 'ի վեր հոտոյն անոյշ։

Ի Ծնընդեան սուրբ Տաճարէս ելեալ իջցուք 'ի Յորդանան,
Որ 'ի լերանց Ահերմոնի եւ Սանիրայ սահի յորդոր,
Էր երբեմըն ոռոգիչ դրախտահանգոյն երկրին Սոդոմ
Մինչ ո՛չ էր սուզեալ 'ի խորս երկնատեղաց հրոյն ծըծըմբով։



Այն ինչ բանն 'ի վերուստ ազդէր պայծառ արուսեկին
Զայն բարբառոյ յանապատի, գայր Յորդանան ձայն արկանէր.
Մկրտիչն Աստուածորդւոյն նախ մկրտէր զժողովուրդն,
Քարոզէր գալ 'ի զղջումն մարմնով 'ի ջուր մկրտելոցն։
Կըշտամբող ձայնիւքն իւր նա բարբառէր ըստ Եսայեայ
Ընդ առաջ հանդերձելոյն հարթ ճանապարհս պատրաստել,
Եւ տալ արժանաւոր պտուղ զղջման այսուհետեւ։
Մի պարծիլ բանիւ յանձինս, թէ հայր ունիմք մեք զԱբրահամ.
Զի կարող Տէր Աստուած արդ 'ի քարանց հեթանոսաց
Զորդիս Աբրահամու յարուցանել ըստ հաւատոյն։
Խիստ բանիւքըն որոտայր իբրեւ ըզջուրս Յորդանանու.
Աւանիկ տապարըն սուր ահեղ հրաման Հօր մըշակին
Կայ պատրաստ յարմին ծառոցդ մոտակըտուր առնել ըզձեզ.
Եթէ ոչ բերջիք այժմիկ դուք ըզպըտուղ պահանջողին,
Հաւատալ յՈրդին Աստուած, որ 'ի վերուստ գայ 'ի Հօրէն.
Հատանիք իսպառ 'ի բաց 'ի ճըշմարիտ յորթատունկէն,
Անաչառ դատաստանօք դատեալ մատնիք հրոյ գեհենին։
Յովլին խիստ քարոզութեամբ եւ անձկագոյն վարուց շաւղօք
Կարծեցաւ Հրէից ազգին գոլ Մեսիա ինքն Յովհաննէս.
Ուստի բանիւն իւր խոնարհ զլոյս իւր ճրագին եցոյց նըւաղ
( Առ որով առ ժամանակ մի ցընծացին Իսրայէլեանքն )
Ասէր թէ ես մկրտեմ ջրով նիւթեղէն առ 'ի զղջումն.

Այլ որ հուպ ըզկնի գայ իմ՝ յոյժ զօրաւոր է իւր արգեամբքն.
Որում՝ չեմ՝ ես արժանի լուծիչ լինել խրացից կօշկաց.
Ահա նա հրով Հոգեղէն մկրտեսցէ ըզձեզ ողջոյն.
Որ ՚ի ձեռին հեծանոց ունի զարդար ըզդաստաստան,
Կըրկնակի յիւր գալըստեանն, որ ՚ի յերկնից իբր ըզհուր,
Ժողովել զցորեան յամբար զհաւատացեալ դասս արդարոց,
Եւ ըզյարդն անշիջանելի հրոյն տալ յայրումն յաւիտենից.
Իսկ որ դեռ ՚ի մէջ մարդկան Թագչէր լուսոյն ՚ի մարմնոյ քօղ
Որ ամենայն զվայելչութեան հասակն առցէ Ադամային,
Գալով գայր եւ հասանէր ժամ յայտնելոյ զինքն աշխարհի,
Ընդ յառաջեալ կարապետին, փութայր եւ ինքն ըզկնի նորա,
Մարմնացեալ Բանն ՚ի կուսէն գայր մկրտիլ ՚ի Յորդանան,
Որ՛. Հոգւոյն տիամբն ըզնա նախ նըկատեալ ՚ի յարգանդին,
Մինչ մարմնոյն աչօք ՚ի հուպ տես կըրկնակի, ծանեաւ ըզՏէրն.
Ուստի մատամբ տայր նշան աշակերտացն իւր Ամնոգին.
Ահաւասիկ Գառն Աստուծոյ, տեսէք ասէր, ում տենչայիք.
Որ ՚ի լերանց Գալիլեայի, ո՛վ, հեռաւոր խոնարհաքար,
Առ իս գայ. հեզ է Թէպէտ, այլ ես ահիւ նորին լցայ.
Եւ յորժամ մերձեալ մօտ էր Տէրն ՚ի ծառայն իւր պակուցեալ.
Սիրալիր բանիւ հայցէր առ ՚ի նմանէ զմկրտութիւն.
Մկրտիչըն հրաժարեալ եւ դողալով այսպէս ասէր,
Մի՛ դու զայդ հրամայեր, ո՛վ Տէր, ՚ի քէն ինձ մկրտիլ
Արժան է հոգւոյս անարգ, հ՛իմ Աստուածայդ է խոնարհիլ.
Ո՛վ սիրոյդ, նիւթականի ջրոյս մաքրութեան եւ անկարօտ
Այդպէս զխոնարհեալ գաս առ իս, իբրեւ ըզմարդ ոք մեղաւոր.
Դու մաքրիչ աշխարհի առ ՚ի Հօրէդ եկիր յաշխարհ.
Եւ կիզիչ հրովդ հոգեղէն հնացեալ մեղաց Ադամայինն.
Եւ կուսական յարգանդէ, ո՛վ անտոխեղծ մարմին ծընեալ.
Ազատ ամենայնիւ ՚ի նախահօրըն յանցանաց,
Զմե՞ ասա զիս ըստիպես ըզմըկրտողս ջրով անկատար.
Զիս հրեշտակ Մաղաքիա, եւ Եսայի ձայն բարբառոյ,
Այլ ո՛չ Գառինդ անմահի գուշակեցին գոլ ինձ լուացող,
Սիրով ըզծառայի եւ եթ պաշտօն տանիմ՝ քեզ արդ՝
Կարապետ լեալ նախընթաց ըզքոյդ սուրբ հորդեմ շաւիղ.

Եւ տամ՛ նշան ծագման Արփւոյդ՝ աղօտ լուսով պարունակիս
Որ սահմանիկ մի եւս ծածկիմ եւ դու ծածկես լոյս աշխարհի։
Մի՛ զպաշտօն տիրականիդ տար ծառայիս, ժպտեմ ով Տէր.
Չհանդուրժեմ, ձեռք իմ դողան եւ սասանի սիրտ իմ տկար.
Հուպ մերձիլ յանմատչելի Հուրդ ՚ի մարմնիդ աստուածախառն.
Ցորմէ տոփքէն սարսելով եւ ունելեօքըն մերձենայր
Ո՞րպէս կարեմ ջուր ածել ափովս գլխոյդ բարձր եւ անհաս,
Առ որ հայել ոչ զօրեն Թեւասքօղեալ հոյլք հրակերպիցն.
Քա՛ւ, Տէր իմ, չառնեմ զայդ ես, դու մի՛ ստիպեր զիս հեզութեամբդ։

Թո՛յլ արա, ով Մըկրտիչ, հեզաբանէր գառըն Յիսուս,
Ի բարձանց խոնարհելոյս, մի՛ արգելիչ լինիր այդպէս.
Որչափ իջից ես ՚ի վայր, այնչափ զանկեալսդ հանեմ ՚ի վեր։
Թող որ այսպէս լընուամ ես զնորոյ կրօնիս արդարութիւն.
Հայր իմ այսպէս պատուէր ետ ինձ, եւ հընազանդ եմ Հօր կամաց
Որ զՈրդին պարտաւոր է տանել պաշտօն ըզծառայի,
Նո՛յն եւ զկարապետդ իմ գոլ բանից կամակատար,
Լեր հապա հնազանդ հեզոյս եւ մուտ ՚ի ջուր, ով Մըկրտիչ։

Զարհուրէր եւ Յորդանան ընդ Մըկրտչին հրաժարելոյ
Տեղի տայրն Տեառըն ոտից ալիքն ՚ի վեր վէտ վէտ դարձեալ.
Եւ զի տես Ճըշգրիտ ըզտիպն ոչ ձեռագործ ՚ի տապանակն.
Այլ ՚ի մարմնի կուսական Նոր երեւեալ կերպիւ անճառ։
Նա ոչ յուռ քահանայից բարձեալ պատուով Աստուածական.
Կամ ՚ի ծոց ոսկիապատ արկեղըն ուրբ ծածկեալ յաչաց,
Ուր Քրովբէք հովանեաւն աստի ու անտի հովանաւոր
Հապա ինքն, որ ՚ի Սինէ գըրեաց ըզտառսն ՚ի տախտակսն,
Կենդանի եւ նորահրաշ տապանակաւ մարմնոյն ծածկեալ.
Ճըշգրիտ մարդ կերպանալով՝ առ ինքըն գայ եւ մըկրտի.
Ուստի խոյս տուեալ փախչէր, Դաւիթն ըզկնի ձայնէր հարցմամբ.
Զի՞ է քեզ, զի՛ տեսեր դու դառնաս անդրէն, ով Յորդանան,
Մինթէ ըզքոյդ արարիչն եկեալն առ քեզ կերպիւ խոնարհ՝
Դարձիր օն ընկալ ՚ի ծոցդ եւ ջուր լուացման տուր Արարչիդ.

Մերկանայր անդէն Յիսուս ընդ Մկրտչին իջեալ ՚ի գետ,
Վեհային ըզգլուխըն իւր. առ ծառային աջով կալեալ
Այնպէս խոնարհ ակն ՚ի կոր յատին լինէր եւ նուաստանայր.

*Ցոր ածեալ ձեռնադրողին ջուր ըզմարմնովըն մաքրագոյն,*
*Լըւանայր, եւ շոյտ անդէն ելեալ 'ի դուրս՝ կանգնէր յաղօթս.*
*Բանային երկինք վերուստ եւ երեւէր Հոգին Աստուած:*
*Որպէս անդ 'ի սկըզբանէ շըրջէր 'ի ջուրս համատարած;*
*Նոյն եւ աստ 'ի Յորդանան, այլ հրաշագոյն օրինակաւ*
*Սաւառնեալ աղաւնակերպ յիւր փառակցին վերայ հանգչէր:*
*Առ նըմին եւ հայրական բարբառ լըսիւր որոտագոչ:*
*Ահա՛ դա՛ է սիրելի եւ անդրանիկ իմ միածին,*
*Ցառաջ քան զարուսեակ ծնունդ 'ի Հօրէ, որ չ՚գիտէ մարդ:*
*Եւ մինչ ես 'ի յոչընչէ զաշխարհս պատրաստէի,*
*Դա յիս էր պատշաճեալ իմաստութեամբըն շարժագոյն:*
*Զոր հայցէր Սողոմոն զայդ ընդունել յերկնից բարձանց,*
*Աւասիկ արձակեսցի ամենիշխան յիմ աթոռոյ.*
*Որ եկեալ դադարեսցէ 'ի ձեզ կերպիւ այդ մարմնացեալ.*
*Գիտէ՛ եւ խելամուտ է դա համայն ճանապարհաց.*
*Թէ զի՛նչ կամիմ ես յերկինս եւ զի՛նչ հաճոյ է իմ աչաց:*
*Դարձ; Յակոբ, հայեաց 'ի դա եւ տես ըզլոյսդ քո ծագեալ.*
*Բուռն հար ըզդըմանէ, ով սիրեցեալդ իմ Իսրայէլ.*
*Մի՛ թողուր զփառս քո այլում եւ մի զօգուտ օտարաց*
*Դու մի՛ երկբայեր զխոնարհ դորին գալըստեանէ,*
*Թէ լցէ դա ինքն անշուշտ փրկիչ եկեալ Իսրայելիդ:*
*Ասեմ քեզ, ահա Որդւոյս վկայ լինիմ ես 'ի յերկնուստ.*
*Եւ ընգիա Հոգին Աստուած յիւր փառակիցըդ հանգչելով:*
*Այսպէս առ 'ի Հօրէն եւ 'ի Հոգւոյն՝ Բանըն մարմնով*
*Մըկրտեալ վըկայեցաւ Աստուածորդի գոլ ճըշմարիտ.*
*Եւ ըզգըլուխըն կամակոր վիշապ օձին բուռնեալ 'ի ջուր*
*Ջախջախեալ եւ խորտակեաց առեցելոյ գարշապարօքն.*
*Եւ օձեալ Քրիստոս արքայ, Յիսուս փըրկիչ իւրով Հոգւոյն՝*
*Զօրացաւ քան ըզՅեսու եւ կործանեաց զհին Երիքով.*
*Եւ յերկիր այս Աւետեաց, որ օրինակէ վերինայնոյն,*
*Մոյծ ըզմեզ եւ ժառանգորդ արար սըմա զնոր Իսրայէլ.*
*Նորագործ մեզ աւազան կազմեաց ըզծոյ Յորդանանիս,*
*Ուր մըկըրտեալ մերկանամք զհին մարդ, մեղաց ըսկըզբնածին,*
*Զարդարիմք լուսազգեաց պատմուճանաւն անմեղութեան,*

Կըրկնակի արժանանամք ընդունելոյ զՀոգին. շնորհաց։
Երանի է մեզ, Մանկունք, զի զփառս աղինըն Յակովբայ
Հնաւորոյն զօրութեամբ յափըշտակեալ մեզ գրաւեցաք.
Եւ զերկիրս, որ քաղցրութիւն կաթին մեղըր բըղխէ զԲանին,
Ժառանգեալ եւ կըշտացեալք արդ վայելեմք 'ի բարութեանցն։
Այլ ըղձալ լինել պարտ է ըստ Պօղոսեան ըսպառնալեացն,
Մի գուցէ կործանիցեմք 'ի յարմատոյն նոր պատուաստեալքս։
Սիրելի էր ընդոծին Իսրայէլեան ազգ ձեռատունկ,
Ո՛հ, անարգեալ մերժեցաւ, զի զՀաւատոյն չէբեր պտուղ.
Երկընչել արժան է մեզ, մի եւ ոստոյս անհարազատ,
Դիպեսցի այս եւ յայնժամ 'ի բաց քանդեալ կործանեսցիմք.
Լեալ շնորհազեղծ անպտուղ առ պատուաստիչըն բարեխնամ։



# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ԵՐԿՐՈՐԴ ԵՐԳՈՑ.

Ի յերկրորդ մասն երգոյս հանէ 'ի լեռան փորձութեան եւ անդէն 'ի մէջ բերէ զերրակի փորձութիւնսն դարանաւոր խորամանկին և գքաջայաղթ լինելն Քրիստոսի ժուժկալութեամբն պահոց և իմաստուն պատասխանատուութեամբն ։ Խրատական բանք առ մանկունս, մի երկիրպագանել փառաց սնոտին, յորժամ հասանէ նոցա 'ի մէջ աշխարհախումբ առնել 'ի գլուխ լերին մեծութեան հրապուրեալ յերեւելի վայելչութեանցն, զորս ընդ առաջ աչաց նոցին բերէ պատրիչն ։

Իջուցանէ անդուստ [illegible] . ուր զկոչմանէն ձկնորսացն յաշակերտութիւն [illegible] Քրիստոսի համառօտիւք անցեալ՝ պարծուցանէ զմտ բանին առ ազգն Հրէից և [illegible] ացն Յիսուսի 'ի դէմ բերեալ՝ յանդիմանէ զխստութիւն սրտի նոցին, որ չհաւատաց 'ի գալուստ Որդւոյն Աստուծոյ ։ Աւքատաբար կենցաղավարութիւն Քրիստոսի և նորուն աշակերտացն՝ ըստ ուղիղ հանդերձ ։

Հանէ ապա 'ի լեռան Թափորական ։ Պայծառակերպութիւն Քրիստոսի և ուշաթափ լինել երից աշակերտացն ։ Երեւումն Մովսիսի և Եղիայի ազանչելեօք, որոց տայ խօսիլ ընդ Յիսուսի յաղագս անճառահրաշ տնօրէնութեանն և զխաչին չարչարանաց, որ կատարելոց էր 'ի նոյն աւուրս յԵրուսաղէմ . Բանք՝ ուշաթափեալ Պետրոսին առ Քրիստոս վասն տաղաւարաշինութեան ։ Պատասխանիք նորին առ նա, մի խնդրել զերկնային փառաց հանգիստ եւ զվայելումն առանց չարչարանաց խաչի ։

Ի վերջոյ յորդորէ զմանկունս հետեւել Քրիստոսի խաչակիր առաքինութեամբ . որով արժանանալ ելանելոյ յիմանալի լեռան վերին 'ի Թափորն երկնից և անդ վայելել յաւէրժ յԱստուածային զմայլեցուցիչ քաղցր տեսութենէն ըստ ընտրեալ երից աշակերտացն ։





# ՀՐԱՇԱՓԱՌԱՊ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

### ԵՐԳ ԵՐԿՐՈՐԴ

Որ յորդանան աւազանին մկրտեցաք անդ 'ի Ծննդեան,
Խաչանիշք դրոշմեալ իւղովն՝ արիացաք զինու Հոգւոյն։
Ի լեառըն փորձութեան արիք ելցուք ընդ Քրիստոսի.
Ուր պահոց Օրէնսդիրն անդ 'ի դրախտին հնոյն Ադամայ
Ժուժկալեալ զաւուրս այնքան՝ պատրաստեցաւ 'ի պատերազմ։
Եւ որ նովին որդիացեալ էր 'ի նմանէ առեալ մարմնովն.
փոխանակ հօրն անցելոյ զպատուիրանօք ծառոյ պտղոյն,
կամաւ որ յօժարութեամբ մնայր անճաշակ զքառասուն օր։
Առ որ մերձեալ փորձողին որպէս 'ի դրախտն առ Եւա
Գող հասու լուսոյն ճշգրիտ որ 'ի մըթան մարմնոյն ծածկէր,
Եւ գարանս գաղտնագիտին դընել ջանայր պէս-պէս հնարիւք
Խելամուտ լինել նորին խորախորհուրդ տնօրէնութեանն։
Ո՛վ, տէր, Աստուածորդիդ դու վըկայեալ առ 'ի վերուստ,
Ջուր լըւայ 'ի Յորդանան եւ զքէն ունիմ ես տարակոյս,

Թէ Որդի ես արդարեւ Հօր Աստուծոյ եւ սիրելի,
Չես հապա մարդ ապիկար, այլ համազօր Աստուծոյ,
Որ ըղձեան իւր բանիւ եւ արարածք լինուն հացիւ.
Չի՞ զկարօտ մարդոյ կերեալ քաղցիւ այդպէս դու տագնապիս
Ճըռնչելով զմարմինդ այդչափ եւ կենդանւոյն մեռուցանես.
Տուր հրաման. Թող այս քարինք հաց լիցին քեզ առատ առատ,
Զի գնասցէ իմ տարակոյս եւ զքեզ ծանեայց անշուշտ Աստուած։
Ո՛չ, ասէր, քաղցեալն Յիսուս հացիւ լոկով կեայ եւ եթ մարդ.
Այլ եւ բանիւ պատգամաց 'ի հրամանէ Աստուածայնին։
Բուսանի հացն 'ի հողոյ բուծիչ լինել մարմնոյն միայն.
Պարգեւի Բանն 'ի վերուստ 'ի սնուցանել զոգիս մարդկան։
Զհողածին անարգ մարմնոյն տաս դու հոգալ, որ չ՚օգնէ ինչ,
Եւ զհոգւոյն կենդանածիր անփոյթ առնես, ո՛վ կեղծաւոր.
Այդպէս 'ի մէջ երկուցըն դատ առնես յանիրաւի
Լեալ զրկիչ մեծագունին եւ ընդ փոքուն փութաս հոգալ։
Վերառեալ տանէր ապա 'ի յաշտարակ վեհ տաճարին,
Արկանել զքեզ 'ի վայր, մի զանգիտեր, ասէր, դու բնաւ.
Պաշտպան են գունդք հրեշտակաց քեզ թէ Որդի ես Աստուծոյ.
Զայն տայ զքէն խրախուսանաց Դաւիթն անդուստ, մի՛ երկնչիր,
Պատրաստեն Նոքին առ քեզ, բազկօք բառնան ըզքեզ ընդ օդս.
Եւ յերկրի՛ վտոլս քոյին չթողուն երբէք ընդ քար հարուլ։
Զի՞նչ առ այս պատասխան տայր Իմաստութիւն երկնային.
Որ ինքըդ Աստուածորդւոյս զբանդ 'ի վկայ դիտես ածել.
Հի՛մ եւ զայն 'ի Մովսիսէն գրեալ 'ի տառս ոչ ընթեռնուս
Որ սպառնայ մի ժըպրըհիլ փորձել ըզՏէր Աստուած քոյին.
Շատ լիցին վասն իմ եղեալքն 'ի Բեթլեհէմ եւ Յորդանան
Տար 'ի քէն ըզտարակոյս եւ հաւատա ըստուգապէս.
Ես այն եմ իսկ, որ 'ի գերել ըզքոյդ աւար իջի յերկնից,
Ըզհնարս հաղըից քոյին տակաւ տակաւ խայտառակեմ.
Մի՛ յուսար այլով հնարիւք զիս դարանել 'ի քո թակարդ։
Իսկ չարին խորամանկ՝ ոչ շատացեալ կրկին փորձիւքն՝
Յաւել եւ երրակի նոր այլ հընարըս ճարտարել,
Նոյն հետայն առեալ հանէր զնա 'ի լեառն բարձրակատար,
Զգիտեմ, զառըն հեզիկ որպէս երթայր զհետ կամակար.

Եւ նուաճարել տայր անոնց գնահնուրց երկրի արքայութիւնս,
Եւ նոցին փառք, պերճութիւն, ունայնութեան շուք անցաւոր.
Քեզ, Տէր, տամ զայդ բոլոր իշխանութիւնս այս աշխարհի.
Իմ են համայն եւ յինձ տուեալք, ում եւ կամիմ տամ ես ազատ.
Թէ անկեալ երկրպագեսցես, քեզ տաց ահա զայդ ամենայն։
Խոժոռեալ ընդ այս բան՝ Հեղապուրծին ասէր ցսատանայ
Ե՛րթ, ով սատանայ, երթ 'ի յետս իմ, դարձիր 'ի չիք.
Ո՛չ 'ի տառսըն գրեալ է, Տեառն Աստուծոյ երկրպագեսցես.
Եւ նմին միայնում տացես պաշտօն զայդ վայելուչ։
Ո՛վ արուեստակերտ խաւարեալ, որ ընդ առաւօտըս ծագէիր.
Յերկնաւոր փառաց թափեալ՝ անկար յերկիր այս տարագիր,
Ի՞ւ այդչափ մեծաքանես իբրեւ իշխան աշխարհիս.
Համբեր, այժմիկ դատաստան է, մինչ բարձրանամ կամաւ 'ի խաչ.
Անդ քո զայդ իշխանութիւն հանից 'ի քէն նոր յաղթութեամբս,
Եւ հզօրիդ 'ի տուն մտեալ զգանձըդ բոլոր աւարեցից.
Զինուոր եմ ես Հօրն իմոյ, եկի յաշխարհ 'ի յասպարէզ,
Փոխանակ պարտեալ մարդոյն՝ արդ ելանեմ 'ի մարտ ընդ քեզ.
Ո՛չ ուժով աստուածային, այլ առեցեալ մարմնովս անզօր.
Տէրն այսպէս ըզմեքենայս չարահնարքին խայտառակեալ,
Յաղթութեան հանդիսացաւ 'ի յասպարէզ նախամարտիս.
Եւ փորձիչն 'ի բաց լինէր լի ամօթով եւ կորագլուխ.
Ցոյտ անդէն մատեան զուարթունք պաշտօն տանել Աստուածորդւոյն,
Սեղան կազմեալ երկնային եւ նորատեղծ հաց 'ի վերայ
Ի Հօրէն յղեալ պարգեւ յաղթող Որդւոյն իւր սիրելի,
Որ թշնամւոյն հնոյն Ադամայ՝ յաղթանակեաց նորն Ադամ.
Ցնծայր Հայրն 'ի յերկինս, հանդէս առնէր ուրախութեան.
Եւ հիւսեալ լուսոյ պսակ յաղթող Մանկան իւր առաքէր.
Խրախոյս կարդար մարտադրին, ազնիւ, Որդեակդ իմ, զօրացիր
Այդպէ՛ս մինչ 'ի խաչ չարին յաղթող հանդիսացիր։
Եւ մեք եւս, ով Մանկունք, փրկչին մերոյ նախամարտիկ
Հետեւեալ ժուժկալութեամբ յաղթող լիցուք փորձողին.
Թէ մեծութեամբ աշխարհիս լերանց 'ի գլուխ բարձրանանք,
Մեր աչաց երեւեսցին վայելչութիւնք փափուկ փառաց.
Որ զօրէն փշալից ծաղկանց հեշտատեսիլ են հայելեաց.

Վայրիկ մի զուարթ են գեղով մինչ երջանիկ գարնան է ժամ։
Իսկ ընդ մերձիլ աշնայնոյն եւ ձըմերան մահապուշակ
Փոյթ անդէն լեալ ծաղկընկէց եւ մերկանան տերեւաթափ։
Մի՛ լիցի ուրեմըն մեզ, որ 'ի չարէն հրապուրելով
Պատրանաց վայելչութեան յառեալ 'ի գեղն զմայլեսցուք.
Մի՛ եւ խաբեալ երեւելեօք, քաւ թէ անկեալ իբր Աստուծոյ
Ի գլուխ լերին մեծութեան երկրպագեսցուք փառաց բախտին.
Թէ նըման Յիսուս Փրկչին չառնեմք երես երեւելեացս,
Յայնժամ եւ մեք փորձողին յաղթող լինիմք խաբէութեան։
Որ յաղթէ, ասէ Աստուած 'ի Յայտնութեան Առաքելոյն,
Տաց նըմա որ ճաշակէ Մանանայէն թագուցելոյ։

Ո՛ն խնջանեմք, ո՛վ Մանկունք, յափըն ծովուն Տիբերական,
Ուր բըղխի յաղթութեան էջ Զօրագլուխըն հաւատոյ.
Հեզ ոտիւքըն ճեմելով՝ զաչըս յածէր յայսկոյս յայնկոյս,
Առ 'ի գիւտ ընտրեալ գընդին, թէ ո՛վ զխաչն իւր բառնայցէ։
Պատրաստ էր եւ չոյտ եգիտ այլ յանտոհմիկ 'ի մարդկանէ.
Ո՛չ յԱթենեան տաճարէն 'ի կիրթ ուսման վարժեցելոյն.
Ո՛չ դպրոցէն Աղեքսանդրի, որ համբաւ տայր համայն յաշխարհ,
Կամ Հռովմայ մեծի տանէն հռչակելոյն աշխարհակալ։
Ո՛չ եւ դըպրաց փարիսեցւոց, որ ճոխ էին արդարութեամբ.
Այլ աղքատ եւ ցածուն 'ի ձըկնորսաց ծովակաստակ.
Այլ ռամիկ եւ պարզամիտ գեղջկի յարանց սոսկականաց։
Զի աղքատ Վարդապետին եւ աշակերտն աղքատ պիտէր,
Որ ընդ լսել՝ ըղձայն հեղիկ կոչման Հովուին երկնաւորի,
Փութացան ըզկնի Նորին իբրու զգառինս 'ի կաթն մօր,
Հոտ առեալ եւ դիմեցին մի ըղմիով յԱղն երկնաւոր.
Զորս առեալ կոչողին գունդ մի փոքրիկ կազմէր զինուոր,
Մարտակից լինել ընդ իւր յորժամ կռուէր ինքն ընդ աշխարհ։
Ո՛վ, խեցեղէն անօթս ընտրեալ, որ ջախջախէ երկաթի զէնս,
Պօղոսն ասէ զյիմարսն ընտրեալ, որ զիմաստունս յամօթ առնէ։
Սկիզբն առնոյր շըրջիլ Նոքօք 'ի մէջ երկրին իւր Հրէաստան.
Լոյսն 'ի ճրագ մարմնոյն լուցեալ՝ վառէր 'ի տան Իսրայէլի.
Զոր ծածկեալ ամփոփէր զամս երեսուն 'ի Գալիլեա.
Իբրեւ Որդի մարդոյ սոսկ 'ի Նազարէթ քաղաք աճեալ.

Տեսին մարդիկ՝ եւ կարծեցին՝ թէ որդի է հիւս Յովսէփին.
Այլ Յիսուս վասն իւր ասէր, Որդի մարդոյ եւ վկայէր։
Իսկ յորժամ ՚ի Յորդանան նա յայտնեցաւ ՚ի վերուստ,
Թէ սիրելի Որդի, է նա Հօրն լուսոյ յաւիտենից
Ծնունդ անհաս եւ անճառ զոր չգիտէ մարդ երկրաւոր,
Ո՛չ ժուժկալ այնուհետեւ լոկ Յովսէփայ կոչիլ որդի.
Կամ որ Լոյս աշխարհի էր՝ զԼոյսն յաշխարհէ թագուցանել.
Եւ որ ինքն ՚ի գլուխ լերինն սրբութեան քաղաք շինէր.
Կենդանի աննիւթական վիմօք բանին նորոյ կտակին.
Ո՛չ կարէր թաքչել երբէք, որ սիրեցին զյայտնութիւնն
Սիրեցին. եւ փութացան, ո՛ն երթիցուք ՚ի նորա լոյսն.
Եկեալ ՚ի յաշխարհ գոլ լուսատու խաւարելոցն։
Դիւրամերձ էր նոր Մովսէս, լոյս ՚ի բանէն արտափայլէր
Բացադէմ. եւ ոչ քօղով նըման նըմին ծածկէր զերեսս։
Այլ աւա՜ղ, առ որս հուպ ճառագայթեալ լոյսն ճըշգրիտ,
Կափուցին զաչս իւրեանց, մի՛ տեսանել զլուսոյն ըզդէմս.
Որ քաղցր էր եւ ոչ իբրեւ ըզՄովսիսին, որ խայթէր զաչս։
Ո՛չ որպէս անդ ՚ի Սինէ ծածկեալ ամպով մառախլապատ,
Մեծագոչ լերինաթինդ ձայնիւն իւր տայր ըզպատգամս,
Յոր զարհուրէր ծառայն Մովսէս, զընդայր ահիւ բոլոր բանակն։
Այլ աստ ո՜վ, Աստուածորդին ՚ի Սինայէ երկնից իջեալ.
Անցուկ եւ միայնակ, ոչ Ահարոն ունէր ընկեր,
Եւ զի՞ պիտոյ էր Ահարոն եւ կամ զոհ եւ զոհարան,
Ինքն էր զոհ եւ քահանայ եւ զոհարան խաչի սեղան,
Որ միանգամ զինքն մատոյց ինքնանուէր պատարագ,
Զմեղս աշխարհի քաւեաց մահուամբ եւ անասնոց բարձան զոհք,
Յիսուս եբեր զԱւետարան եւ աւետիս էր կենաց բան,
Ո՛վ, ընդ Մովսէս եւ ընդ Յիսուս քանի՞ լայն է անջրպետ
Աւետարան՝ լի շնորհօք. լի սիրով եւ գորովով
Մովսէս մահ էր ժողովրդին, որ մեղանչէր առ օրէնս.
Յիսուս կեանք եւ շնորհ, պարտապանին շնորհէր զպարտիս,
Մինն ասէր. քարկոծեցէք զկին մեղաւոր առ օրէնս
Միւսն ասէր. արձակեցէք, եւ ո՞վ ՚ի ձէնջ է անմեղ
Զի՞ մեղաւոր ըզմեղաւոր դատել կարէ ո՛վ կեղծաւորք։

Մովսէս պատուհասից աստուած եղաւ փարաւոնի.
Յիսուս աւետաբեր փրկիչ եղաւ համայն ազանց:
Բերանովըն իւր խօսէր Թարգ միջնորդի մըտերմաբար,
Բանըն Հօր զԱւետարան եւ ըզպատուէր Հօրըն խօսէր,
Եսայեայ բանին ճշգրիտ Նըկարագիր կըրէր յանձին.
Ո՛չ վիճէր նա ընդ ումեք. եւ կամ հանէր ինչ աղաղակ.
Ո՛չ երբէք լսուան մարդիկ զբարբառ նորա 'ի հրապարակս.
Անդ անջուր յանապատին յորդահոսան վիժին վըտակ
Հետընթաց խաղայր հրաշիւք զհետ բանակին Իսրայէլեան,
Ջուր անոյշ բաշխէր առատ ծարաւ լեզուացըն տըրտընջող.
Աստանօր կենաց աղբիւր կենդանի վէմին ինքըն Քրիստոս.
Գետահետեւալ ընթանայր 'ի սուրբ Երկիրս այս Աւետեաց.
Երկնախօս 'ի բերանոյն յորդոր բըղխէր զբանին վըտակ,
Ծարաւուտ երկիր հոգւոյ արբեալ լինէր ջըրովքն կենաց:
Աւա՜ղ, անընդունակ, անբեր երկիրդ Իսրայէլեան,
Ոռոգեալդ 'ի Քրիստոսի քաղցր ականէն կենդանաբուղխ,
Տակաւին ոչ ընծիւղեալ բողբոջեցար դու հաւատովք:
Երկնաւոր սերմանահանին եւ պարարակ եզըն Յիսուս
Խոնարհ մարմնոյն տուեալ ըզլուծ վարեաց ըզքեզ ակօս ակօս,
Մաքրմնութիւն սափիւքըն իւր ընթանալով յայսկոյս յայնկոյս.
Ըզբանին սերմ՝ սուրբ հատիկներ 'ի քեզ ցանեաց լի բուռն լի բուռն.
Եղո՜ւկ, որ չ'ընկալար յերկիր սըրտիդ ապառաժուտ
Սիրաշխատ քոյդ մըշակին դու ոչ բերեր բարի պըտուղ.
Որ այնչափ վաստակեցաւ, ո՜հ, եւ 'ի քեզ Թափեաց քըրտինս.
Տէրըն ո՜չ բանին յորոց միայն 'ի վարել զքեզ ջանացաւ.
Նա՝ հրաշիւք զարմանազան Աստուած լինել զինքըն ծանոյց.
Թէ բանիցըն ճըշմարիտ քեզ հաւանել ծանր էր ունկանց.
Թող աչացըդ գոնէ քաղցր Թուէին հրաշիցըն գործք
Երեւեալ 'ի քեզ պէսպէս, որ զմարդն ածէ 'ի զարմանս:



Ի Կանա դու ո՞չ գնացեր 'ի նորահրաշ գինւոյն յարբումն.
Ուր ընդ Մօրըն հրաւիրեալ 'ի հարսանիս երթայր Յիսուս
Որ ինքն էր Որթ ճշմարիտ եւ բարունակ, կուսէն բերեալ
Ծաղկեցաւ, եւ անդ եբեր զանոյշ գինին նոր նըշանացն
Ո՞չ ուսար թէ այնու՛ զդառըն ջուր հնոյն օրինացն
Նոր սիրոյն պատուիրանօք 'ի քաղցրութիւն դարձոյց գինւոյ.
Որ աւա՛ղ, քեզ դառն եղեւ եւ ոչ ախորժ քո բերանոյդ.



Ի Նայի՛ն, ուր դագաղք ըզմիամայրըն տանէին
Դու չէի՞ր յուզարկաւոր եւ ըզանշնչելեայըն տեսանող
Որպէս մատչէր 'ի դին գորովաշարժ կենդանատուն.

Մեռելոյն ձայն տայր անդէն, ձայն հասանէր հոգւոյն 'ի բանդ
Քեզ ասեմ, պատանեկիկ, արի եւ կաց 'ի մահուանէդ.
Յարուցեալ 'ի մեռելոց լեր դու քարոզ առ կենդանիս,
Զինչ անդէն, յառնէր կանգնէր իբրեւ 'ի քնոյ նընջեալն 'ի մահ.
Որ ընդ մօրն 'ի տուն դառնայր, ով աստ զմօրն չափէր բերկրանք.
Ծանուցաւ մեռեալ ունկան ձայն Արարչին, ով սքանչելեացս,
Կենդանութդ ոչ ազդեցաւ, զի խուլ եղեր դու կամօքն
Առ 'ի ոչ լսել կանգնել քեզ հաւատով 'ի մահուանէդ.



Ի դաշտին տափարակ, ո՞չ բազմեցար 'ի ճաշ հրաշիցն,
Ուր հընգեաւ նըկանակօք ըզհինգ հազարսըն կերակրեաց.
Դու կերեր կըշտապինդ եւ յագեցար աճեալ հացիւն.
Բայց, հաց մարմնոյդ քան զբան կենաց քեզ դիւր եկաւ և շահեկան.
Յիշեցե՞ր միթէ դու ձրի մանանայն եւ լորամարգ
Որ ջանացար կացուցանել քեզ թագաւոր ըզկերակրիչն.
Իսկ ըզՀացըն կենդանի քեզ 'ի վերուստ իջեալ պարգեւ
Ո՛հ, 'ի բաց անարգեցեր եւ ոչ մատեար 'ի ճաշակումն.
Դաւիթն անդուստ իւր հոգւով հրաւէր կարդաց քեզ բարձրաձայն
Մատերուք, քաղցեալ ոգիք, ճաշակեցէք, զի քաղցր է Տէրն։
Երանի՜ տայր եւ քեզ թէ յուսայիր նըմա սրտիւ.
Իսկ դու ոչ հաւատացեր որդ մեռանիս սովամահ.

Ուսմբ ըստուգապէս 'ի ծնէ կուրէն հարցանելով.
Ում այն ինչ 'ի տաճարին Տէրըն կըրկին երեւեցաւ,
Անկեալ երկրպագէր Աստուածորդի խոստովանելով.
Ցամօթ եւ նախատինս քեզ ունողին աչըս տեսող.
Զոր փակեալ կամօքն ըստ Եսայեայ գուշակութեանն,
Մի լուսոյն աշխարհասփիւռ լինել երբէք քեզ նըկատիչ.
Որ զի մի դառնայցես դու հաւատով 'ի քո բըժիշկն.
Ոգւոյդ աչքըն բացցին ըղքոյդ Փըրկիչըն ճանաչել:



Զո՞րն եւս տար 'ի սքանչելեացըն Քրիստոսի բերից 'ի դէմդ,
Զգաստանալն 'ի հեղ բնութիւն Գերգեսացւոց դիւահարայն,
Ըղձեմէն 'ի լուծական ծովուն վերայ իբր 'ի դաշտի.
Զհնազանդելն ալեաց հողմոց 'ի հրամանէ Աստուածական
Դու տեսպր զանդամալոյծն, որ ըզմահիճս առեալ գնայր,
Ո՛չ հրեշտակ, ոչ ջուրց շարժումն, այլ Յիսուսի ձայն էր բժիշկ,
Դու հրաշիցն հաւատացեր, այլ զշաբաթն բերէիր փաստ:
Ա՛նդ էիր որ զՂազարոս 'ի թաղմանէն կոչեաց 'ի կեանս
Ասէիր միթէ չ'կարէ՞ նա. զնիրեալն յարուցանել.
Այսչափ հրաշից հանդէպ շատ ոչ եղէն անհաւատից
Ճանաչել Աստուած ըզնա եւ ոչ Որդի մարդոյ եւ եթ,
Որ տակաւին 'ի Նմանէ այլ եւս նըշան պահանջէիր:
Արդ երդեմ եւ ըզշինական անշուք կենաց ըզՓրկատուին,

Որ 'ի մարդիկ համարեալ՝ կենցաղ վարեաց նման. մարդկան.
Աղքատիկ աշակերտօքն, որ խաչաբարձ գնացին ըզհետ։
Որ զլերին աշխարհ զուարթնոց, զերկիր մարդկան հրաշակերտեաց.
Ո՛վ անճառ սիրոյն իւրոյ ինքն անվայրիկ եկաց պանդուխտ.
Անօթեւան եւ անտուն կեանս անցուցեալ աստանդական։
Գանգատէր, ո՜հ, սրտառուչ 'ի լուր ազգին անհիւրընկալ.
Աղուեսուց որջս ետուն, ասպնջական եղեն լերինք
Եւ թռչնոց երկնից ըզգոյնս ծառքըն ստուերք ապաստանի.
Ո՜հ, չետուր, ո՛վ Իսրայէլ, Հիւրոյդ քոյդ գըլխոյն հանգիստ։
Նախահայրդ Աբրահամ նըստեալ 'ի դուռըն խորանին
Անծանօթ ուղեւորաց 'ի հրաւիրումն ընդառաջէր,
Ցանկացայ եւ ես երթալ հիւր նազելի ծերոյն այնմիկ.
Մինչ ետես փութացաւ տարաւ հանգոյց զիս իւր 'ի վրանն.
Ջուր, անդէն վաստակելոյ եւ մարմնաւորիկ ոտից իմոց
Նա յայնժամ ածեալ անդէն՝ լուանայր ձեռօք եւ դիւր առնէր,
Եւ սեղան լիախորտիկ կազմեալ հիւրոյս՝ ինքըն պաշտէր։
Որ այսօր պարծիք այդչափ զոլ հարազատ որդիք նըմին,
Չի՞ տպա զնմանութիւն հօրըն ձերոյ չունիք յանձինս։
Ո՛չ եւ եթ չեղեն յօժար զՏէրըն սիրով ընդունելոյ
Ո՜հ, ըլցեալք ատելութեամբ հալածէին վայրէ 'ի վայր.
Որ երթեալ աշակերտօքն աստ անդ 'ի գաղտ ծածկէր զերեսս,
Մերթ 'ի դաշտի բացօթեայ՝ հոլուաց նըման իջեւանեալ՝
Ցօղաթուրմ անձրեւահար լինէր զգլխերըն բովանդակ.
Մերթ ընդ յարկօք չինականաց ննջէր այնպէս գետնախշտի,
Ընդ փափկութեան աշխարհի ինքն 'ի վերայ քարակոշտից
Զարձակէր զգօտին երբէք զերդ ուղեւոր տարագնմիկ.
Եւ մերթ եւս 'ի միջօրեայ տօթաժամու ճանապարհին
Զայն քընքուշ կուսածաղիկ մարմին խարշէր շող արեւուն։
Զունէր ցուպ 'ի ձեռին, խաչն էր նորուն ցուպ հաստագոյն,
Կամ պարկիկ մի հացաբարձ ըստանձնելով աշակերտացն,
Զինչ ըլնէլին առաջի ոչ պահանջէր քան զայն ուտել.
Որ խրատէր Մարթայի, աստ սակաւ ինչ պիտոյ է մեզ.
Որ բանիւըն պատուիրէր՝ տալ զօրինակ փութայր արդեամբք.
Հեզ էր եւ ոչ բարձրամիտ ինքն 'ի մէջ աշակերտացն.

Ո՛չ ուսան միթէ նոքա 'ի ծովակին Տիբերական,
Զունկ որսալ ձրի առատ, տանել ծախել շահել դրամ։
Վասն որոյ յուշի եկեալ հարցանէին գիտակ լինել.
Տէր, ահա՛ զգոյս մեր բոլոր թողեալ եկաք մեք ըզկնի քո
Զի՞նչ լինիմք 'ի վախճանի, եւ զի՞նչ լիցի վարձ մեր 'ի քէն։
Դուք, ասէր որ այդպէս, վասն իմ կամաւ աղքատացայք,
Եւ զթիկունս յօժարութեամբ եդիք ընդ իմ խաչին բեռամբ,
Զեզ ասեմ, որպէս հաղորդ լինիք աստէն դուք իմ վշտաց,
Անդ յերկինս արժանանայք ձեզ պատրաստեալ յերկնից փառաց.
Եւ ընդ իս յաթոռ նըստիլ դատիչ լինել. արդ խոստանամ,
Յորժամ ես գամ 'ի դատել զազգս մարդկան.
Թէ փառացըն հանդերձեալ դուք փափագիք լինել տեսող,
Իբրեւ զոյզն առհաւատչեայ ցուցից ըզփառսն 'ի Թափոր։



Ո՛ն առեալ զմանկունս, եւ մեք արդ ընդ երից աշակերտացն.
Ելցուք անդըր հոգւով եւ հաւատով տեսցուք զփառսն.
Քանզի անդ հրաշածաղիկ վարդըն Յիսուս մարմնովըն իւր
Ծիրանի եւ երփնագոյն գեղով վառեալ պայծառացաւ,
Լոյս 'ի կուսական յանձնէ մարմնոյն արտափայլեալ.
Ճառագայթք առ 'ի նմանէ հատան իբրեւ 'ի յարփենւոյն.
Ձիւնափայլ դարձան հանդերձք, որ սեաւ եւ մութ էր պարեգօտն.
Նոր երկին եղեւ Թափոր լըցեալ լուսով անմատչելի.
Տէրն 'ի նմին իբր 'ի Սինա փայլատակեալ Աստուածութեամբն։

Յորժէ ահիւ զարհուրեալ ընտրեալ երից աշակերտացն
Զհանդուրժեալ 'ի տես հրաշիցն՝ անկանէին ուշաթափաց.
Եւ նայել ոչ ժուժէին 'ի հայելին Հօրն՝ անապատ,
Ի պատկերին առատութեան եւ 'ի ծագումն ամենափայլ,
Ի ճաճանչն հրանըշոյլ՝ անբաւականին մեծ զօրութեան:
Ո՛վ, աստէն ես ո՛չ գիտեմ զարարդ հրաման Աստուածայնին,
Զի կոչմամբն այսքր բերէր զՄովսէս ծառայն 'ի մեռելոց:
Եւ յերկնից զԵղիան, նախանձաւոր սուրբ օրինաց:
Եւ ահա շոյտ 'ի միջի կացին յաջմէ եւ յահեկէ.
Զարմանք հիացմանց, տիպ յարութեանըն համօրէն,
Ոյք խօսէին ընդ Յիսուսի ըղձերկաւէտ խաչին ելից
Հրաշալեաց կատարելոյ առ 'ի նմանէ յԵրուսաղէմ:
Օրհնեալ է, ասէր Մովսէս, այդ քո խոնարհ գալուստ, Փրկիչ.
Որ հանդերձեալ ես կամաւ մատնիլ 'ի մահ եւ մեռանել:
Յընծայմ ընդ երեւումն անտես դիմացդ աստուածահրաշ.
Ընդ այնչափ թախանձելով՝ տեսի միայն ըզզարշապարդ,
Վա՜շ. այժմիկ խոյս հայիմ հուպ 'ի տիպարըդ լուսաճաճանչ:
Մեռանի, դու ասէիր, թէ որ զերեսս իմ տեսանէ.
Բարէ, ինձ մեռելոյս արդ կեցուցիչ եղեր տեսլեամբդ.
Ահա ահիւ զարհուրէի, աստ խրախուսիմ եւ զուարճանամ:
Նա յանկծիւս եղեալ ափշիմ մինչ նըշմարեմ զհուրըդ կիզիչ,
Որ յայնժամ ըզմորենին վառէր եւ ոչ այր անկիզելի.
Եւ այժմիկ նոյնահրաշ 'ի կուսական մարմինդ վառեալ,
Ո՛վ անհաս քո զօրութեանդ, պահել գիտես դու զայդ անկէզ:
Այո՛. Տէր, ես հաւատամ Մարգարէն խօսք եւ ճշմարիտ
Ցուցեալ 'ի վերջ դարուս 'ի հզօր տանէն քո Յուդայի,
Աւա՜ղ. որ ոչ լըսեն քեզ որդիքըն թիւր եւ արատոյ.
Զածեն զ'ի քէն շնորհեալ անբաւ բարիսըդ քո 'ի յուշ.
Որ բազկաւըդ զօրութեան հաներ զնոսին յԵգիպտոսէն,
Որ 'ի տօթոյ եւ ծարաւոյ պաշտպանեցեր թեւապարփակ,
Որ խնամով՝ դարմանեցեր առատ սրդեամբք անդաստանաց.
Որ կոշտոյ կողուց ու անոյշ կաթամբ մաքեաց դիեցուցեր,
Որ տարեալ տըներ զնոսին 'ի լեառնըդ սուրբ ժառանգութեան.
Կեր եւ յագեցաւ Յակոբ 'ի քէն զայս բարութիւնս,

Գիրայաւ եւ յաղթայաւ, Թող եւ Թողու զքեզ Արարիչդ.
Ո՜հ, ո՛վ Տէր, զգօնեցելոյդ որդ անկուշէ խաչին վերոյ.
Մի՛ սրտմտիր դու ընդ այս, համբեր քոյին ներողութեամբդ.
Թող առցեն ըղհատուցումն 'ի քէն յաւուր վրէժխնդրութեան.
Քեզ փութալ է առասիկ 'ի փրկութիւն օձահարացն,
Թշնամաց եղեւ աշխարհ յանբուժելի լարից չարին.
Հասի՛ր, Տէր, վիրաւորդ անչափ չոյս բարձրանալ 'ի ծող խաչիդ,
Որ առ քեզ վիրաւորեալքն հայելով բժշկեսցին.
Եւ 'ի մահուն սուր ժանեաց կու զմրմնեալքս 'ի բանդ նեղելին,
Կարկառեա՛ ըզձեռըն քոյին, կորզեա եւ հա՛ն անդուստ յերկինս.
Երթամ եւ աւետիս տամ բոլասող անդ Նախահարցն,
Զազատչին մերոյ վիճումն ըզվերձ լինելըն քարոզեմ.
Զայս ասէր, լռէր Մովսէս, խօսել առնոյր եւ Հեղիաս.
Դու Աստուած նախանձաւոր եւ վրէժխնդիր փառացդ անուան,
Որ վառելոյս 'ի քոյդ նախանձ ցուցեր այնչափ ըզքանչելիս.
Իմ բանիւ փակեալ զերկին չետուր անձրեւ Իսրայէլի,
Եւ Թաթիւ սիրոյդ ամպոյ դարձեալ ցօղեր ծարաւելոցն.
Մինչ առ ջրով հեղեղատին եւ Թաքչէի միայնաւոր,
Ագռաւուց հրաման ետուր հացիւ միսով զիս կերակրել.
Անհատ իւղով եւ ալերբ զեղեր ըզտուն այրի կնոջն,
Եւ փչմամբ իմով դու շունչ նոր շնորհեցեր մեռեալ մանկանն.
Հրաշալին հրովդ երկնաւէջ ծախեր ըզզոհն իմ քեզ հաճոյ,
Զիս խնդրող զերկ յիսնապետս պատուհասաւ բոցոյդ կիզեր.
Մաշկեակին իմոյ հարուածք ըզՅորդանան անջրպետեր,
Ի վերջնումն հրեղէն կառօք հաներ 'ի դրախտըդ երկնային,
Եւ այսօր դարձեալ անդուստ վայրաբերեր այսր 'ի Թափոր.
Առ ինչ այս, եւ զի՞ առնուլ կերպարանացըդ նորահրաշ.
Մեղմախառն հեզիկ օդովն երեւեցար ինձ 'ի Քորեբ,
Օրինակ էր այն միթէ մարմնոյդ այդմիկ խոնարհակերպ.
Ցուցմ լոյսդ անվայրափոխ պարագրելով անձառապէս.
Ի մարմնոյդ արտափայլեալ ծագիս այդպէս իբրու զարեւ
Առ 'ի վկայ միացելոյ Աստուածային բնութեանդ 'ի մարդ,
Կամ 'ի տիպ հանդերձելոյ քոյդ գալըստեանըն միւսանգամ.
Զեւ հասեալ իմ ժամանակ, ընդէ՞ր այժմէն ածեր զիս, Տէր.

Վայելուչ է նմա Փրկչին զպաշտօն լընուլ իւր զմիջնորդական.
Զ՚ի մահ մատնիլ եւ ՚ի խաչ եւ սիրտ յերկրի թաղիլ մեռեալ.
Ըղձանօքն եւ համբառնալն եւ ըմբռնումն ընդ աջմէ Հօրն.
Եւ ապա հանդերձիմ գալ եւ կարապետ լինիմ յայնժամ.
Եւ ՚ի վէմդ անշարժելի նոր հաստատել զազգն անպարտող.
Ո՛հ, որ ՚ի նուազ նախ զօրութեանդ առ ՚ի նոցունց անարգելոյդ.
Է՛Ջ, ո՛վ Տէր, արդ ՚ի լեռնէս, մի՛ յապաղեր, փութայ ՚ի խաչ.
Սիրական որդւոյդ այդ նոր ցեղոյ հերպիդ Ադամայն.
Ո՛վ, քանի՜ Հայրըդ ցանկայ եւ փափաքի անձկակարօտ,
Թէ եւ դու առ ՚ի նմանէ անկեալ ծնեալդ ես անորոշ.
Զայս առ Տէր, իսկ եւ իսկ եւ ինքն անդէն ընդ Մովսիսի,
Մեկնէին ՚ի Քրիստոսէն, մինն ՚ի յերկինս եւ միւսն ՚ի բանդըն.
Եւ անդէն լուսահրաշ ամպ հովանի լինէր վերուստ.
Որոտայր եւ ՚ի միջոյ բարբառըն Հօր հաճոյական.
Դ՚աւադիկ է միածին եւ սիրելի Որդեակ իմ իսկ.
Որպէս անդ ՚ի Յորդանան, զնոյն կըրկնակի աստ վկայեալ.
Իսկ ըղձալեալըն Պետրոս ընդ այս տեսիլ Աստուածայայտնութեանն.
Խօսէր իբրեւ թմբեալ եւ զոճ բանիցըն ոչ գիտէր.
Թէ հաճոյ է քեզ. ո՛վ Տէր, այսըր երիս նոր տաղաւարս.
Մեք յօժար եմք յարինել Քեզ, Մովսիսի, Եղիայի.
Յոյժ բարւոք է մեզ, ասէր, մնալ յայս վիճակի մինչ ՚ի վախճան,
Եւ ՚ի լոյսըդ երեսաց յառնել այսպէս եւ զուարճանալ.
Զի՞ք եւ չիք յերկրի մեզ դիւր եւ հեշտ կեանք խաղաղիկ.
Ազատ ամենայնիւ յազգէն դըժպիհ եւ ոխերիմ.
Որ միշտ ատեն ըզքեզ եւ հալածեն տարապարտուց,
Թողում զայս եւ աւասիկ խորհին ըզքեն սպանանել։
Քա՛ւ, Տէր իմ, մի՛ լիցի քեզ երթալ աստի կամաւ ՚ի մահ.
Եւ սիրոյդ երկնաւորի վաղ առ ՚ի մէնջ մեկնիլ, աւա՜ղ։
Մի՛, Պետրէ, ասէր Յիսուս, լիցիս այդպէս ինձ խոչընդոտ,
Որ սիրեմ ինքնին դիմել ՚ի խաչ ՚ի մահ ՚ի Գողգոթա.
Միթէ մեծ է սէրդ առիս քան Հօրն իմոյ գորովագոյն,
Որ ես որդի եմ միածին եւ սիրելի անձին նորա,
Այլ ՚ի սիրոյ ձեր յաղթեալ՝ զիս ոչ խնայէ մատնել ՚ի մահ.
Դու առանց վըշտաց խաչի հանգիստ խնդրես, ո՛վ Պետրէ.

Ասեմ քեզ՝ թէ ոչ ընդ իս 'ի խաչ 'ի մահ դու դիմեսցես.
Մի՛ յուսար լինել երբէք հաղորդ փառացս Աստուածային
Է՛ջ ուրեմն ուր ես երթամ, եկ եւ ընկեր դու իմ յօժար.
Զայն բանիւ, որ առ Պետրոս եւ մեզ լսի, գիտէք, մանկունք.
Թէ փառացըն Քրիստոսի մեք փափագիմք լինել հաղորդ,
Ո՛ն ընկերք նորին սիրով ըզխաչն առեալ հետեւեսցուք
Լեալ նըմին չարչարակից՝ նովիմբ հանդերձ մեռցուք 'ի փառս.
Որ յորժամ յայտնեսցի 'ստ աւագափառ Տարսոնացւոյն
Եւ մեք նըման նմին լուսափայլեալ լիցուք դիմօք.
Մի՛ հանգիստ առանց խաչի աստ խնդրեսցուք իբրու զՊետրոս.
Զի՛ եւ չէ հընար զայն գըտանել մեզ հեշտ եւ դիւր.
Եւ մի՛ Թարց վաստակելոյ ընդ առապար աշխարհիս այս,
Եղանել յօժարիցիմք յիմանալի երկնից Թափօրն,
Կամ փառացն անճառագոյն արժանանալ տեսանելոյ.
Ցոր այժմիկ սիրով յառեալ պըշնումք յերկրէ յուսոյն աչօք.
Զտիպ նորին տեսանելով ընդ վայելուչ սուրբ հաւատոյն։
Նա՛ ըստ բանի ըզփայլողըն 'ի տեսլենէն Աստուածահրաշ
Զերրակի ըղտաղաւարս յօրինեսցուք Երրորդութեանն.
Ո՛չ սակայն հողանիւթիւ, այլ 'ի սրտի խոնարհ ոգւով,
Ցոր եկեալ հանգիցէ Յիսուս ընդ Հօր եւ Սուրբ Հոգւոյն։



# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱԻԵՏԵԱՑ

# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ԵՐՐՈՐԴ ԵՐԳՈՑ

Ընդ կենաձիր այցելութիւն Քրիստոսի՝ ցնծայեալ Հրաւիրակին 'ի սկզբան երգոյս, հրաւիրէ զմանկունս 'ի գիւղն Բեթանիա։ Յարութիւն Ղազարու 'ի չորեքօրեայ թաղմանէն՝ այլովքն հանդերձ։

Նկարագրութիւն մեծահանդէս և խոնարհ գալստեան Փրկչին՝ իշով յԵրուսաղէմ, ընդ որ մախացեալ սխրիմ երիցանցն Հրէից՝ 'ի խորհուրդ ժողովին սպանանել զՏէրն.

Հրաւիրէ ապա 'ի Սիոն վերնատուն, ուր յաղագս ծայրագոյն խոնարհութեան երկնաւոր Վարդապետին, դքաւիչ եւ կենարար խորհրդոյն, զմատնիչ Յուդայէն և զվերջին ողջունական սրտառուչ սիրոյ բանիցն, որ առ աշակերտսն՝ երգէ զուտակալի ձայնիւ.

Իջուցանէ անտուստ 'ի պարտէզն աղօթից. ուր մահուն երկիւղիւ տագնապի Քրիստոս քրտնահար եւ 'ի յաղօթս կանխէ առանձին. առաքի բաժակաբեր Հրեշտակն 'ի Հօրէն, որ մերձեալ ահիւ՝ խրախոյս տայ և զօրացուցիչ լինի նմա 'ի դառն տագնապին։ Ինքնակամ ըմբռնումն Քրիստոսի մատնութեամբ տիրադրուժ աշակերտին։

Հանեալ 'ի պարտիզէն բերէ 'ի տուն Աննայ քահանայապետին, 'ի պատասխանելն ապտակի Տէրն 'ի դաժան 'սպասաւորէն. անճառ հեզութիւն բարերարին և ժանտաբարոյ բժշկեալ ծառային ապերախտութիւն։ Կապին Յիսուսի 'ի ձիթենւոյն ծառ և դալար ըստեղամբք հարկանիլ անխնայապէս.

Ածէ անտի ապա 'ի տուն Կայիափայ Քահանայապետին, ուր քարշի Քրիստոս կրկին յատեան եւ 'ի վկայել զինքենէ գոլ Որդի Աստուծոյ և գալ ընդ ամպս երկնից՝ պատառէ Կայիափայ զձորձ իւր և ատեանն բողոք բառնայ թէ մահապարտ է. որով հանեալ յատենէն՝ ձաղեն պէսպէս անարգանօք և կապեալ 'ի սիւն՝ գանահարուած առնեն զողջ գիշեր։ Դարձ Պետրոսի յուրացութենէն և դառնապէս արտասուելն։

Հուսկ յետոյ ածէ 'ի պալատն Պիղատոսի, ուր եկակոչ լինի Յիսուս և քննի գոլ մահու անպարտական. բողոքէ խուժանն Հրէից և 'ի հաճոյս նոցին վճռէ դատաւորն 'ի խաչ հանել զանպարտն և արձակել զպարտաւոր Բարաբբայն։

Վերջին դառն և դժուարին ձաղանք Քրիստոսի, փշով պսակիլ, նախատանաց ծիրանեաւն յաթոռ անարգանաց նստիլ՝ այլովքն հանդերձ։



# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

### ԵՐԳ ԵՐԿՐՈՐԴ

Ցնծութիւն է ինձ յաւէտ երգոյս այսմիկ ձայն թախծալի,
Է՛ջ ի բարձանց եւ եկն ինձ յայց կենդանաձիր Աստուածն յերկնից.
Ես հըրճուեալ յոյժ 'ի ձմեռս, Տէրն իմ տըրտմալի վասն իմ եւ լայ.
Մինչ կենդանութեան ըզթաղեալս 'ի վեր հանեալ ընդ սիրելեացն,
Կանգնեցայց, եւ 'ի յանձնէս լուծել փացէ զկապանս մահուան,
Յայնժամ եւ յարուցիչն տացէ հըրճուել ընդ յարուցելոյս։
Անդ ուշս զձեզ հրաւիրեմ, որք այս եղէք ինձ, մի մեկնիցիք.
Ի գերեզմանին Բեթանիա եւ գերեզման Ղազարու
Քրիստոսի բարեկամին եւ սիրելին հիւրընկալիչ.
Որ այն ինչ լուաւ ըզմահ կենդանատուն հեռաւորանէ,
Մըտերմացըն պատմելով փութայր նոքօք յԵրուսաղէմ
Մեռանել ինքնակամ, զի յարիցէ իւր սիրելին.
Իսկ որ առ մահ անձկալեալն դըժուարացեալ երկընչէին,
Խրախուսէր զնոսին 'ի նոյն քաջն Թովմաս երկուորեակն,
Օ՛ն արիք, ասէր եւ մեք ընդ նորին Վարդապետին
Երթիցուք եւ ընդ նմա մեռցուք անդէն սիրով նորին.

Քաւ լիցի զանգիտանել 'ի մահուանէն որ բաժ մարմնոյ.
Առ որ ըղձեալ Տէրըն մեր վառեալ զինեաց բանիւ խրատուն,
Զի՞ սիրեմք միայն յաշխարհիս թըշուառավայր աղէտալից.
Երկնին է մեզ դիւր վիճակ, մեռցուք, զի անդր եղիցուք ազատ։
Զձայն զայս Յիսուսին լըւեալ Մարթա ընդառաջէր,
Մինչ 'ի վէմն, որ 'ի վերայ նըստեալ հանգչէր վաստակաւորն,
Տէր, ասէր, թէ հանապազ դու 'ի տան մեր մնայիր մեզ հիւր
Չմեռանէր քոյդ բարեկամ, ո՜հ, եղբայրիկն իմ Ղազարոս.
Գիտեմ, զի կեանք ես դու եւ պարգեւիչ կենդանութեան,
Զինչ հայցես առ 'ի Հօրէդ, նա տայ քեզ փոյթ, չառնէ երես.
Որ յայս իսկ առ 'ի նմանէ ելեալ եկիր վիրով յաշխարհ,
Յարութիւն մեռեալ բնութեանս տալ քո բանիւդ կենդանարար.
Գայր անդէն եւ Մարիամ լըռիկ ապշմամբըն Մարթային,
Սիրոյին քոյրքըն երկու փարեալ զոտիւք Վարդապետին
Թափէին արտասուս եւ սըգային 'ի մահ եղբօր.
Սէրն անչափ, որ եկեալն էր ըզսուգ մերժել յիւր սիրելեացն.
Հարցանէր, ո՞ւր եդիք դիմէր գնայր 'ի գերեզման.
Լայր եւ արտասուէր եւ ցօղէին կաթիլք յաչաց.
Առ 'ի ցոյց բնութեան մարդոյն, որով ցաւէր կարեկցաբար.
Որ բանիւն իւր զօրութեան լերանց փոխիլ տայր 'ի տեղեացն.
Հրամայէր բառնալ ըզվէմն իբրեւ կարօտ ձեռին մարդկան.
Թող աչքք խըրեանց տեսցեն ըզդին մեռեալ՝ թերահաւատքն.
Առ որ բանիւ վկայէր քոյրըն Մարթա հառաչելով,
Տէր, հոտեալ է արդ մեռեալ գոլով չորեքօրեայ։
Իսկ որ հնարովն իւր անհուն էր նորոգիչ նեխեալ բնութեանս.
Մի՛, ասէր, զայդ ինձ, Մարթա, զիս լոկ անզօր կարծելով մարդ.
Թէ յուսաս հաւատալով զփառս Աստուծոյ տեսցես աչօքդ.
Գայր կանգնէր 'ի դուռն այրին կոչէր ձայնիւ կենդանատուն,
Հրամանաւն Արարչական, որ զարարածըս գոյացոյց.
Արեւելք իմ Ղազարէ, ել այտի արդ եւ եկ 'ի դուրս,
Թօթափեալ ըզմահն 'ի քէն, ձայն Յիսուսի ըզքեզ կոչէ.
Ե՛լ ողջամբ 'ի պատանէդ թող ժողովուրդն զքեզ տեսցէ,
Երանի՛ թէ հաւատայր, ազգ. անհաւան նըշան խնդրէ.
Ո՛վ ձայնիս ահարկութեան, ապրեալ դողաց սանդարամետ.

Կապեալ հոգին Ղազարու լինէր անդէն շղթայալերծ.
Եւ յանկել զբանն բանին 'ի դուրս վազէր ազատաբար.
Բարապանքըն պակուցեալ 'ի կոչողին ահեղ ձայնէն.
Զդէմ ունել ոչ կարէին միոյ ոգւոյն արձակելոյ.
Որ 'ի բարբառ Տէրունւոյն արագ դիմեալ յոյս հասանէր.
Ընդ մարմնոյն պատանելոյ զուգաւորէր զարմանապէս.
Յիսուսի կենդանաբուղխ 'ի բերանոյն նոր շունչ առեալ։
Մինչ 'ի քուն էր Ղազար, որ 'ի շիրմէն զարթնոյր յառնէր.
Այնպէս մարմնոյն ողջ պատանապատ պարաւանդեալ.
Զոր լուծանել հրամայէր, որ պատէյին ձեռօք իւրեանց,
Ազատ այնուհետեւ վազել 'ի կեանս յաւիտենից.
Յիսուսի կենսահրաւէր ձայն եւ ըզմեզ կոչեաց, մանկունք.
Որ 'ի դժոխս խորքն յայրիս թաղեալ էաք՝ ո՛հ, կենդանեաւ.
Եւ յորժամ տառապէաք 'ի մէջ գբոյն խաւարային,
Էջ առ մեզ Յիսուս փրկիչ, այցելութեամբ եհան 'ի վեր.
Եւ որ հին մեղօք նեխեալ փլցեալ էաք 'ի մեր հոգիս,
Արարագործ շնորհիւըն իւր ողջ խընկալիր զմըռսելով.
Դարձեալ ըստ առաջնոյն անապականս արար ըզմեզ։



Ընդ մանկանցն Եբրայեցւոց եկէք եւ դուք Հայոց մանկտիք,
Զօրհնութիւնս նուագելով նոր Արքային որդւոյ Դաւթի
Ի լեռնէն ձիթաստանեայց տարցուք ըզնա յԵրուսաղէմ։
Մինչ տակաւ տակաւ մօտէր օր փրկական չարչարանացն,
Անձամբն հեզութեամբ նստաւ 'ի յէշ եւ յաւանակ.

Որպէս կանխաւ ետես գուշակն եւ աւետիս Մարգարէս,
« Ուրախ լեր դուստր Սիօնի եւ պարարեալ դու զուարճացիր
Առ քեզ գայ քո Թագաւոր արդար, Փրկիչ, հեզ եւ խոնարհ.
Հեծեալ յէշ եւ յաւանակ մտեալ՝ սիրով 'ի քեզ բնակիլ »։
Այսպէս Տէրն 'ի տաճար իւր գայ յանկարծ, զոր դուք խնդրէք.
Այսպէս Հրեշտակն ուխտին զոր դուք կամիք՝ գայ առ հին ուխտն.
Նորոյ ուխտին ճշմարտութեան կնքել նոր ուխտ յԱւետարանն.
Ահա Տէր ամենակալ, ասէ Աստուած Աբրահամու.
Հաւատացէք, ով որդիք, Որդին մարդոյ գայ ձեզ Փրկիչ.
Եւ ո՞ ժամանակեցոյց ընդ յայտնութիւն Աստուածորդւոյն,
Որ զերթ հուր 'ի հալոցի հալէ մաքրէ զազգ մարդկային,
Թէ՛ Հրէից թէ հեթանոս, որ հաւատան բանից նորին։
Ընդ փառուս այս հանդարտիկ Թընդայր ողջոյն Երուսաղէմ,
Խուռնընթաց ամենեքին երագէին ընդառաջել.
Խումբ ծերոցն երթայր յառաջ 'ի յօրինակ Հրէից ազգին,
Եւ ըզկնի մանկտւոյն երամ, որ տիպ էր այն հեթանոսաց.
Իսկ ըզնովաւ 'ի բոլոր դասք հետեւակ աշակերտացն,
Ինքն 'ի մէջն Վեհ Թագաւոր, ո՛չ, ոչ 'ի կառս նըստեալ փառօք.
Կամ յերիվար սիգաձեմ ոսկեսարեան պալարակապ,
Այլ 'ի յած եւ անշուք անհամեստ էշ յուշիկաքայլ.
Որ այնու զհպարտութեան կառս Եփրեմի սատակեսցէ։
Ո՛չ 'ի ծառոց ձիթենեաց, ո՛չ յարապարթ յարմաւենեաց.
Նորընծիւղ ծաղկափըթիթ ոստըս հատեալ արագ արագ.
Բերեալ սփռէին զճանապարհաւ արքայաձեմ.
Ողջ ուղին քարուտ անբոյս ծաղկազարդէր կանաչազգեղ։
Եւ այլ ոմն զհանդերձիկըն իւր հանեալ տարածեալ սփռոյն,
Ըզգեստով տարածանէր առ 'ի պատիւ Նոր Արքային.
Որ գայր յԵրուսաղէմ, 'ի տալ հրաժեշտ հին տաճարէն,
Որ հանդերձեալ էր շինել զնոր տաճար Եկեղեցւոյ։
Տարածեցէ՛ք, ո՛ մանկտիք, եւ մեք զանձինս խոնարհութեամբ,
Զի Փրկիչըն մեր եկեալ սիրով ընդ այն անցանիցէ.
Նա՛ հեզ ոգւով եւ սրբով լիցուք նըմին կենդանի կառք.
Յոր նըստեալ հանգիցէ որպէս ասէր Եսայեա։
Ընդ ոստոց ձիթենեաց, որ ըզպտուղ բերէ լուսոյ,

Իբր 'ի ծառոց բանաւորաց սարըս հատեալ նուիրեսցուք.
Եւ փոխան գեղաշխոյժ արմաւենեացըն բարձրացեալ
Զանուշակ բերեալ պըտուղ ընծայեսցուք Յիսուսին ;
Որ ընդունի հաճոյապէս թէ սուրբ լցէ սըրտի նուէր.

Իսկ յայժամ մեծ հանդիսիւ Փրկիչն եմուտ յԵրուսաղէմ.
Քաղաքըն բովանդակ դըղըրդեցաւ 'ի սեղուշէն,
Եւ ձայն Մանկանցն բազմութեան լընոյր զօղոյն ըզհրապարակսն.
Դիեցիկ տղայոց բերանք 'ի յօրհնութիւնս բանային.
Ովսաննայ 'ի բարձունս, օրհնեալ եկեալ անուամբ Տեառն.
Ճըշգրտագոյն յայտնի ծանեաց Դաւիթ հօրանն,
Զօրհնութիւն 'ի բերանոյ դու ստընդեայց առ ընկալար.
Խանդացեալ երիցանցն եւ ասէին ըղչարբերով.
Լըսե՞ս. ով Վարդապետ, թէ զի՞նչ դոքին ասե՛ն ըզքէն.
Սաստեա զի լռեսցեն, քեզ չէ արժան երգ Արքայի։
Անցաւորն եւ հեզն առ այս պատասխանէր սիրով բանիւն.
Ձե՛զ ասեմ. թէ լռեսցեն որդիքըն ձեր յօրհնութենէն,
Քարի՞նքս այդ անզգայ ազգք անծանօթ հեթանոսաց
Խօսուն եղեալ հաւատովք՝ լեզուքըն առիս բանին երգովք։

Բացէք ո՛ն, Հայոց մանկունք, զի Տէրն առ մեր ասաց զայս բան,
Օրհնեցէ՛ք քաղցր երգով դուք զայցելուն հեթանոսաց։
Յայնժամ առ Աբգարու սուրբ արքային նախահաւատ
Այսր եկք եւ մեք Փրկչին 'ի գալըստեան հանդիսակաւք.
Հրաւիրել զՅիսուս բըժիշկն 'ի մեր աշխարհըն հեթանոս,
Զի գըլխոյն բուժել ըզբ ախտացեալ ողջ անդամոյն,
Բուժի՜չ առողջարար լիցի դեղովքըն զօրաւոր։
Աստ յայնժամ կենդանիքս, աւա՜ղ, իբրու քարինս թուեցաք,
Գոլ անշունչ ապրեղինաց երկըրպագու իբր Աստուծոյ։
Երանի՜ է մեզ այժմիկ, որ հաւատով հոգի զգեցաք
Ընդ գալըստ Աստուածորդւոյն աղաղակեմք բարձրաբարբառ.
Դաւանեալ ըղնա Մեսիայ 'նդ երգող մանկանցն Իսրայէլի։
Ո՛վ, առ մեզ փառաւորի Որդին մարդոյ որպէս ասաց,
Ծանուցեալ Ինքըն բոլոր հեթանոսաց Տէր եւ Արքայ,
Եւ անուամբն աշխարհանաց հրատարակեալ ծագէ 'ի ծագ։
Յայնժամ առ դուրս կացաք իբրեւ օտար 'ի Քրիստոսէն

Փիլիպպոսի առեալ ձեռն, նախա տեսոյք լուսոյն երես.
Ահաւասիկ ընտանեցեալ եւ կոչեցեալք հրաւիրանաւն,
Անմիջնորդ միաւեալ ընդ Տէրըն տեսանեմք, յԵրուսաղէմ.
Աչօք հաւատոյն, որով առաք մեք զերանելին։

Իսկ եւ այն ինչ հասանէք ժամ յղացելոյն ընդունելութեան,
Ամբարիշտ բանիւ ծնանել ըմթիւր խորհուրդ լապանութեան,
Որով ըստ իմաստնոյն անջատեցան 'ի յԱստուծոյ.
Ո՛հ, երկնելով պահին բանիւ նորին ճշգրտաձայն.
Որպէս մեք արդարոյն լիցուք արդեօք դարմանակալ.
Զի՞նչ յանցանս եղեալ Նորին եւ դատեսցուք ըզնա 'ի մահ.
Որ դըժպհի եղեւ մեզ եւ միշտ գործոց մեր հակառակ.
Նախատէ բանիւքն ըզմեզ թէ զօրինօք յանցանիցեմք,
Եւ 'ի դէմս մեր բերեալ զմեղս մանկութեան յանդիմանէ.
Պարծի յոյժ եւ խոստանայ ինքն Աստուծոյ ըզգիտութիւն,
Ցանձին անուանել լինել եւ կատարեալ ամենայնիւ,
Թողումք զայս եւ խրատէս. Աստուածորդի անուանէ զինքն.
Մեզ 'ի վկայ առնէ առ այս ալէս ալէս ըզգործըս իւր հրաշից,
Եւ ասէ եւ պարծի գոլ հաւասար ինքն Աստուծոյ.
Եւ ասէ Որդի մարդոյ նա եւ Որդի Հօրըն լուսոյ,
Զհանդուրժելի լսել տանել այս նորալուր հայհոյութեանց։
Ո՞չ ահա գիտեմք վեղէն ըզնա որդի աղքատ հիւսանն.
Եւ լոկ մարդ ամենայնիւ. անկար առ գործս Աստուածային.
Թէ զդիւային ելուզիս ասեմք, զայն իշխանաւ նոցին առնէ,
Ո՛չ պատրիմք զերթ խաժամուժն, գիտեմք ըզլսս ըն ճանաչել։
Զի՞նչ այս, զի առ երեխս իշխանութեամբ զմեզ կըշտամբէ.
Թող գործոց մեր արտաքին յանդիմանիչ է եւ միայն.
Քանի՞ ծանր է մեր աչաց եւ տեսանել ըզնա միանգամ,
Զի կենցաղ վարուց նորին ոչ են նման այլում կենաց,
Նորածնոյն եւ այլոց զի շաւիղըն իւր 'ի մեր գնացից։
Որ մաքուր եմք օրինօք՝ համարեցաք նըմին 'ի գարշ.
Խորշի յոյժ յընթացից մեր խոյս տայ իբրեւ 'ի պղծութեանց.
Ա՛յլ Ի՛նքն ընդ մեղաւորս եւ ընդ պոռնիկս ուտել սիրէ։
Թէ զշիրիմս մարգարէիցն 'ի շուք պատուեալ զարդարիցեմք.
Կեղծաւոր զմեզ համարի եւ կցորդ սպան հարցն ըսպանիչ.

Որ մեծ է քան զամէն՝ հրապարակեալ բանիւքն իւր,
Անդրագոյն քան զԱբրահամ տարեալ հանէ զօր լինելոյն.
Տէրն է իւր երեկածին, գոլ հին աւուրց մեծաքանէ.
Տեսցուք ուրեմըն փորձիւ զնորին բանից ըստուգութիւն,
Թէ լինի՞ն ճշգրտապէս ՚ի վախճանի կենացըն իւր.
Թըշնամանօք եւ գանիւք խոշտանգեսցուք ըզնա պէս պէս.
Եւ ՚ի հաց նորա մանրմին արկցուք ըզփայտ չարչարանաց:
Զի զչափ առցուք հեզութեանն եւ խելամուտ լիցուք բանին.
Ըզփայտէ մահու կախեալ որպէս լիցի Թող խայտառակ,
Եւ անուն եւ յիշատակ եւ կեանք նորա բարձցուք յերկրէ.
Գոյ, տեսցուք, այցելութիւն յիւր ՚ի բանիցն եւ յուստեքէ.
Թէ իցէ Ինքն արդարեւ ծնունդ եւ Որդի Հօր Աստուծոյ,
Ապաքէն պաշտպան լինի նմա ՚ի վերուստ հզօր ձեռամբ.
Թէ իջցէ այժմ ՚ի խաչէն՝ այդր եւ մեք հաւատասցուք:

Այսպէս պետք Քահանայից, այսպէս դպիրք օրինականք
Ըզբերանս եղին յերկինս եւ ըզլեզուս ածին յերկիր.
Թիւրեցան ՚ի խորհուրդս եւ ոչ ծանեան զմեծ խորհուրդն,
Որ ծանուցաւ Իսրայէլի խորհուրդ ծածկեալն բովանդակ:
Խորհուրդն էր կուսին ծընունդ Էմմանուէլ ընդ մեզ Աստուած.
Այս խոկ էր ըսքանչելիք, Բանն մարմին եղեւ եւ մարդ.
Եկն ՚ի տուն Յակովբայ, որդիք տեսին եւ ոչ ծանեան.
Քանզի խաւար հին չարին զաչօք մըտաց նոցին պատեալ,
Կուրացան չարեօք կամաց, ոչ գիտացին զխորս Աստուծոյ.
Ո՛չ եւ ըննարել կարացին զպատիւ ոգւոյն անարատի,
Կամ փորձուցըն փրկութեան ակընկալեալ ըսպասեցին:
Չ՚իմացան ոգիքըն Թիւր. զխորհուրդ փայտին անարգանաց,
Զոր փայտ կենաց ամենեցուն կոչէր հոգւովըն Սողոմոն.
Թէ զոր ինքեանք ՚ի նախատինս պատրաստեն Աստուածորդւոյն.
Ի նմա փառքըն պարծանաց Թագաւորանի անտեսաբար
Ի մահուն անարգութեան, անմահութիւն յաւերժական:

Իսկ անպարտըն Յիսուս Թիւր խորհըրդոցս չարութեան.
Տեղի տուեալ դադարէր ՚ի յԵփրայիմըն հիւրընկալ:
Յեռ առաջ երկուց աւուրց այն ինչ Պասեքըն մերձենայր.
Ի Յաղթմ. դառնայր անդրէն ուտել ըզգառըն զատկական.



Քանզի զատիկն Աստուծոյ գայր մերձենայր զոհին մեծ աւուր.
Որ 'ի խաչին տիրաէր ընծայել ըստ հին գառանց աղաւաղութեան.
Անդ զդրանդիս դրանց դրոշմէին յարեան գառանց խաչաձեւանն.
Իսկ աստ դրօշմի մեր Ճակատ, ով, Քրիստոսեան խաչի նշան.
Գոլ մեզ հնոյ եւ պահպանան 'ի մահուանէ չարին սատանայ.
Անդ զորդիսն Իսրայելի, աստ ըղհանուրն աշխարհս փրկեալ.
Եւ փարել զնշխարսն մահու եւ ընկենուլ ըզնա արտաքս,
Վաշ, ապառնեալ Յադամորդիք ըզհին Թշնամին 'նդ ոտիւք աստէն.

Առ քեզ ով Վերնատուն, լուսարն Որդւոյն լուսոյն Աստուծոյ
Առ քեզ քերեմ ըզքոյդ մանկունս, զորս դու ծնեար Սիոնի վերին.
Զարմանք, դու ասէիր, թէ ո՞ ծնաւ ինձ ըզդոսա.
Դու, գիտեմ, ամուլ էիր հազար հազար յամաց անտի.
Երկնեցեր 'ի միում աւուր անթիւ ծնեար լուսոյ որդիս.
Ուրախ լեր, դու մայր ամուլ, քեզ աւետիս տայ Եսայիս,
Տես զորդիս քո թլաւացեալ, եւ ձայնատան երամօքն.
Առ քեզ գան, մայրըդ Սիոն, յամեն ազգաց եւ աշխարհաց.
Եւ դու այսպէս ուրախամիտ որպէս ըզմայր որդւովք քերկրեալ.

Իսկ ես արդ, Սիոն վերնատուն, զերգայս ձօնեալ փոխեմ յաղագս
Յարմարեալ ընդ սրտառուչ բանից սիրոյ Վարդապետին.
Զեմ արժանի հուպ սեղանոյդ, յոր Զատկական խորհրդեալ գառն,
Յոր կենաց հաց, կենաց բաժակ, ով, Գառն էր զատիկն մատակարարի,
Տուր ինձ տեղ միայն առ դրանդ նստեալ երգեմ զհիւրդ Յիսուսեայ.

Որ ցանկ տենչայր փափագէր զվերջին Պասեք չարչարանացն.
Ուտել՝ եկեալ 'ի քեզ ընդ աշակերտացն բազմեցաւ,
Թախծալին յայն երեկուն եւ 'ի յաւուր յետին ընթրեացն.
Սէրն անման եւ անկարօտ սեղանակից լեալ սիրելեացն,
Խաչին սիրեաց ըզնոսին, քանզի յետին էր այն Զատիկն.
Առ որ չգիտեմ, ով Մանկունք, թէ յոր օրէն Աստուածորդին,
Ցանկանալով ցանկանայր, որպէս ասէր յառ աշակերտսն.
Ցօրէ՞ն, յոր ըզնոսին ընտրեալ արար իւր բարեկամս,
Թէ անդուստ 'ի մարդանալըն իւր մարմնով առ 'ի կուսէն
Ցելքն յԵգիպտոսէն յորժամ զաչխարհըն տարեւոր
Կերին անոսկրաբեկ ցուպ 'ի ձեռին Իսրայելեանքն.
Թէ յօրէն վեցերորդի երբ 'ի դրախտէն Առաջնաստեղծքն,
Պատրանօք բանսարկուին արտաքսեցան որով Քրովբէիցն.
Որով Հայրըն գըթած աստ Որդւոյն իւր միածնի..
Զի որ՝ էր առ Աստուած բանն, մարմին առցէ առ 'ի կուսէն,
Գայ յաշխարհ եւ շըրջելով ըզմոլորեալըն խնդրիցէ.
Ո՜չ, վասն այն ցանկացելոյն սխոյժ բերէր վերջին Պասեքս.
Աստ ըզխորհուրդ հաղորդութեան խորին անհաս 'ի մեր միտս,
Հաստատէր եւ աւանդէր 'ի յիշատակ իւրոյ մահուանն.
Հաց առեալ եւ օրհնէր եւ բեկանէր 'ի մասըն մասն.
Ասէր՝ Առէք եւ կերէք, ով, դուք ընտրեալ իմ աշակերտք,
Նորահրաշ այս մանանայն յերկնից իջեալ, Ես իսկ եմ այն.
Այդ է Մարմին իմ ճշմարիտ, որ խօսէի միշտ առ Հրէայս,
Որ կեանս տայ աշխարհի, որ հաւատան եւ ճաշակեն.
Աւասիկ զբանն պարզեալ ուսուցի ձեզ ըզգալապէս.
Ո՜վ, այսպէս Աստուած ընդ մարդ, մարդ ընդ Ած լինէր հաղորդ.
Այսպէս Հացն եւ հաւատոն խառնէր ըզմարդն ընդ Աստուծոյ.
Այսպէս հինն Ադամ Նոր Ադամաւ Աստուածանայր,
Մարդ մահկանացուն ընդ Աստուծոյն անմահանայր.
Աւարտէր ընթրիքըն սուրբ յառնէր Յիսուս 'ի սեղանոյն.
Ի բաց եդեալ ըզհանդերձն ըսփածանէր զիւրեւ զղենջակ,
Ջուր առեալ եւ լնոյր 'ի կոնք, յոտին այնպէս կայր 'ի սպասու.
Լուա յակմբիւս եղեալ անդէն սպաշտող դասուցն ապուշ մնային.
Զինչ այս Նոր սպաս ծառայի, զոր Տէրըն մեր տանի սիրով,

Մեք գիտեմք, մեք սովոր եմք, մեր աշխարհին չէ այս օրէնք.
Զիք տեսեալ մեր զայս երբէք, որ ընդ ոլմա ցանկ շրջեցաք,
Նոր գործ, նոր օրինակ, մեր ուսուցիչ Վարդապետին։
Մի՛ վարանիք, Տէրն ասէր, դուք աշակերտք իմ սիրեցեալք.
Զոր բանիւ անդ ուսուցի՝ զայն աստ ահա լնում արդեամբք.
Ցիշեցէ՛ք, զինչ ասացի թէ հեզ եմ ես եւ սիրտ խոնարհ։
Կարդ չէր անդ մեծագունին, այլ անխտիր պաշտէր հաւասար,
Եւ այնպէս բոլոր դասուն զոտըս լուանայր ըզտաժանեալս,
Եւ զենջակաւըն սրբէր, ո՜վ, սուրբ ձեռօքըն սրբագործ.
Որո՜վ քաջընթացիկս արար զնոսին ընդ տիեզերս,
Համարձակ գնալով ՚նդ ոտիւք կոխել զօձս եւ կարիճս.
Քարոզել զԱւետարան, զաշխարհ ամէն աշակերտել։
Ա՛յր, ո՜վ հիւրասէր Իսրայէլեան տոհմիդ քո Հայր.
Հայեա՛ց եւ տե՛ս թէ ճանաչե՞ս որ ընդ հրեշտակս քեզ հիւր եկն,
Ում ընթացար ընդառաջ եւ հանգուցեր ՚ի վրանիդ,
Ջուր ածեր եւ ընդ ծառով զոտըս լուացեր զոլացուցեալ.
Նո՛յն փոխան ՚նդ՚մին, զոտըս լուաց քոյդ զաւակաց.
Եւ զայն անդ կոչուով, կոխմամբ, որթու մըսով անզան կազմեր,
Ն՛ա ւանիկ ըզկենահրաշ մարմինն ընդ այն ետ ճաշակումն։
Գայր առ Պետրոս և նա խոյս տայր, բան առ Յիսուս բերէր ՚ի դէմս.
Տէ՛ր, ասէր, չեմ հանդուրժեր որ ոտսս լուանես քո ծառայիդ.
Ես մի ձկնորս էի նաւաստ, այլ ընտրեցեր զիս առաքեալ.
Որ ըզքեզ դաւանեցի Աստուածորդի Հօր քո ազդմամբ։
Նա եւ ՚ի լեառըն Թափոր տեսի ըզլոյսդ արտափայլեալ,
Ցորժէ ահիւ շըրթուցեալ յերկիր անկայ ես ուշագնաց։
Զի՞, ո՜վ Տէր, զի քեզ այդչափ ըզշուք անձինըդ մերկանալ.
Ո՞վ. զայսպիսդ ամենատէր ծունր կրկնեն. երկնային դասք.
Ես թողում որ խոնարհի՛ մինչեւ մարդոյն յոտս անարգ.
Դո՛ւ զայդ ինձ առներս, ում քո ծառայդ է պարտական։
Ես մի տըգէտ մարդ եմ, ո՜վ Տէր, եւ չըգիտեմ Աստուծոյ բան.
Ուսո՛, դարձեալ, ո՜վ Վարդապետ, դեռ ես չուսայ քո դասեր.
Գիտե՞ս քանի՞ դժուարին է քո բան, խորհուրդ, Աւետարան.
Բիւրաց անկիրթ Գալիլեացին միթէ կարէ՞ զայդ հասկանալ.....
Թող զիս, Տէր, եւ անց զինեւ՝ նա պաղատէր աղերսադէմ.

Այլ ուսո՛, հազար կրկնէ, որ խելամուտ լինիմ, ո՛վ Տէր։

Գիտեմ, Պետրէ, դու դեռ մինչ չեղեր բանին խորհրդակցեալ,
Թէ եկն Որդի մարդոյ՝ պաշտօն տանել անկեալ մարդոյն.
Եւ չլսեցա՞ր եւ չըզգացե՞ր 'ի կոչմանէդ մինչեւ ցայսօր,
Եւ չլինի՞ն քեզ յուշ երբեք համօրէն գործք մարդացելոյս,
Որպէ՛ս կեանս վարեցի հեզ եւ խոնարհ կերպարանօք.
Եւ չուսա՞ր իսկզբանէ Բանին կենաց նկարագիր։
Որ յերկինս էր՝ եկն յաշխարհ, յանձառ փառացըն թափելով.
Որ լոյս էր 'ի լուսոյ Հօրն՝ եկն 'ի մարմին նուաստութեան.
Եւ իբրեւ Որդի մարդոյ՝ նա շըրջեցաւ ընդ մարդիկ.
Մարդ աղքատ եւ անինչ՝ Աստուած գոլով եւ մեծատուն.
Որ եւ զաշխարհ որդւոց մարդկան, ինքն չունէր տեղի գլխոյ.
Քաղցեայ, ծարաւեցայ մարմնոյս կարեօք իբրեւ կարօտ.
Եկի առ Յովհաննէս 'ի Յորդանան մկրտիլ.
Նա հրաժարէր որպէս եւ դու, զի չգիտէր բանին խորհուրդ.
Առ ծովակին Տիբերական զձեզ ընտրեցի ինձ աշակերտ.
Գոլով Տէր եւ Վարդապետ, այլ 'ի միջի ձեր սպասաւոր.
Գիտէք, տեսէք եւ լըսեցիք՝ որպէ՛ս տարի Հրէից նախանձ.
Որպէս համբերեցի այն չարախօս բամբասողացն։
Աշխարհի բարկութեան դէմ, ես հեզութեամբ դիմադրեցի.
Բայց դեռ կայ ինձ համբերել եւ նախատիլ մինչեւ 'ի խաչ.
Է՛, Պետրէ, այս ամէն գործ ցոյց ո՞չ էին խոնարհութեան։
Հարց թէ առ ինչ եւ զի՞ այդչափ կեանս վարեցի ես խոնարհ.
Լո՛ւր մտադիւր, ես պատմեմ քեզ, դու խելամուտ լեր բանին։

Որ ըստեղծուածն էր իմ ձեռին՝ Աստուած լինել նա ցանկացաւ,
Այլ զի չարին էր հրապոյր, յոյժ խաբեցաւ ողորմելին.
Որ ակն ունէր բարձրանալ էջ 'ի դըժոխս առ հրապուրիչն.
Որ Աստուած լինել կամէր եւ Աստուծոյ աթոռակից,
Ո՜հ, զրկեցաւ թըշուառամիտն եւ 'ի դրախտէն եդեմական,
Մերժեալ ձեռակերտին իմոյ դիպաւ այս մեծ աղէտ.
Որ կամէր աստուածանալ ծառայն պըտղովըն մահաբեր,
Թող այսու ճանապարհաւ խոնարհութեան աստուածացի.
Անկելոյն տուան չարին ձեռք մի լիցի նմանիլ երբէք.
Որ ատէր եւ ժըպրհէր զաթոռն 'ի վեր դնել ընդ ամպս.

Հաւասար. իշխանականից կալ բարձրելոյն աստուածաբար.
Յայց՝ ուստ, Թափուր եկաց եւ յիւր փառացըն բարձրագոյն.
Բարկացաւ Տէրըն փառաց, որ ըզփառս իւր չըտայ այլում,
Շանթ և կայծակ Թափեց 'ի գլուխ յերկնից վարեց մինչև յանդունդ.
Եւ փոխան երկնից փառաց՝ եկաց ժառանգ տարտարոսին,
Առ խըռուժ անաստուածութեանն՝ արժանաւոր կըրեաց պատիժ:
Լեր ուրեմըն դիւրանուագ, Պետրոս, դու ինձ ամենայնիւ.
Լուսաւորեալ 'ի Հօրէն անդրիմադարձ լըսել արդ այս.
Տիրական հրամանին ծառայն սիրով հնազանդ կացեալ.
Զոտս 'ի կոնք եդեալ անհիւ՝ լուա դու ասէր, Տէր իմ, խոնարհ.
Եւ այժմ ճշմարիտ որթն, որ զհայր իւր կոչէր միշտ,
Ի ձեռն յառնայր զգինւոյ բաժակ ըմպէր սիրով զուարթ և արխուր.
Արբէք ասէր 'ի սմանէ, այս է բաժակ իմ նոր ուխտի.
Եւ արիւն իմ նուիրեալ, զոր ես հեղում 'ի մահ խաչին,
Ի փրկութիւն աշխարհի եւ մեղաւորաց մարդոյն քաւիչ.
Ով, բաժակ, բաժակ որ ըզմահու եւ ըզկենաց տաս նըշան
Ըզցնծութիւն 'ի մահ փարես, ըզմարդ մեղաւորաց Թըշուառ եղեալ.
Զես այն բաժակ հարսանեաց, որ 'ի Կանայ Գալիլեացւոց
Ուր զջուրն գինի հրաշիւք, ուրախ առնէր զհարսն եւ զփեսայն,
Տէր, միթէ չէ՞ այս բաժակ քո հարսանեաց խորհրդաւոր,
Որ ընդ հարսին Եկեղեցւոյ զքեզ պատկէ աւօք փառօք:
Զինչ յետոյ քան սրբասանուէշ բանայր. անդէն խաչապատարագաւն,
Ընդ գինւոյն սուրբ խորախնամեացն ըզարտամակաց խառնէր զամն.
Ոմն 'ի ձէնջ սատանի, ով սիրեցեալ իմ աշակերտք,
Մատնելոց է զիս 'ի մահ, ասէր զբանեալ, ո՛հ, ապերախտ.
Ընտրեալդ 'ի Թիւ ըզնա Թէպէտ գրեցի ես առաքելոց.
Ահ, 'ի դասուց հանեալ ձեր՝ խըռովի արդ սրտէ զանձն.
Երթայ մարդոյ Որդին յօժար 'ի խաչ ըստ Հօր կամացն,
Այլ եղուկ մարդոյն այնմիկ, յոյր ձեռն 'ի զուր մատնի 'ի մահ.
Լաւ էր նմա Թէ ոչ 'ի խաւար՝ չըգալ 'ի կեանս ընդ արեւալ;
Քան ծնանել մարդ աշխարհ՝ լինել մատնիչ Որդւոյ մարդոյ:
Խուճապէք 'ի սրտին ընդ այս Պետրոսն անձնանըւէր,
Առ սիրելին Յովհաննէս ակնարկեալ՝ գիտել կամէր.
Որ ըզդաստակն պատժէեալ փարէր նա ըզլանջօքն Յիսուսի,

Բոլոր հոգւով շնչով ողջակիզութեր ընդ Վարդապետին.
Տէր, ասէր, ո՞վ է մատնիչն այն ապաշնորհ եւ ապիրատ.
Ծանր մեղ եւ մի՛ թողուր, զի ուրանայցիմք անպատկառեալ.
Որ զքան մի՛ չունէր ծածուկ յիւր միտերիմ բարեկամացն.
Պատուականն թշնայելոյ՝ նըշաւակէր զմատնիչ Յուդայն.
Ե՛լ, ասէր, ո՛վ նենգաւոր, երթ եւ արա վաղվաղակի.
Դու զոր խնդրէր 'ի միտս դաւաճանել ընդ Վարդապետդ,
Եւ գայթակղեալ 'ի սրբոց յափշտակել խնդրես զագահս.
Ա՛հ, չէ՞ քեզ այն երանին, զի դու զանձանկես չար խորհրդեամբ.
Ե՛րթ աստի, մի՛ յապաղեր, քանզի պատրաստ եմ առաւել.
Ո՛չ զարմանալովդ քոյին, այլ իմ կամաւ երթալ 'ի մահ.
Ո՛վ արարին աղուեսելոյ աշակերտին անզգամացեալ.
Խոստացեալ բոլորովին զերդ ընդդարձնաց սալ անընդգարձ;
Զոր հրոյացեալ ակրոյ կամանս եհար այսպէս հեզըն Յիսուս
Ո՜հ, ո՛չինչ զգաց ժեռ քարն 'ի զեղչ զիմեղ թշուառականն.
Ա՛յլ ընդհաց Վարդապետին նըստեալ եկեր կուշտ եւ ցոփ.
Ցածանեաց խարէութիւն՝ չարին զլացեալ խնքն արդանեակ.
Անարգեաց ընդՏէրունեան կեանց մարմնոյն քաղցր ընծայեալ.
Եւ զմատաղ Նորոյ ուխտին արհամարհեալ՝ թափեաց 'ի փոր.
Ցերամէն սուրբ առանեաց եւ խառնեցաւ 'նդ ազգատեաց այծից.
Եւ որպէս այծ մի ուտագէտ 'ի լուսափայլն աննման գառանցն։
Ցաթուոյն գառնաղական զոր խոստացաւ Տէրըն գառնաց,
Կամովին գահավիժեալ 'ի վիհն անկաւ անդրընդդատոյ.
Գիշերայնին վաճառեալ ընդ արծաթոյ ընդՏէրն անգին,
Ի տարաժամ... զըրկեալ՝ կորստականին եղեւ գաւիչ.
Նուազեցան աւուրք նորին. զորմէ կանխաւ ծանեաց Դաւիթն.
Ըղձաձայնին պաշտօնէին տարաւ ընտրեալըն Մատաթիա.
Որովայն նա զանէծս եւ եւ յիւր գլուխ վաղվաղակի,
Զոգաւ նա յուսաբեկ չուան 'ի կախ ձգեաց 'ի ծառն.
Կախեցաւ. խեղդեցաւ եւ կործանեալ պատառ ընկենու.
Արեան եհար 'ի վերուստ, եկաց 'ի մէջ իւր Արարչին.
Եւ այնպէս ուռուցեալ հերձաւ հեղաւ փորըն իւր պարչ.
Թէպէտ գնոյ առ. Քահանայս առեալ տարաւ զերառն արծաթն.
Աստ՝ առէք. են մեղայ, զի մատնեցի զարիւն արդար.

Խիղճ իմ ներքուստ հուր վառի՝ այրէ մրկէ զիս չարաչար.
Ո՜հ, վիրաւոր երթամ ես, բառնալ զկեանս իմ յերկրէ.
Զոլինի որ երբեմն եւ տատանիմ որպէս կայծն.
Եւ չիք ոք ինձ Դամէք, որ ըսպանցէ զիս նետահար ։
Կորընչիմ, կործնչիմ, պատառիր երկիր, առ զիս 'ի ներքս.
Անցնիմ 'ի խոր անդունդ՝ հանգչիմ 'ի գոգ Սատանին.
Եւ անուն եւ յիշատակ թող կորիցէ իմ յաշխարհէն.
Զի Յիսուս ջնջեց զանունս, որ կայր 'ի թիւս աշակերտացն,
Զլորեցայ 'ի լուսոյն եւ 'ի դասէ ընտրեալ գընդին.
Արդ պաշտօնեայ լինիմ դիւաց եւ խաւարին իշխանութեան,
Տէրն աթոռ ինձ խոստացաւ որ բազմէի ընդ մետասանս.
Թողի ըզՏէրն եւ զաթոռ ընդ սատանայ կռեցի զաշն.
Եւ զի՞նչ եղեւ պատճառ հիքոյս իմ կորըստեան,
Ո՜հ, անյագեալ ագահութիւն, երեսուն արծաթ, երեսուն արծաթ.
Այլ զի՞ օգուտ եմ կորստեան, ասաց Տէրն, պարտ էր գոյն չծնանիլ։
Մի՛ շինէք ինձ գերեզման եւ մի՛ գրէք արձանագիր.
Որ մարդիկ անցնելին զինեւ՝ կարդան անէծք եւ ասեն,
« Այս է տապան ապիրատին, մատնիչ ագահ Յուդայի ».
Այսպէս մեռանէր յոյսն 'ի սրտին՝ եւ ոչ եղաց նա դառնապէս.
Չկամեցաւ նա օրհնութիւն, հեռի եղեւ 'ի նըմանէ.

Իսկ իբրեւ յիւր ընկերաց տարամերժէր զողջն մանկունս,
Զի՛ մանկունք, այնուհետեւ Տէրըն բանիւ ուսուցեալ,
Խօսէր ըզխրատ վերջին կըտակն առ մտերիմն.
Զերթ ուղեւոր հեռագնաց տայր հրաժեշտի զողջոյն վերջին.
Որդեակք, սիրելիք եւ մերձաւորք իմ բարեկամք,
Այսօր 'ի ձէնջ հեռանամ, մնաց ինձ ահա փոքրիկ մի ժամ.
Յերկնից առ 'ի Հօրէն եկեալ եկի սիրով յաշխարհ.
Զյանձնեալ ինձ տընտեսութիւն կատարեցի ըստ Հօր կամացն.
Յայտնեցի զանուն նորին, քարոզեցի զԱւետարան,
Թէ նա՛ է միայն Հայր մեր յերկինս, Աստուած եւ Տէր տիեզերաց.
Պա՛րտ է հոգւով ճշմարտութեան նմա միայնոյ երկրպագել.
Մնայ ինձ սակայն 'ի լրումն ածել զխորհուրդ խաչին չարչարանաց.
Զի՛ ժամն իմ փրկանք լիցի հանուր մարդկանց ազատութեան,
Զի մեռցի մահըն կենաց, որպէսզի անկցի մահու իշխանն.

Եւ յայնժամ թողում զաշխարհ, յաղթանակաւ երթամ առ Հայր.
Ցուցով աներկմիտ յԱստուած եւ յիս հաւատացէք.
Ո՛չ թողում զորդեակսդ որբս, եւ արդ զձեզ Հօրն իմ յանձնեմ.
Ես երթամ ձեզ օթեւանս պատրաստել 'ի տան Հօրն.
Գամ դարձեալ առնում ընդ ձեզ տանիմ երկնից յարքայութիւն.
Ուր 'ի սեղան լի բարեաց՝ նստեալ ընդ իս խրախանայցէք,
Եւ այլ եւս ոչ ոք 'ի ձէնջ կարէ հանել ձեր խնդութիւն.
Այն է վարձ եւ փոխարէն ձեզ մշտակայդ աշխատախոնջ.
Որ զհետ իմ առեալ ըզխաչն դուք հետեւիք յօժարակամ.
Որ թողիք զինչս եւ զտուն, հայր, մայր, եղբայր եւ սիրելիս.
Որ միայն զիս պաշտեցիք իբրեւ զՏէր եւ Ուսուցիչ։



Նոր պատուիրան աւանդեմ, զոր ես գործով ուսուցի ձեզ.
Եւ դուք ըզնոյն որդեակք իմ, փոյթ լինիջիք առնել միմեանց.
Սիրեցէք սիրեցէք, այդ է միակ ձեր նշանակ,
Որ մարդիկ զձեզ ճանաչեն թէ աշակերտ էք Յիսուսին։
Անկըշիռ սիրոյս առ ձեզ հասու եղէք եւ խելամուտ,
Ըսկսեալ 'ի ծովակէն, ուր ձուկ որսալ վաստակէիք.
Եւ գիտէք քանի՞ բարձր է սիրոյ խորհուրդ եւ մեծութիւն.
Սիրով դընեմ զանձն իմ 'ի մահ, վասն սիրոյ բարեկամաց,
Վասն աշխարհի, վասն նոցա, որ ձեր քանիւ յիս հաւատան.
Դուք հրաւիրակ երթայք հարսին, որ հանդերձի պըճնիլ 'ի զարդ.
Իսկ ձեր զարդն է խաչն եւ արիւն՝ վասն հարսին դնել զանձն 'ի մահ։

Համբառնալն իմ՝ հրճուի պայծառ, զի իւր փառքն է խաչին պսակ։
Հեզիկ բարս ըստացարուք աղքատ ոգւով խոնարհութեան,
Որպէս օրինակ նոյնատիպ՝ ցուցաւ յինէն եւ տեսիք դուք.
Քանզի չէք մեծ քան ըզՏէրս, այլ հաւասար ծառայակիցք.
Զի՛ք 'ի ձեզ իշխանական երիցութիւն ըստ աշխարհաց.
Որ 'ի ձէնջ մեծ համարի՝ լիցի կրտսեր եւ նուաստ.
Բազմերախտ իբրու զծառայ, պաշտօն յօտին առ սեղանով.
Զայս քաղցրիկ տեսիք աչօք, թէ զի սպասիւ եմ անհրապարտ,
Ի միջի ձեր երեւեցայ, մինթէ գրեցի անձինս ամօթ.
Երանի՛ է ձեզ յաւէտ, յորժամ հանգոյն Վարդապետիս.
Մրտադիւր ծառայիցէք եւ դուք ընտրեալ իմ աշակերտք.
Ուսարուք՝ թէ զինչ է Բանն, որ զանձն իւր խոնարհ առնէ.
Բարձրանայ մինչեւ յերկինս, եւ հասանի յաթոռըն Հօր։
Եւ թէ սոա անձանց ըզշուք ոչ խնդրելով խոնարհ լիջիք,
Անդ յերկինս եօթընպատիկ ձեզ յաւելուն փառաց պսակք։
Մի՛, մանկունք առագաստի, յորժամ փոքր ինչ մեկնի փեսայն,
Կարծիցէք թէ առ 'ի ձէնջ կամիմ իսպառ ես վերանալ.
Ուստի սուգ առեալ վասն իմ վարանեսջիք յանձինըս ձեր.
Քանզի դարձեալ երեւիմ յետ յառնելոյն իմոյ փառօք,
Յառաջեալ 'ի Գալիլեա, զիս տեսանէք փառաւորեալ,
Զարմանայք եւ ասիցէք, արդեօք Տէ՞րն է այն որ մեռաւ,
Ըզհանդերձ սրգոյ հանեալ՝ դուք ըզգեցջիք զուրախութեանն,
Դուք յայնժամ թողեալ ըզսուգ լըցջիք համակ ուրախութեամբ։
Ցրնծայցէք՝ զի ոչ ոք եւս կողոպտելով հանցէ 'ի ձէնջ։
Մի՛ յորժամ չար մըշակք այգւոյն իմոյ խորտակեսցեն,
Զհայրաքուն եւ սիրատունկ որթըս իմ կրել խնդրեն մահուամբ.
Ո՛հ, խռիցիք եւ դուք ուռքդ 'ի հաւատոյըն թուլացեալք։
Հաստատուն կացէք յիս, մինչ ես թաղմամբ երեքօրեայ.
Խորարմատ կանգնեցեալ՝ զհողմով մահու խաղ առնիցեմ.
Եւ իբրեւ 'ի գարնայնի վերընձիւղեալ նոր յարութեամբս.
Եւ դուք ուռքդ նորոգիք եւ կանաչիք նոր հաւատով.
Պարզիք յինէն ուռձացեալ, 'ի սփիւռ աշխարհըս տարածիք։
Ո՞չ յայնժամ շնորհիւ որթոյս պըտուղ բերջիք բազմապատիկ.
Մի՛, որպէս 'ի խելս նաւուն երբ նըմջէի վայրիկ մի,

Ծովն աշխարհի զձեզ խռովէ, ո՛հ, կորընչիմք, ձայն բառնայք.
Ես 'ի սիրտ երկրի 'նընջեմ, մայրիկ կարծեն թէ մեռայ.
Այլ անդրէն պարթնում 'ի քնոյ, որպէս հըզօր թափէ զգինին.
Եւ յառնեմ ես յինքնազօր, քանզի ազատ եմ 'ի մեռեալս.
Խաղաղի ծովն ալէկոծ, անցանի սուգ եւ փաչին օր.
Սիրտ տուեալ քաջալերիք ձեզ աւետիս առ իմ հրեշտակն։
Ո՛ն արիք աստի ելցուք, գընամք 'ի ձորն Գեթսեմանի.
Ես աղօթեմ 'ի պարտիզին եւ դուք 'նընջեցէք ծանր 'ի քուն.
Ո՛չ, կայցէք արթուն հըսկեցէք, որ չանկանիք 'ի փորձութիւն.
Սուրն ահա կամօքն Հօր փայլատակեալ շողայ վերուստ.
Եւ հասեալ է ժամ հարկանել զհովիւըս ձեր ըստ գուշակին.
Ո՛հ, ոչխարք իմ սիրասուն ցրուիք յինէն եւ թաքչիք.
Թողանիմ ես միայնակ մատնիլ 'ի ձեռս ազգին ժըպիրհ.
Դուք եւս ելէք, ո՛ Մանկունք գառինք ծընեալ նոր Սիովնի.
Հովուասէր հօտին՝ հանգոյն իջեալ գնասցուք ըզկնի Հովուին,
Անդ 'ի պարտէզն աղօթից 'ի ձորըն խոր Գեթսեմանի.
Ուրանօր 'ի սիրելի աշակերտացըն մենացեալ,
Ո՛վ, ընդ մեր. ըստէպ ըստէպ ծունըր կըրկնէր 'ի խոնարհ.
Տըրտում էր, հոգայր 'ի ժամն եւ մըտադիւր կայր յաղօթս.
Ժամն էր այն, յոր կամաւ եկն, 'ի կատարել զՀօրըն վըճիռ։
Տագնապէր մարդապէս 'ի մահուանէն հասեալ առ դուրս,
Եւ հոսէին յորդ քրտունք եւ խառնէին ընդ արտասուս,
Եւ կաթէին ոլոռն ոլոռն 'ի հող երկրին՝ անիծապարտ.
Ընդ անիծիցն օրհնէր ըզհողն եւ փուշ երկրին դառնայր վարդ։
Ո՞ կարէր ժուժել, Մանկունք, այն ուժգնակի ձայնին ողբոց,
Որով գոչէր 'ի յերկինս մեծապաղատ առ Հայրըն իւր.
Հայր, ո՛ւր ես այժմիկ, լըւեա արդեօք 'ի վերուստ.
Հայեաս այսր գթոյդ աչօք 'ի տնանկ որդիդ վտարակեալ.
Որ 'ի ծոցոյդ քաղցրութեան եւ 'ի բարձու երկնից գահէդ.
Խոնարհեալ եւ ծառային մեր Ադամայ զգեցայ մարմին.
Արդ ափշիմ եւ պաշարիմ ես 'ի մահուն տագնապէ.
Յորդորի հոգիս ներքուստ. յօժարէ յոյժ դիմել 'ի խաչ.
Խուսափի բնութիւն մարմնոյս անկար է, Հայր, չկարէ ժուժել։
Ակն յիս դարձո՛ այսի, զի միամօր աղքատ եմ ես.

Ի տագնապս անձկութեանց եւ 'ի վըշտաց առաւել հան զիս.
Եկն ահա 'ի վերայ իմ, հաս. եւ պատեաց զողումն եւ ահ,
Տա՛յր \ ինձ ոք զթեւս աղաւնոյ, զի թռուչէի մերանայի,
Ցանապատ երկնից ելեալ՝ յանքոյթ ծոցիդ դադարէի.
Մի՛ լինիր յինէն 'ի բաց, ահա մերձին յիս նեղութիւնք.
Լե՛ր սատար, եւ զօրավիգ, զի պղծեմ կալայց անոյժ մարմնովս.
Վասն որոյ լուր դու ձայնի նեղեալ Որդւոյդ, որ պաղատիմ.
Զբաժակ մի խնդրեմ 'ի քէն, Հայր, եւ աղաչեմ խոնարհելով.
Թէ հնա՛ր է եւ քեզ հաճոյ, անցցէ յինէն զաւան այս բաժակ.
Այլ մի՛ երբէք լիցի այս որպէս կամիմ ես մարդկաբար.
Հապա քոյդ եղիցին կամք, առ որ հնազանդ եմ մահու չափ:



Այս բարբառ աղօթանուէր լսիւր յերկինս առ լուսութեանն.
Սուրանդեալ պատգամաբեր հրեշտակն Հօր գայր առ Որդին.
Բաժակն մահաշրուներ դառնաճաշակ իւր 'ի ձեռին.
Տխուր էր զուարթնոյն երես, մնալ 'ի Տէրըն վարանէր.
Եւ հուպ կացեալ սարսելով՝ հնազանդելոյն մատուցանէր:
Այս հրաման է Հօրդ, ասէր, զի պայդ արբցես ախորժապէս,
Առ զորին եկիր, ով Տէր, կամաւդ 'ի ժամն անձկութեան:
Ես կարօտ քո զօրութեան, Հայր քո յղեց զիս առ քեզ.
Գոլ այժմիկ զօրացուցիչ խոնարհելոյդ մարմնով քան զիս.
Որ մերձին յանձկութենէդ, ահ, զի՞ քրտունք արիւնախառն
Ցերեւացընդ վիժելով կայլակահոս թափին 'ի վայր:

Մի՛ այդչափ տագնապեր, Տէր, հանգոյն դու կնոջ որ յերկունս կայ,
Անցանէ ժամդ առ 'ի քէն եւ գայ քեզ օր ցընծութեան.
Երբ հարսըն քո անարատ ծընցի զողջ ազգ մի փեսայիդ՝։
Նոր զարմանք, զօրք լուսաձիր, յերկնուստ այսր ակնարկեցէք.
Աքանչացէ՛ք ընդ այս բան, որ չգիտեն երկնային դասք.
Զի՞նչ կայ, որ 'ի ծնանել ամուլ հարսին ըղձոր մանկունս
Փեսային իւր անձկալի կայ աւանիկ կրել զերկունս։
Խորհուրդ է այս Թագնութեան ծածկեալ յերկինս 'ի հրեշտակաց.
Ո՛վ, յերկրի, մարդկան ազին յայտնեալ միայն ծածկապէս.
Գիտէր զայս եւ մեզ չասաց հրեշտակապետըն Գաբրիէլ.
Զօրացի՛ր ուրեմըն դու մատակարար մեծ խորհրդոյս.
Աւ 'ի սէր հարսին քոյոյ դու մի՛ խնայեր զանձըդ 'ի մահ,
Տալ զայդ երկանց երաշխէպ, զի դիւր ծնցի նոր քո Աթոռ.
Գիտեմ ո՜վ Տէր, քո պատերազմ աշխարհի պէս չէ երբէք.
Աշխարհ կռուի ընդ աշխարհ եւ մեռուցեալ յաղթանակէ.
Իսկ դու ակար մարմնով կռուիս, ոչ ձի ունիս ոչ զէն ասպար.
Քո մարտ չէ ընդ մարդիկ, այլ ընդ իշխանն աշխարհիս այս։
Ո՜վ, մեռանիս խաչի մահուամբ, կենդանանան մեռեալ հոգիք.
Հայրն ասաց, ասա Որդւոյս, ես չեմ թողուր զինքն 'ի դժոխս,
Զձեռն իմ պարզեմ յԵրկնից յանդունդ, կորզեմ հանեմ
'ի ձկան փորէն.

Եւ չթողում վիշապ օձին, որ կլանիցէ զնորն իմ Յովնան։
Դանիէլի գուբն է նիքն, զոր վիշապին ձգեցի բերան.
Նա թէ կուլ տայ պայթի պիտի, գունդըն ողջամբ գայ 'ի դուրս.
Յետ երից աւուրց ապա ես խորտակեմ լըգերեզմանն,
Յառնէ Մանուկն իմ հզօր փառաւորեալ յարութեամբ։
Վա՜չ, յայնժամ նա 'ի վիմին զփող հարկանեմ քոյդ յաղթութեան.
Որ խնդրեն զքեզ 'ի մեռեալս, ասա՛ աւետիս, յարեա՜ւ Յիսուս.
Զայս խրախոյս տուեալ զուարթնոյն անդէն 'ի վեր երթայր առ Հայր.
Կամակար յանձնառութիւն հնազանդ Որդւոյն՝ մատուցանէր.
Ասաց Որդեակն քո, Հա՛յր, յօժար ըմպեմ զխաչին բաժակ.
Թող լիցին կամք Հօրն իմոյ, ես Որդի իմ եւ նա Հայր.
Խոնարհեալ, ո՜վ Մանկունք, համբուրեսցուք զպարանոցն Հօրն,
Ուր իջին քերոբեանց կաթիլք եւ հեծեծանք եկին 'ի վեր.

Ուր եկեալ մշակ խաչին զփուշս անխծից խլել 'ի բաց.
Տընկել ջրել եւ պատրաստել զնոր դրախտն Եկեղեցւոյ.
Աղօթիւքըն սրբատաց զՀայրն ընդ աշխարհ հաշտ առնել.
Վերստին հնոյն Ադամայ փակեալ դրախտին դուռըն բանալ.
Ասել ցԱդամ եւ ցԵւայ մտէք 'ի ներքըս համարձակ.
Վազեցէք 'ի կենաց ծառն, Որովհետեւ սուր չէ ձեզ արգել.
Արդ ձգեցէք զձեռս ձեր ազատ զանմահ պտուղըն քաղեցէք.
Եւ կերէք, անմահացէք, այսպէս լինիք դուք Աստուած.

Այս, գիտեմ, Տէր, քո սիրոյդ անհասական բան է եւ գործ.
Այլ 'ի կերպըն հայելով՝ տարբերի մարդոյն միտք.
Որ ասէիր՝ թէ Հայր յիս է եւ ես 'ի Հայր անբաժան,
Հիմ ապա 'ի միայնոյ Հօրէդ թողեալ անօգնական.
Միայնակ, կրեցեր կամաւդ զայնչափ տագնապ անտար ու ցաւոց,
Գիտեմ, Տէր, հնոյն Ադամայ որդիացեալդ միայնակ.
Դու յանձն առեր ըզպարտըս Հօր գալ վճարել միայնակ.
Ըզդըժնդակ մահու վճիռ զոր դատաւոր Հայր քո կնքեաց.
Զայն միայնակ լուծել քակել զմարդ վերածել 'ի նոր կեանս.
Տէր, վասն այն դու փութայեր եկիր յայս ժամ միայնակ.



Այլ ո՞վ Տէր, մարդ զարմանայ ընդ քո ուխն սիրոյդ ներդող.
Որ լալով աղօթէիր վասըն մարդկան ապաշնորհ.
Յայն գիշեր խաւարակուռ քեզ դաւ դրին ոգիք խաւար,
Հասին յանկարծ 'ի վերայ քո, որց առաջնորդ էր Յուդան.

Անձնատուր եղեր ո՜վ Լոյս, մարդիկ ըզՔեզ ըմբռնեցին.
Հրաշալեօք չմնացեր գնացիր, որպէս լերինըն յարտեւան.
Դու միամիտ աղաւնի, հըսկեալ յաղօթըս մընջէիր.
Չըկացեր հակառ դու չարին, եւ վարեցար տարապարհակ.
Եւ մինչեւ ո՞ւր վարեցար, մինչեւ յատեան դատաւորաց։
Հուսկ ապա ըերըմ գլխապարտ գնացեր մինչեւ կառափնատեղ.
Միայնակ մնացեր, Յիսուս, ո՞ւր աշակերտք եւ բարեկամք.
Փախեա՜ն, որպէս նապաստակք, զլէմս տուին ապաստան.
Միայն Պետրոս անձնադիր, եւ սիրելի աշկերտն Յօհան.
Երթային զկնի ըանխուլ՝ տեսանել զելիցն ըղձախնձան.



Ընդ Քրիստոսի կապելոյն, Մանկունք, եւ դուք սիրով կապեալ.
Երթիցուք ընդ նըմա 'ի տուն Աննա քահանային,
Ուր այն ինչ նըսեմացեալքն տա 'ի լուսոյն ճըշմարտութեան.
Նըստէին դատաւոր քննել դատել զազգն Իսրայէլ.
Որ եկեալ էր հատանել զկապանս մարդոյն մահապարտ.
Ո՜հ, ձեռնակապ ըզՏէրն անպարտ ածին յատեան Աննային.
Որ յաթոռըն Մովսիսի նըստեալ էր նա դատել ըզՏէրն։
Այսր ահա 'ի հարցանելն եւ պատասխան տալ Յիսուսին.
Զարաշուք ծառայն մինդէն, որ հուպ կայեալ էր հեզոյն.
Ապտակ ածէր սաստկահար, ո՜վ ահաւոր սուրբ երեսացն.
Ա՛ծ յայնժամ ժանտաբարոյն, իմ՝ արդ ոսկայ սիրտ ահիւ.
Մինչ հայիմ՝ 'ի հեզութիւն ապտակելոյդ վասն իմ, ո՜վ Տէր.

Մեռանէր տեսողն անդէն, աստ ապտակ եւս առեր յերեսս.
Ո՛չ յանկարծ ընդոստուցեալ՝ դու խըստացար, ով քաղցրութիւն,
Եւ ներող բնութեամբդ քո թողեր զծառայն անպատուհաս։
Տեսէք աստ Բարերարին զերկայնամիտ համբերութիւն։
Տեսէք եւ ապաշնորհ բըժըշկելոյն ըղհատուցումն։
Ծառայ չար եւ ապիրատ, զի՞ մոռացար վաղ ըզպատուէրն.
Ե՛րթ, բուժեալդ այդմիկ, մի՛ մեղանչեր այսուհետեւ։
Եղուկ քեզ, բարուք լուար ըշնորհման քոյոյ Բարերարիդ,
Ո՛չ ի մարգ, այլ ի յԱստուած դու մեղանչել ժըպրհեցար։
Որ զլուծեալ բազկիդ ըզջիղս հաստեաց անդրէն ի շարժումն
Ո՛հ, միթէ ապտակ ածել քեզ երեսացն կեցուցիչ.
Գիտեմ՝ անբոյժ լինել ախտացելոյդ հոգւով ի չարն
Զի՞նչ օգուտ մարմնոյդ դարման, քանզի հոգիդ էր վարակեալ.
Լաւ էր քեզ թէ անյարիր մնայիր այնպէս մարմնովդ ծընկեալ.
Գէթ յերկար ապաշաւանս մաշեալ մարմնովդ զմեղսդ քաւէիր,
Քան յոտին ելեալ առողջ ծառայ եղեր դու անըզգամ։
Մի՞ կարծեր թէ անպարտս բերեր հեզոյն ապտակելովդ.
Դու նախկին ձեռներէց ի մէջ գընդին տիրասպանու.
Այլ յաւէտ պատիւ եդուր եւ ծանուցեր զչափ հեզութեանն.



Զապտակէն թողեալ արդ՝ զմեծն տեսցիս ըղհարուածոյն,
Զկապիլն առասանաւ ի ձիթենւոյ ծառն ըզՅիսուս.
Որ ի շուրջ բոլորելով զինուորաց դասքըն դըժընդակ։

Ըստէպ ըստէպ սաստկագոյն հարկանէին դալար ստեղանք։
Ցա՛ւ ըղձայր ընդ Արարչին ծառն անխօսուն անզգայ.
Կապելոյն Յիսուսի լինէր վըկայ հրաշապէս.
Զի պատառեալ ըղծոցն բանայր եւ պարուրէր զհարուածեալն,
Ոյր փոխան լեալ ըզգայուն, ծառն արբ ըզգան յանըզգայից.
Զայս պատմէն եւ գրեն՝ աւանդութեամբ հասեալ առ մեզ,
Զարմանամ, ո՛չ 'ի մահուն պատառեցան վէմք եւ վարագոյր.
Ընդ եղին եւ խշոյ ծառն եւ ծանեաւ զիւր ըստացիչն,
Եւ 'ի ձեռս ծերոց, մանկանց օրհնաբանեաց ըզնա ոստովքն.
Եղո՛ւկ քեզ, ո՛վ Իսրայէլ, դու ո՛չ ծանեար զՏէր Աստուած.
Ո՛ր ստացաւ զքեզ ժողովուրդ իւր սեպհական եւ սիրելի.
Հան յերկրէն գերութեան, ած Աւետեաց յազատավայր.
Ցօղեա՛ց գինւով, իւղով, կաթով, մեղրով լիացար,
Դու այնչափ պարարտացար, մինչ լայնեցեր զքո անկողին,
Զա՛յս Բարերարին դու հատուցեր ըզփոխարէնն.
Պարգեւօք նորա ձեռին տանջեալ ըզքո պարգեւատուն.
Կացցէ՛ ծառն քեզ դատաւոր եւ ընդ ազգին Նինուէացւոց.
Ի կըրկին ատեան եկայք որք եւ 'ի տուն Կայիափայ.
Ուր ժողովեալ խորհէին իշխանք Հրէից վասն Օծելոյն.
Շրջընչեալ 'ի լուր միմեանց բան անօրէն ըղնըլմանէ.
Զանմեղն ածին կառաջեաւ իբրեւ ըզԳառն 'ի մէջ գայլոց.
Որ ըզժամնիս յուրեանց վաղուց՝ սրբեալ էին նենգութեամբ.
Զի՛ արգեօք մահու դատեալ՝ պատառեսցեն զգառն Աստուծոյ.
Հարցանէր Կայիափայ զբան, որ լուեալ էր բերան անգամ.
Եւ դարձեալ զնոյն պատասխանի լսէր սատէն 'ի Յիսուսէն.
Որդի լինել Աստուծոյ եւ գալ յերկնից փառօք ընդ ամպս։
Ընդ լսել չըրանդոյր ատեան, ձորձ պատառէր Կայիափա,
Զեն, ասէր, պիտոյ վըկայ արդ մեզ այլուստ 'ի մարդկանէ.
Լուայք աշա եւ գառնեսցուք իւր բերանով, դուք զի՞ կամիք.
Մահապարտ մահապարտ, լեզուք հասայն գոչեցին.
Սիրտ իմ գելու ստահոր եւ ջախջախի քնար ոգւոյս.
Ձեռք իմ 'ի դող հարկանին եւ դադարի գրիչն 'ի գիր.
Զի՞ կարեմ ես նկարել բըձաղանացըն տեսարան.
Ցոր Փրկիչն անպարտութեան Թառ եղեւ 'ի խուժանին։

Որ արդար զիս կացուցեալ՝ զվրէժն իմ առնոյր յանարգողացն։
Ո՞ւր էր Պետրոս մինչ Տէրըն իւր կայր 'ի ձաղանս կապեալ 'ի սիւն,
Անդ 'ի գաւիթ առ խարոյկաւ նըստեալ ջեռնոյր, ցուրտ էր օրն.
Մօտէր առ նա աղջիկ մի՝ զվէմըն շարժէր ոըկար մատամբ.
Պետրոս հարցեալ լինէր երիցս, նա ուրանայր եւ ասէր.
Ես մի ձկնորս եմ անծանօթ, մարդ ռամկական Գալիլիացի..
Առ ծովուն Տիբերական ճգնիմ միայն ըղձայն իմ ճարել.
Անուս անգիր ո՛հ եմ ես, զի՞ փոյթ ինձ այդ կըրօնի խնդիր.
Ո՛չ, ոչ գիտեմ, ոչ ճանաչեմ, ով է Յիսուս Նազովրեցին։
Այսպէս երբ Թողաւ զմարդ՝ մատն Աստուծոյ գըրի մարդ։
Ձայն հաւուն խօսէր անդէն, ձայն արկանէր առ Պետրոս,
Արի՛ սթափիր դու 'ի քնոյդ առ երկիւղի՝ Թըմրեալ այդպէս.
Զարթի՛ր 'ի սէր սիրելւոյդ, դարձիր նայեաց 'ի Վարդապետն.
Իմ ահա խօսեալ երիցս՝ եղէ վըկայ նորա բանին։
Ընդ հաւո՛ւն եւ ինքըն Տէր, ա՛հ, մոռացեալ զձաղանաց վիշտն,
Դարձաւ հայեցաւ, զաչս 'ի Պետրոս յառեաց ողորմ.
Լուաւ եւ եթ ակնարկելով աչօք լեզուին խօսէր անձայն.
Զի՞ այդ քեզ, պարծող Պետրէ, ո՞ւր այն քո բան մեծաբանիդ.
Թէ արդէն իսկ եդից զանձն իմ 'ի վերայ քո, մինչ 'ի մահ.
Վէմ էիր անխախտելի, այդպէս փութո՞վ տատանեցար.
Որ ցանկ ընդ իս շըրջեցար զամիս երիս մըտերմաբար։
Հայրն իմ ազդեաց, դու ծանեար զիս, Աստուածորդի դաւանեցեր,
Եւ դո՛ւ այժմ ուրանա՞ս ըզՎարդապետն եւ Ուսուցիչդ.
Զքեզ վէմ եդի անշարժ, ո՛հ, գըլորիս գնաս առ Յուդա՛.
Այլ ես Հօրն աղերս ածի, որ չպակասին քո հաւատք.
Դարձի՛ր օն եւ հաստատեաց, մի՛ սասանիր ուժգին այդչափ։
Զի՞նչ անդէն, հո՞ւր էր Թէ լոյս ցայտեց յաչացըն Յիսուսի,
Ծոլաց մըտաւ, 'ի սիրտ Պետրոսի, հրավառեցաւ ցուրտ ոգին.
Եւ լուցանէր նոր ըզսիրոյ ջահըն շիջեալ ուրացութեամբ։
Յուշ ած Պետրոս, յիշեաց ըզբանն, չկարեց մընալ եւս անդէն,
Ել արտաքս վազվազակի, ասեն մըտաւ 'ի մի քարայր,
Ելա՛ց ելա՛ց դառնապէս, դառնապէս եւ ուժգնապէս։
Աւետարան միայն ասէ դառնապէս, եւ ո՞ չափէ զդառնապէսն.
Դաւիթ Թանայր ըզանկողին, իսկ նա զյատակ այրին բոլոր.

Այսպէս նա լուաց քաւեց ըզմեղըս մեծ ուրացութեանն,
Ո՞ ժրաք ճառել բանիւ ըզՊետրոսին դարձն եւ զղջումն։
Տէր, եւ ինձ տուր արտասուս եւ ես լացից դառնապէս.
Մինթէ արտասունք, լաց ու ողբ՝ չէ՞ քո շնորհ առ մեղաւորսն։
Եկէք, մանկունք, տարան զՑիսուս, երթամք յատեան Պիղատոսին,
Ուր ընդ այգուն եղելոյ, ածաւ, տանէն Կայիափայ.
Տեսցուք թէ զինչ եւ անդէն կրեաց կամաւ Տէրըն մեր։
Որ առէր իշխանաբար 'ի դատաստան եկի յաշխարհ.
Ա՜հ, կապեալ մարդոյն ձեռօք եկաց հանդէպ դատաւորին։
Ցիսուս Աստուածորդի դու ասիրաս ինչ ոչ գործեր.
Կամ իբրեւ մարդ նենգաւոր՝ նիւթեր ուժեք չարութիւն,
Կամ աշխարհի իշխանութեան՝ դու հակառակ կացեր երբէք.
Դատեցար եկակոչ, աւա՜ղ, զօրէն մահապարտի։
Իշխա՛ն եւ դատաւոր հանուրց ծնընդոց Ադամային,
Եդար առ 'ի Հօրէն 'ի յերկրորդն քոյդ գալըստեան.
Դու ասէիր Հայր իմ ետ ինձ իշխանութիւն եւ դատաստան.
Նա ո՛չ դատի զոք երբէք, այլ 'ի ձեռս իմ ետ զամենայն.
Բա՜րէ, մարդն զքեզ դատեց՝ եւ դու եղեր դատափետեալ։
Եւ խոնարհ կալեալ ըզգլուխդ, ո՜վ հեզութիւն անբարբառ,
Ոչ բան, ոչ պատասխան, այնպէս մնայցեր անմռունչ գառն.
Հա՞յրն ասաց քեզ թէ մի՛ խօսեր, որ դատաստանդ համառօտի։
Զարմացմա՛ն դատաւորն ընդ քո շըրթանցդ անշարժութիւն.
Ո՛վ, Արարիչդ անխօս եղեր որպէս ըզխուլ որ չըլսէ.
Որ յօրիներ ըզբերան՝ խօսուն 'ի նմա եդեր զլեզուն։
Այլ դու մերթ խօսէիր կարճ եւ ճառէիր զճշմարտութիւն.
Զ'իմանայր Պիղատոս, զ'ի զքէն լըսէր անլուր բան.
Հարցանէր թէ զի՛նչ իցէ ճշմարտութիւն, չգիտեմ ես։
Ճշմարտութիւն մարմին զգեցեալ՝ կայր առաջի հեթանոսին,
Նա թուի թէ կարծէր 'ի միտս ճշմարտութիւն վերացեալ բան,
Եւ չըմբռնէր զճշմարտութիւն թէ թանձրացեալ մարդ եղեր է։
Այլ զի՞նչ մեղ Պիղատոսին, որ չգիտէր զգիրս եւ զօրէնս,
Այլ մեծ մեղք Իսրայէլին, որ զԴաւթին երգէր Սաղմոս.
Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ, Ցեսսէի տան 'գաւազանէն.
Ինքն ետես եւ չետես, զի կամաւոր էր կուրութիւնն։



Իսկ Պիղատոս թուի թէ կամէր պաշտպան լինել Արդարոյն,
Գուն գործէր, զդատն ամօքել, թափել զանմեղն 'ի մատնչացն.
Զի՞ բերիք դուք զայրս առիս իբրեւ մահու պարտական.
Ահա հարցի եւ դատեցի, չգտի ոչինչ վընաս 'ի դմա,
Եթէ կամիք լաւ խրատեմ, թողում ազատ 'ի շնորհս տօնին.
Ժանտատժուտ խըռնեալ խուժանն անդէն բարձին ձայն աղաղակ.
Մի՛ ըզդա, ո՛վ դատաւոր, զայլ ոք արժան թող մեզ ազատ,
Ի խաչ 'ի խաչ ըզՅիսուս, որ հայհոյիչ է օրինաց.
Իսկ ջատագով մարդահաճն առեալ ըզջուր լուանայր ըզձեռս,
Զարդարոյն անպարտ արիւն՝ ջընջել քաւել կամէր յանձնէն.
Գիտեմ, ասէր առ 'նախանձու զանմեղդ 'ի ձեռս իմ մատնեցիք.
Զայս բանիւ, այլ ըզհաճոյս գործով առնէր կեղծաւորն.
Զարժանին խաչի մահու թողոյր ազատ՝ ընդ Արդարոյն,
Եւ զանպարտըն գանելով՝ խաչիւ դատել տայր մատնողացն.
Թէպէտ յանուրջս ետես երազ հեթանոսին կինն ըզդատ,
Ցայգ ընդ այգուն բանտար յղէր առ Պիղատոս իւր ամուսին.
Զ'կայ ինչ քո եւ Արդարոյդ, զգոյշ, զգոյշ, մի՛ տար վճիռ.
Զի բազում անցք անցին ընդ իս, զարհուրեցայ յերազիս.
Ես հաւատամ՝ Նազովրեցւոյն թէ Աստուծոյ Որդի է նա,
Ի բաց, 'ի բաց տար զքո ձեռն, մի՛ թաթաւեր յարիւն արդար.
Ես լուայ թէ Արդարոյն դու յարենէ լուայիր զձեռսդ,
Եւ 'ի վերայ ազգին մատնիչ թողեր զարիւն անպարտին.
Ո՛չ, զայդ արիւն չ'կարես ջընջել դու սակ ջրով, ո՛վ դատաւոր,

Ո՜հ, սոսկամ ես, զի ընդ Հրէայս լիցիս արեան պարտաւոր.
Եւ մեք եւ որդիք մեր դատապարտիմք ընդ անիծիւք.
Իսկ դու չքմեղս լինելով՝ միթէ անպարտ ես յարենէն։
Լուաւ զայս Պիղատոս եւ առ ոչինչ համարեաց բանն,
Գիտեմ, ասէ, այդ՝ կարծամիտ կնոջ բան է, չեմ հաւատար,
Եւ այն եւս ոչ թէ լուրջ բան, այլ մի ցնորք խօլական.
Ես դատաւոր եմ 'ի Հռովմայ եւ օրինաց իրաւաբան,
Զի՞նչ լիցի մի կին վկայ առ ողջոյն ազգ եւ ժողովուրդ.
Վերջացաւ դատն եւ վճիռ, զՅիսուս տարան արդ 'ի խաչ.
Գնա՛ բանբեր, ասա տիկնոջ, թո՛ղ չըլինի երազայոյզ.
Այլ զի՞նչ տեսեր դու, ով կին եւ զի՞նչ էին բաղձանքդ,
Միթէ տեսե՞ր, Յիսուս ընդ ամպս իջեալ յաշխարհ 'ի դատաստան.
Ահեղ ատեան կազմեցաւ, նըստէր յաթոռ դատողական,
Պիղատոս կայր առաջի անկիորեալ եւ դողահար.
Նա ծանեաւ զՆազովրեցին, զորմէ ասաց « Ա՛յրդ ցձեզ ».
Թաթաւեալ էին համակ ձեռք իւր արեամբ զորս լուաց.
Դատեցան կեղծաւորն, ստանն վարեաց 'ի դըժոխս։
Երանի՜ տամ քեզ, ով կին, վկայ եղեր Ճշմարտութեան,
Թէ սրտիւ հաւատայիր, հոգւով ծանեար ըզՃշմարտութիւն,
Ճշմարտութիւն ըզքեզ ապատեաց եւ Պիղատոս մնաց կապեալ,
Աւետարան զքեն գրեաց, եւ կրկնեցի ըզքո յիշատակ։
Զայս խոկ եւ դու համէիր, ով կամովին մատնեալդ 'ի գանս,
Զի՛ զպարտականս մահու զինց հազար ամ կապեալ 'ի մեղս,
Քո մահուամբդ անպարտական արձակեսցես յազատութիւն.
Եւ յարիւնդ քո թաթաւեալ թըռչիլ թողցես 'ի լեառն երկնից.
Որպիսեօք զաղաւնին ցուցեալ անդէն առ Ահարոն.
Իմ աստ ահա, ով Մանկունք, սառանի սիրտ, քարինն ոսկերքս.
Եւ որպէս հանդուրժեցից զբրել վերջին ըզձաղանացն.
Ում ըզկնի մահու վըճռոյն՝ Հեզըն համբեր սիրովն անհաս.
Քանզի շունք եւ ցուլք գէրք, ո՛հ, զիմ Յիսուս առեալ 'ի մէջ.
Պատեալ պաշարեցին զընդովք իւրեանց վայրենի.
Խայթահար 'ի սատանայից հիւսեալ պըսակ բոլորակի,
Բարէ, եդին 'ի գլուխ նորա՝ Դաւթի որդւոյն թագաժառանգ.
Ընդ թագին յօրինելոյ ազնիւ յականց երկնաստան։

Եւ որ Տէրը սիրեցելոյ այգւոյն բերել նըմա խաղող.
Զոր պարփակէր ցանկապատով եւ ոռոգէր երկնից ամպով.
Զողաքարձ զարդարէր եւ որթ սորեկ տընկէր ընտիր.
Զաշտարակ պահապանի, գուբ եւ հընձան փորէր 'ի նմա.
Իսրայէլն էր այս այգին, որ փուշ եբեր ընդ խաղողին.
Զփուշըն քաղեց պսակ հիւսեց, մի՛, եդ 'ի գլուխ տընկողին.
Ծիրանիս նախատանաց ըզգեցուցին իբր Արքայի.
Եւ յաթոռ անարգանաց բազմեցուցին զհին աւուրց 'Ծերն.



Ընդ զօրութեան դաւազանին՝ ջախջախ զեղէգն ետուն 'ի ձեռն.
Ինքն անդանօր բեհեզեայ պատմուճանաւըն ողբանուէր,
Զարդարեաց զԱհարոն շուրջանակի պըճրըղնաւոր.
Զայս ընդ այն հատուցին ատէն որդիքն անհարազատ,
Երկնաւոր Քահանային, մի՛, հատուցմանս անօրինակ.
Քանի՞ դառն էր այս կատակ, զի մերթ առեալ զեղէգն այն,
Ծեծէին զգլուխըն վեհ, զոր Սերովբէն պաշտէր դողով.
Որ հանդերձեալ էր հովուել դաւազանաւըն երկաթեայ.
Եւ որպէս բրուտ զանօթ փըշրել մանրել ըզթշնամիս.
Դպիրն Երկնից արքայութեան եկն 'ի գրել նախ զԻսրայէլ,
Որդիս Աստուծոյ եւ անդրանիկ ժառանգ երկնից.
Զգրիչն առին՝ 'ի գլուխ նորա ջախջախեցին չար ժառանգք.
Իւրովք հանին զնըքեանս 'ի թուոց երկնից ժառանգողացն.

Այսպէս նոքա մերժեցան 'ի ձեռանէ քումմէ., ով Տէր,
Ազգ հեթանոս քեզ հաւատայ, սաստ մեք եմք քո ժողովուրդ.
Զորն սնեալ բիւրակերպ զձաղանայքն չարահնար,
Զոսա տարաւ հեզութեամբ, Հրեշտակք, մարդիկ զարմացան.-
Արդարոյն Յովբայ նման 'ի մերձաւոր իւր բարեկամս,
Սիրելոյ ազգին ընդ մեզ որդի Կուսին եւ Աստուծոյ,
Այսպէս 'ի կատարման եղեւ Արդարն եւ անարատն:
Հնչեց ժամին երրորդ եւ խաչելոյ ժամն եհաս,
Առէք ձեր քղամիծ կարմիր, եւ ագուցէք զիւր հանդերձիկն.
Խաչն պատրաստ կայ 'ի դուրս, եւ խաչակիրն է պատրաստ,
Լրացան ամէն կատակ; ձաղանք, մնաց վերջին խաչի մահ:



# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԽՄԱՍՏԻՑ

## ՉՈՐՐՈՐԴ ԵՐԳՈՑ

Հ<sub></sub>ՐԱՒԻՐԱԿՆ զքնարն իւր բառնայ հանգոյն Քրիստոսի խաչաբարձին և զնորոյն Իսահակայ. թէ իբր երթայր զհետ անհարազատ որդւոցն Աբրահամու՝ նուագելով ելանէ 'ի Գողգոթա. ուր զխորհուրդ խաչին նախագուշակեալ պէս պէս. օրինակօք երգէ յաղթական ձայնիւ ։

Փեսայն Քրիստոս ելեալ առանձին 'ի լեառն զմռսոյ և խնկեալ 'ի նմա չարչարանօք՝ բուրէ զանուշութիւն, հոտ առեալ դիմէ առ նա հարսն 'ի Լիբանանէ ։

Ձայն տայ անձկով իւր Փեսային հարսն սգաւոր. սկիզբն առնու աւաղական բանիւ լալ զհեռանալն իւր 'ի նմանէ, զմիանալն ընդ անմռունչ կուռս քարանց և փայտից. և ուրախանայ մինչ յաւուր փեսայութեան եկեալ գտանէ զՓարելին ։

Ցնծայ Հրաւիրակն և բերկրի ոգւովն 'ի նկատելն իւր զայսասիկ 'ի վերայ լերինն Գողգոթայի. այլ կրկին ակնարկելով ըստ Ամբակումայ 'ի գործ խաչեցելոյն, ընդ մերկութիւն և տեսիլ նորին անշքութեան՝ զարմանայ և զարհուրի յոյժ ։

Նկարագիր անկշիռ մշտայ Կուսին, որով խաչակից եղեւ միածնի Որդւոյն ։

Ցաւալի ողբ նորին առ սիրասուն Որդեակն իւր Յիսուս. եւ սփոփիչ յուսադրական բանք Որդւոյն առ Մայրն ։

Փոխէ ապա Յիսուս զդէմս բանիցն առ Հայրն և 'ի դէմս ածէ նմին զթողանիլն իւր 'ի նմանէ առանց օգնականի. առաջի արկանէ զնուիրումն անձին հաճոյական պատարագ. հայցէ զի հաշտեսցի ընդ աշխարհ և թողցէ զյանցանս չարչարողացն իւրոց ։

Պատասխանիք Հօրն առ Որդին վասն փոյթ կատարելոյ սիրով զնորին հայցուած. վաղվաղակի վրէժխնդիր լինել առ անմեղ դատապարտութեանն. և խոստանայ դնել զթշնամին 'ի պատուանդան ոտից նորա ։

Հուսկ ապա իջուցանէ Գողգոթայէն 'ի Պատանատեղ. ուր զանվեհեր համարձակութիւն Արեմաթայեցւոյն Յովսեփայ, զկրկին կոծ և լաց պարկեշտ Մարեմանցն և Մօր Տեառն. և զպատանիլն Քրիստոսի 'ի մանկանցու ձեռաց՝ առ որ Սահակայ մեծի զՊարգեւատուն 'ի մէջ բերէ 'ի Թաղումն Քրիստոսի, ընդ որս յաւելու զիւր հիացական բանս և վերջացուցանէ ։



# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

### ԵՐԳ ՉՈՐՐՈՐԴ

Առ ըզքնարըդ, երգահան, ընդ Քրիստոսին խաչաբարձ,
Ի լեառըն Գողգոթա ել ատասիկ նըւագելով.
Մինչեւ նոր Սահակն ըզփայտ ողջակիզին բարձեալ 'ի յուս,
Ի տեղին Մօրեկայ տակաւ տակաւ տարեալ հասցէ ։
Առէք եւ դուք, Մանկունք, փոքրիկ փոքրիկ ըզձեր խաչեր,
Ձեռք արժանի Յիսուսին, եթէ երթամք առանց խաչի եւ վըշտի.
Գիտեցէք եւ զարմացէք 'նդ նոր Սահակայ անպարտ զենումն,
Որ ոչ էր հնոյն հանդունակ լեալ ինքն անգէտ իւրոյ զենմանն,
Հայրիկդ իմ, յիս ահա փայտն, իսկ հուր եւ սուր պատրաստ 'ի քեզ.
Ո՞ւր գառնուկըն ողջակէզ՝ հարցանելով տեղեկանայր ։
Զի գիտէր թէ ուր գնայր, չէր պիտոյ ինչ, ոչ հուր, ոչ փայտ և ոչ գառն։
Ո՞վ էր, որ վարէր տանէր, աներեւոյթ էր վարիչն.
Հա՛յրն էր, Հա՛յրն, մեծ զոհագործ, որ զսիրելին տայր 'ի զոհ.

Տեսէք, հնազանդ որդին որպէս գընայ անդիմադարձ.
Ու՛մ չէր անդրէն դառնալ ողջ՝ զխոյն ընկալեալ 'ի Սաբեկայ.
Ինքն էր լոկ խոյն անարատ ձօնեալ փոխան Իսահակայ:
Խոյն կախէր յեղջերացն, Տէրն 'ի Թեւոց խաչի ծառոյն.
Զոր չգիտեմք, այլ հաւատամք, յաւիտենից պատրաստեալ Հայրն:
Միայնիկ երթայր Սահակ, չէր ընդ նմին Հայր Աբրահամ.
Այլ որդիքն անհարազատ, որ պարծէին Աբրահամու.
Սուր ունէին ըզլեզուս սրեալ սաստիկ արդարոյն դէմ.
Հուրն էր նոյին այլանիւթ, զնախանձն ասեմ ըզչարութեան,
Որ 'ի հնոցէ յոգւոցն 'ի վեր բոց բորբոքէր, կայծ Թափէր
Ի վերայ անպարտ գառինն, որ ինքնանուէր սիրով կիզոյր և խորովէր:
Ի սպանդ կերու զոչխար վարեալ լինէր 'ի զենարան.
Լուռ անձայն եւ անմռունչ ընդ մըշակայըն չարակամ.
Որ հանէին այգւոյն արտաքս կորուսանել զՀօր ժառանգն.
Եւ ասէին սպանցուք զորդին, զի մեր լիցի ժառանգութիւն:
Ո՜հ, աստէն առուք արեան առ ծանրագոյն խաչի բեռան.
Հոսէին 'ի բերանոց բացեալ վիրայըն գանահար.
Յօղէին եւ Թափէին յերկիր մեռեալ եւ անիծից.
Երկիր ծընէր զկենաց արիւն եւ բուսանէր կեանքն 'ի հողէն,
Եւ հա՛րն օրհնէր ընդ մարդոյն, վերըստանայր զնոր կեանս.
Ես անկեալ զհողըն լիզեմ, ուր հոսեցաւ Փրկչին արիւն:
Տեսէ՞ք արդեօք, ո՜վ նախաստեղծ, եւ ամբարձէ՞ք զաչըս քոյին,
Հայեցա՞ր ընդ Արարիչդ առ 'ի շիրմէդ Գողգոթայի.
Որ առ քեզ գայ Խաչաբարձն, որ գագաթանդ 'վերայ խաչի,
Խաչին արիւն ցօղէ 'ի վայր, Գերեզմանիդ 'վերայ Թափի:
Եւ իջանէ մինչեւ յոսկերսդ, կենդանանաս դու եւ որդիքդ:
Դու ոտիւքըդ կայթելով չոգա՛ր 'ի ծառըն մահածին.
Տես որպէս դրախտին Աստուած զխաչն բարձեալ գայ քեզ յայց.
Առ 'ի քաւել պտղոյն ըզմեղս, եւ զմահ դընել ընդ ոտիւքդ:

Է՛. Յիսուս, վաստակեցար, պահ մի 'ի վայր դիր զքո խաչ.
Որ շընչասըդ հանկըլեալ եւ նըւաղեալ յուժոյ մարմնոյդ.
Մերթ քայլես կԹուցեալ ծընկօք, մերթ խոնջելով ըզկայ առնուս.
Դահճացըն դառնութեան 'ի սասպմանէ տագնապելով.
Ո՜հ, անկար դու ընդ խաչիւ այլ եւս չկարես ոտընփոխել.

Տեսին զայն խաչահանք եւ ձեպեցին պահակ բերել.
Մի՛ գուցէ անխաչ մեռցի այսպէս 'ի կէս ճանապարհին.
Մեք վասն այն հանեմք 'ի խաչ, որ խայտառակ լիցի մարդկան։
Երանի՜ քեզ, պահակ Սիմոն, եթէ սիրով կրեցեր զայդ խաչ.
Եւ սրտիւ ցաւ ըղձայեր ընդ մահ անպարտ Աստուածորդւոյն.
Բա՛րձ, Տէր իմ, կրկին զխաչդ, մնաց փոքր ինչ. մօտ է գագաթն.
Խաչն քոյդ է, Սիմոնին չէ, առ զի պահակն երթայ յիւր բան.
Քա՛ւ թէ դու յաշխարհիս այս բեռնի վարեր զոք տարապարտ։
Այսպէ՛ս, Մանկունք, գառն անարատ ածաւ մինչեւ 'ի սպանդարան.
Այսպէս Յիսուս ինքնին բարձեալ զխաչն իւր հասոյց 'ի Գողգոթա։



Եկե՛ր սիրտ ինձ աստ 'ի ժուժել ընդ անմեղուկ որոջն Յիսուս,
Ո՜րպէս անշարժ կայր առաջի իւր կրտողչացն ինքն անմռունչ.
Այնպէս որ չբանայ զբերան, զոր Եսային եւեթ կանուխ։
Այլ կրտրիչք դեռ չըղենեալ՝ զմորթն քերթել փութային.
Զհանդերձիկն ապաշուք եւ զպատմուճանըն փորանկեալ,
Ի բաց քարշեալ յանձնէն՝ մերկ առնէին ըզգեցուցիչն.
Որ մերկացեալ՝ ամօթապարտ մարդոյն կարէր նոր պատմուճան.
Տարածեցին զփայտ խաչին եւ 'ի վերայ մերկ ըզՅիսուս,
Որ ինքնին զոտս՝ եւ ըզձեռս պարզէր ձըգէր 'ի թեւս խաչին.
Պինդ եւ պիրկ բեւեռեցին որ չանկանի վայր 'ի խաչէն.
Խաչահանք յամէն կողմանց ձեռըն տուեալ բարձրացուցին.
Կանգնեցին ճիշդ յայն գաղաթ, ուր նախահօրն էր գագաթ։

Մովսէս կայեալ անդէն՝ նշանց տայր մատամբ Իսրայէլին.
Տեսէք ասէր, ով Թիւր ազգ, կեանքն 'ի փայտէն կախեցաւ.
Որ ըղձեղ 'ի միջնաւորն բարձեալ բերէր որպէս արծուի.
Բերէր հանգուցանէր եւ հովանի տարածէր թեւս:
Դու ընդ այն զայս հատուցիր քո ազատիչ բարերարին,
Ազգ անմիտ, ոչ իմաստուն, ազգ ապիրատ, անհաւան.
Աւադի՜կ 'ի բարձու գլուխդ ելի հասի, ով Գողգոթա,
Տուր ժամեմ զկէմ ինձ տեղի, ուր ես կացից 'առ Ամպակումայ.
Կացից եւ հայեցայց ընդ գործ խաչիդ, զոր եստես,
Որ գոչէր նա զարմացմամբ, Տէր, լըսելի քո լուայ ես.
Լուր ըզխաչէդ, լուր ըզմահուդ, լուր ըզփառաց եւ զօրութեանդ.
Աստուածդ 'ի ձեռս մարդոյն մատնեալ 'ի դատ 'ի խաչ եւ 'ի մահ,
Եւ Արդարդ ընդ անօրէնս համարեցար որպէս ըզմարդ.
Ցաւ եւ յանհեակ քո աւազակք եւ 'ի միջի Տէրըդ փառաց.
Ո՛վ, ես վասն այն զարհուրեցայ եւ հիացայ ընդ քո բան:
Այլ գիտեմ թէ 'ի մահուդ հաստատեցաւ քո զօրութիւնդ.
Գիտեմ թէ յերեսացդ ելցեն հարուածք մեծամեծք.
Կապեսցի մահու իշխան, արձակեսցին կապեալքն ազատ.
Եւ 'ի շաւիղս հետոց քոյին գնասցեն թռչունք հոգիք արդարք.
Նահապետք, Մարգարէք, եւ արդարոց դասքըն համայն:
Արի եւ դու Եսայիա, մատիր խաչին 'ի տեսարան.
Որպէ՞ս տեսեր զՏէրըն պաշտեալ 'ի Սերովբէիցըն սրբասաց,
Պատմէ՛ զտեսիլն այն ապաշուք եւ նըկարէ մեզ յանդիման:
Եւ, ասէ, տեսի ըզնա յԱստուածային գեղոյն թափեալ.
Լուսափայլ տեսիլ դիմացն անշքացեալ ամենեւին.
Այնպէս նըւաղեալ քան զամենայն որդւոց մարդկան.
Որպէս արմատ 'ի ծարաւուտ երկրի ցամաք եւ անհիւթ
Մերկանայ 'ի զարդուց ծառն 'ի ծաղկանց գեղեցկութեան.
Դեղնին տերեւք մեռելագոյն եւ թօթափին համակ 'ի վայր.
Ասեն թէ ծառըն մեռաւ, բայց միթէ ո՞չ յառնէ 'գարնան:
Այսպէս, որ համակ զերկին, զերկիր լնոյր փառօքըն իւր.
Եւ եղելոցս բոլոր շնորհ պարգեւէր գեղեցկութեան.
Կապտեցաւ 'ի ձոխ փառացն եւ մերկացաւ 'ի խաչին, ո՜հ.
Որ եկեալ էր կարկատել զպատառոտեալ հնութիւն մարդոյն.

Հանել ըղձին հանդերձ մեղաց, զգեցուցանել նոր պատմուճան.
Պատմուճան արդարութեան՝ ազատութեան եւ սրբութեան։
Արդ՝ երգեցից զՄանուկն Հօր, որ վերացաւ խաչին Թեւօք,
Վերացեալ 'ի բարձունս, անտի գերել ըզգերութիւն.
Այսր ընդ իս եւ դուք, մանկունք, փրկեալք արեամբ Խաչելոյն,
Այսր ուշի ուշով զհանդէս յաղթող մանկանս դիտեցէք.
Որ հեծեալ այլ իմն 'ի կառս՝ մուտ յասպարէզ նա խաղալով.
Քառասայր խաչն 'ի ձեռին՝ եւ 'ի վերայ Փղըշտացւոյն.
Դաւթի որդին էր այն հզօր հար կործանեաց զհին Գողիաթ.
Որ ասէր իմ է աշխարհ, եւ տիրապետն եմ յաւիտեան։
Այսպէս յաղթեաց Մանուկն Հօր առ որ աշխարհ զարմանայ.
Նորահրաշ եղանակաւ մահուամբն իւր անպարտակեր.
Ուստի յերկրի եւ յերկինս փառաւորեալ եղեւ նա յոյժ.
Թէ եւ աստ մերկ 'ի փառաց պատիժ խաչի կրեաց անարգ։
Սիրեմ եւ ըզքաղէն որ վերացաւ հրամանաւ Հօր,
Եկաց թեւատարած եւ 'ի խաչէն դիտեաց աչօքն.
Զափէր զերկիրըն բովանդակ եւ փրկութիւն բաշխէր յաչացն.
Փրկութիւն հեթանոսաց, որ ջեռուցեալ էին առ կուռս.
Նա յաւէտ Հրէին, զի յիւրսըն եկն, այլ չ'ընկալան։
Յերուսաղէմ եւ 'ի վերայ Սիօնի լերինըն գագաթան,
Զոհի սեղան մի կազմեցաւ եւ զոհագործ չէր Մոլաքս.
Այլ Սինայի Տէր Աստուած Հայր, որ զնոր Մոլաքս ածէր 'ի զոհ.
Զիւր Միածին պարարակ զեզն՝ յաւիտենից պահեալ 'ի ծացն։
Զայն տանէր եւ հրաւիրէր զանառակեալ ազգ մարդկային,
Ի սեղան զենեալ եզինն առ 'ի փրկանս մեղաւորաց.
Որ դիմեալ դարձան առ Հայրն տանջեալք սովու արդարութեան.
Եւ մատեան քաղցեալ ոգւով պարարտ եզինն 'ի ճաշակումն,
Թողեալ ըզքարս անըզգամ՝ եկին խընդրել զխնամատութիւն։
Զողոքարձ օձըն պղընձի, որ օրինակ էր խաչին,
Բարձրացեալ աստէն կանգուն 'ի տես համայն աշխարհի.
Ո՛չ եւ եթ Իսրայէլեան ըղվիրաւորացն բըժշկել,
Հապա ողջ սեռըս մարդկան զթունաւորեալսն 'ի թշնամւոյն,
Թափեաց զօրէն դեղոյ՝ ամբիծ արեամբըն իւր կազմեալ։
Սաբեկայ ծառ խոյաբեր բուսաւ 'ի բլուրըն Սիօնի.

Ո՛չ անբանըն կախեցաւ յիւր եղջերայն առ 'ի նմանէ.
Այլ այն, զոր Տէրըն ետես յայտնի քանիւ Աբրահամու.
Ցխոնւորն կուսաբեր կախեալ խաչին 'ի յեղջերաց,
Ո՛չ փըրկանս Իսահակայ, այլ եւ հանուր հեթանոսայ:
Ըստ երգոյն՝ Հարսին 'ի սէր եւ առ փեսայն իւրն տանձին,
Եւ խընկեալ դաշըն վըշտօք իբրեւ զմուռս 'ի հուր ծըխեալ.
Զհոտ բուրեաց անուշութեան, առ հոտոտեաց հարսն 'ի հեռուստ,
Վազեալ եկն առ իւր փեսայն իւրն յանտառէն Լիբանանու.
Ուր, աւա՜ղ, Թողլով զԱստուած զուգաւորեալ էր նա մեղք.
Ընդ անշունչ կուռքն փայտից անխծագործ կազմեալ ձեռօք:
Դարձիր առ իս, ձայնէր փեսայն, յառեաց 'ի գեղն իմ կարմրացեալ,
Տես փեսայիդ փառաց ըղղարդ զթագն ու պսակ եւ ծիրանին.
Զգեցիր և դու զդրախտին զարդ, զոր հան 'ի քէն կապտեաց հին օձն.
Արի եկ մօտ յառագաստ խորհրդաւոր իմ հարսանեաց.
Քեզ հարսանիք կազմեցի առա ես 'ի գինւոյ ամբիծ արեանս,
Չ'ունիս այսուհետեւ արատ 'ի քեզ աղտեղութեան,
Ջրով արեան իմոյ լուացեալ գեղեցկացար ամենեւին:
Զայն յօրինէր Հարսն առ փեսայն անձկով իւրով եւ ասէր.
Աւասիկ ես, որ սիրով քո կամ 'ի վաղո՜ւց խանդակաթ.
Անդո՜ւստ մինչ 'ի դրախտին առագաստէն արտաքսեցայ.
Ո՜հ, զըրկեալ 'ի փարելոյդ՝ Թափառեցայ 'ի մէջ երկրի.
Ի սիրոյդ ելեալ, աւա՜ղ, գնացի կամաւ առ աստեղն.
Ցաղատչէդ իմ որձակեալ առաւել նորին ես կապեցայ.
Զիս տարաւ եւ հարմնացոյց ընդ իւր ուստերց անշունչ կըռոց.
Ի կենդանւոյդ իմ լուծեալ ընդ անմըռունչըս միացայ.
Երբ ըզմեղաց հեշտութեան զքուն նընջէի ես 'ի մահիձս,
Եւ զաչօքըս մածեալ էր մըթին գիշեր անգիտութեան,
Կարծէի՝ թէ. զոր սիրեաց անձն իմ ընդ իս է նա բնակեալ.
Խընդրեցի խանդակաթօտ, ո՜հ, ոչ գտի զքեզ հուպ առ իս.
Զայնեցի, ձայն ոչ ետուր, ելի խընդրիր ես փեսայիդ,
Զօղջ գիշեր 'ի փողոցս եւ հրապարակըս շըրջեցայ.
Եւ այն ինչ ընդ մերձ այգոյն երբ արուսեակըդ ծագեցաւ,
Հարսնաւէրն Յովհաննէս՝ ինձ աւետիս ետ խընդաւէտ.
Ասաց մօտ է առաւօտ, ահա ծագի փեսայն լուսով:

Ուրախ եղէ՝ անցի փոքր մինչ, եւ երբ գիշերըն մերժեցաւ,
Անըստուեր ճառագայթիդ լոյս ծագեցաւ յամէն աշխարհ.
Վա՜յ. ըղձիրելիդ գլուխ 'ի լեառըն Սիօնի,
Եւ յաւուր փեսայութեանդ ես հարսըն քո եկեալ հասի։
Արդ՝ կալեալ զքեզ ոչ թողում այլ եւս յինէն մեկուսանալ.
Մինչեւ զիս տարցես անդրէն 'ի հարսնարանդ երկնից դրախտ,
Ուրանօր երգեալ ըզՍէր՝ ուրախացուք յաւէրժաբար։



Թողեալ այժմիկ, ով Մանկունք, զերգըս Հարսին եւ փեսային.
ԶՏեառըն Մօր ստնում երգել, որ առ խաչին կայր թալկացեալ.
Մինչ հայէր յիւր Միածին՝ կրէր բիւր մահուանս անհնարինս.
Զի հանդէպ խաչեալ Որդւոյն՝ եւ Մայրն անդէն էր խաչակից.
Ո՛չ փայտիւ, ո՛չ բեւեռօք, այլ սաստկայէր սրտին խոցով.
Նոյնավիշտ եւ զուգակիր եղեալ Նորին 'ի չարչարանս։
Անտրբին նահատակէր եւ ո՛ կարէ չափել ըզվիշտն,
Մեծ հռետոր Նարեկացին չափէ միայն ըզՄօր վիշտն,
Իբրու որոշ անարատ Ինքն 'ի սեղան սիրոյն մատեաւ.
Հրով անծախ բոլորանուէր ողջակիզեալ անձնատուչոր.
Եկա՛ց կենդանի մըշտաչարչար մեռելութեամբն.
Հայէր եւ տեսանէր զՈրդին այնպէս անարգամահ.
Ցուց բերէր զԳաբրիէլին բան աւետեացըն բերկրալուր,
Զդէպ ժամուն այն յիշէր, յանձին հեծէր հառաչելով։
Եւ զի ոչ յաթոռ Դաւթին տեսս ըզնա նըստեալ Արքայ.

Այլ 'ի գահն անփառունակ 'ի փայտ խաչին պըրկեալ անարգ.
Եւ 'ի գլուխըն գերակայ չէր Թագ փառաց ականակուռ.
Ո՛հ, ընդ այն անարգութեան պըսակ եղեալ բըստմնափուշ.
Որ արփւոյն էր հանգունակ, ըզդիտակին գեղ վայելուչ,
Տեսանէ՛ր անաւադեալ ձաղկեալ յարիւն ապաժոյժ.
Փչահերձեալ 'ի գըլխոյն ծորէր արիւն ոլոռն ոլոռն,
Ի ծայրից գանգուր հերայն իբր 'ի ծառոց խընկաբերից,
Ի վերայ երեսաց Մօրըն կաթէին իբրեւ ըզմուռս.
Որ ըզխաչիւըն մածանէր 'ի սէր Որդւոյն սիրասընունդ.
Որ ընդ արեանըն բոսոր խառնէին Մօրն եւ արտասուքն։
Առ խաչին պատուանդանի մերթ Թաւկանայր ուշաթափեալ,
Մերթ յուշի եկեալ անդէն պատըսպարէր զինքն 'ի յոտին.
Փարելով հեղուսապինդ ըզՄիածնին մերկիկ թաթիւք՝
Համբուրէր չըրթամբքըն իւր կափուցելովք արիւնաման։
Շուրջ կային եւ ողբանուէր պաշտող կանայքն եղերամայր.
Աղաւնին Մարիամ 'ի սիրտ մինջէր հառաչահան.
Ո՜ւմ այնչափ դառն էր մինչեւն, միայն իւր ձագուն սըրտակցեալ.
Ո՜ւմ յաւէտ ցաւս յաւելոյր, միայն Միածնին հոգեհատոր,
Առ որ չըրթամբք տատանեալ՝ ողբս յօրինէր աշխարահեծ։
Արտաբե՛ր ընդ իս այս, ըղձեծամեծս, հըզօր Որդեակ,
Անդըրանին մինչ ես հոգւով քեզ աղախին խոնարհեցայ.
Մեծութեամբդ անպարագիծ 'ի յարգանդիս ամփոփեցայ,
Հուրդ անմերձ 'ի Մովսիսէն՝ ըզմորենիս պահէր անկէզ.
Հայրական ծոցոյն ծընունդ, կըրկին դու ծնար 'ի Կոյս մօրէս.
Քեզ Արքայք ընծայաբերք խոնարհելով երկըրպագին։
Լուսով ծածկեալդ անմատոյց, ո՛վ, իմ ձեռօք խանձարըրապատ,
Ցանքանից 'ի մսուր եդար իբրեւ զաւակ աղքատածին,
Դարմանիչ տիեզերաց 'ի կաթանէ Մօրս դիեցար։
Տաճարին դուռըն փակեալ բացաւ անդէն քոյդ առաջի,
Գըրգուելովդ 'ի ծերունոյն՝ արձակեցեր զնա 'ի կապից։
Քեւ Թագաւորք Թագաւորեն, 'ի յարքայէն Հերովդէսի՝
Զքեզ բարձեալ 'ի գիրկս մինչ յԵգիպտոս փախուցի,
Դեռ Մանուկ էիր անոյժ, այլ զօրութիւնդ շարժեց զկուռս,
Զձեռագործ անշունչ աստուածք խոնարհեցան ընդ ոտիւքդ.

Ըզգըլխոյն փըշէ պսակ, զաթոռ խաչին արիւնազանգ,
Այսպէս մայր իւր Սիօն եկեղեցին Իսրայէլեան
Պըսակեաց այսօր ըղձա յաւուր նորին փեսայութեան։
Այդ, գիտեմ, քաղցր է գըլխոյդ, ոչ քըմծըմնիս, այնու Որդեակ,
Վաղո՜ւց փափագէիր այդ օրինակ փեսայութեան.
Այլ, գիտեմ, թէ քանի՜ սուգ այդ 'ի սըրտիս իմ սաստկանայ
Մինչ այսպէս կամ հրաւիրեալ 'ի հարսանիս խաչապսակիդ։
Որ ինձ հանդերձեալ էք տալ զերանիս, ով ազգք մարդկան,
Եկա՛յք այսօր կարդացէք ցընծացելոյս յԱստուած Փըրկիչ,
Որ մեկնի յինէն մահուամբ եւ խընդութիւն ողւոյս բառնի։
Արդ դու, ով ծերունիդ գուշակ ցաւոյս անհանդուրժ,
Ե՛կ եւ կաց ինձ առ ընթեր, հայեաց 'ի Մայրըս վըշտակոծ.
Տես որպէս խորամուխ սուրդ անցեալ ընդ անձն իմ աւասիկ.
Մինչ 'ի սիրտըս կարեւէր մըխի, խոցէ դառնակըսկիծ։
Ա՜հ, մեռանիմ, մեռանիմ, գոնէ հանգեայց ես 'ի ցաւոց.
Լոյս զոլ Մանկանդ, գուշակեցեր, հեթանոսաց խաւարամածանց,
Եւ փառք անդրանիկ ժողովրդեանն Իսրայէլի.
Եկն ահա ժամ խաւարին՝ Լոյսըն պայծառ անըստուեր,
Նուազեցա՜ւ նըման Լուսնին 'ի լըռութենէն բոլորափայլ։
Զայն առ քեզ արկանեմ, ով նախամայրդ իմ Եւայ,
Հասիր այսր եւ կարեկից լեր քո դըստերս Մարիամու.
Կուսական ծնընդեամբ թէպէտ ազատ կայի յերկանց ցաւոց,
Սակայն եւս զառնագունի ցաւոց վըշտաց ես զիջեցայ.
Զոր ոչ Մայրդ եւ որոտմածին դըստերըք քո կրեցին երբէք։
Դու 'ի ծառըն մահաբեր չոգար չարին հրապուրանօք
Անդ կերեր քաղցր ըղպըտուղ, աստ որովայնըս զառնացաւ,
Զի զորդեակըս տեսանեմ վարըն պարտեաց քոյին այսօր
Ի ծառ խաչին բեւեռեալ, զի քաւեսցէ զմեղս Նախամօրդ.
Եւ այսպէս, ով Միածին անդրանիկդ իմ անձըման,
Ըղպարտիս նախածնողաց դու հատուցեր անպարտականդ։
Այլ ինձ Մօրս ողորմելւոյս ձայն տուր այժմիկ, Յիսուս որդեակ,
Զմէ՞ վըռնեալ ոչ բարբառիս առ Մայրըդ քո աղէկիզեալ,
Զի՞ անուշակ քո լեզուաւդ չ՚լսիս դու Մօրդ սիրելիս.
Մինչ տակաւ գոյ շունչ 'ի քեզ խօսեաց եւ տուր զցերտին մըխիթարութիւն.

Ո՛չ Թողից զքեզ երբէք, ո՛չ է անուն իմ, Մարիամ.
Վայրիկ մի մեկնիմ 'ի քէն, այլ երեւիմ յետ Յարութեանս։
Արդ՝ ընդ իմ լիցի Որդի եւ խնամատար 'ի բոլոր կենաց.
Մտերիմ քոյն Յովհաննէս եւ աշակերտն իմ սիրելի,
Որ առ խաչիս կայ ընդ քեզ՝ գոլ որդեգիր սիրով կուսից.
Նա քեզ որդի, դու նմա մայր մինչեւ եկից առից ըզձեզ։
Զի՞նչ յետոյ զքան սրտառուչ դարձուցանէր Յիսուս յերկինս,
Հայր իմ, ընդէ՞ր այդքան յամես, նորէ՞ քո սէր Թողուլ զորդիդ,
Քաւ քան ըզքոյդ մեծ լինիցի գութ Մօրն իմոյ, որ կայ ընդ իս։
Յորդանան եւ 'ի Թաբոր դու կըրկնակի վըկայեցեր՝
Ինձ՝ հաճոյ եւ սիրելի որդի լինել անճառ ծնողիդ.
Ո՞ւր եւ արդ սէր քո առ իս, ընդէ՞ր Թողեր զիս միայնակ.
Եւ յինէն հեռացուցեր ըզբարեկամս իմ եւ ծանօթս.
Եղէ ես որպէս մարդ մնացեալ առանց օգնականի.
Աղաչեմ դու զայս ընդ իս, Թըշուառականի Որդւոյդ այսպէս։
Յիմ սիրոյն հատուցանես սըրտմըտութիւն քո սաստիկ.
Ես ցաւօք անհընարին տագնապիմ յոյժ աստ 'ի տանջանս.
Դու այսօր անկարեկից լեալ քո Որդւոյս եւ զուարճանաս,
Տեսանեմ խաչիս իմոյ քեզ 'ի զբօսանս է համարեալ.
Զի ընդունել ետուր 'ի նմա ըզՄիածին պատարագ եզն.
Եւ խրախճան կազմեալ յերկինս ուրախանաս Թըմբկօք պարուք,
Ի դարձումն անառակին, սովեցելոյ հացիդ անմահ.
Մի՞ Հայր իմ, մի՞ դու մերժեր խաղաղ 'ի գթոյդ եւ սիրոյդ.
Դարձո՛ զաչըս քո այսօր, հայեա՛ց Որդւոյդ 'ի նախատինս.
Ահա եղեն զիս նըշաւակ իւրեանց որդիքն Իսրայէլի,
Տեսանե՞ս Թէ զի՞ կացեալ ինձ յանդիման շարժեն ըզգլուխս,
Հայհոյեն եւ քրքջալի բանիւք խօսին ըզկըծանաց։
Ահա եւ տան ինձ կերակուր, ո՛հ, ըզլեղի դառնաճաշակ.
Ընդ ապաքինելոյ մանանայից, որ զեղանէր յանապատին։
Ահա քացախս ինձ արբուցին ծարաւելոյս ազգաց մարդկան,
Ընդ անոյշ եւ յորդահոս ջրոյդ 'ի վիմէն բըղխեցելոյ։
Մի՞ լըսեր, մի՞ լըսեր, տեսանել վերուստ զիմ անարգանս,
Մըրմունջ հայհոյանաց հայեաց յանդգնաց եւ միմնջոց.
Ապրեցո՛ զիս 'ի նեղչանաց եւ Թըշնամեաց իմոց փըրկեա՛.

Մի՛ գուցէ վա՜յ վա՜յ կարդան անձանց բերանից եւ սառեցին.
Թէ խաչիւ անխուշելով զնա ընկլուզանք 'ի մահուն խոր։
Հա՛ն ասոր, մի՛ Թողուր, Հա՛յր, ձըգմամբ ձեռին ամենազօր.
Յամօթ լիցին Թաղ նոքա, որ զայսօրիկ ինձ հասուցին.
Ես զՀօրդ իմոյ զպատուէր բոլոր սրտիւ կատարեցի,
Խաչըն միայն մնացեալ էր ինձ. անձն եղծ եւ քայքայեցայ.
Ահա զանձն իմ ողջակէզ հաճոյական քեզ նուիրեմ,
Ըստ Աբէլի պատարագին ընկալ խաչիւս իմ պատարագ.
Յոր ինքնամուէր մատեայ ես, քանզի այս էր Հօրդ իմոյ կամք.
Հայցեմ զի հաշտեսցիս, մահուամբ իմով ընդ աշխարհ.
Եւ հայեսցիս քաղցր աչամբք յայսուհետեւ ընդ անկեալ մարդն։
Զոր խաչիւս վերականգնես, եւ վերքերիս երկնից դրախտն.
Թո՛ղ նաեւ չարչարողացն իմոց բըմբեղս. ներող Հայր,
Որ չգիտեն Թէ զինչ գործեն, զի կուրացեալ են 'ի լուսոյդ.
Ըզխորհուրդ քոյին ծածկեալ ոչ կարացին 'ի միտ առնուլ.
Խաւարեցան եւ ոչ տեսին զլոյսն. որ 'ի քէն ծագեաց յաշխարհ.
Զօրացին եւ ընդ մարմին զլոյսն սպաննել միաբանեալն.
Չ'իմացան Թէ ընկղմի եւ մեռանի՞ լոյսն անմահ.
Թէ այսպէս անարգաման բարձին ըզկեանս մարմնոյս յերկրէ.
Այլ ո՜վ Հայր, ես 'ի քեզ եմ, հոգիս 'ի քեզ կենդանի է։

Քո հայցուած կատարեալ է, ո՜վ հեզ որդեակդ իմ եւ հնազանդ,
Վարեալդ 'ի մահ կամովին յայդ անըզգամ ժողովրդէն.
Վա՜յ դոցա. որ ոչ ծանեան զփրկիչ բազուկդ իմ զօրաւոր.
Զոր պարզեցի ես յաշխարհ առ 'ի փրկել ըզմարդկան ազգ.
Այլ հատանել հնարեցան. մինչ վերածել դու կամէիր.
Իւրեանց յանձանց հեղօր Թաղացուցեալ զինքեանս 'ի բաց.
Յերկիր կործանեցան եւ մերժեցան 'ի ձեռանէդ։
Անմեղին ըզպատարագն ոչ յամեցից, տեսից փութով,
Մերձ եմ ես արդար առնել զքեզ առաջի քո դատողացն.
Առ այդչափ մեծութիւն ծառայելոյդ մարդկան՝ սիրոյդ։
Որ ըզքեզ չարչարեցին՝ հնազանդին շուտով լիցին եւ ըզձորձն.
Կերիցէ եւ ըզմոխին ցեց մեծամէծս պատուհասից։
Տաց ըզչարս վաղվաղակի եւ փոխանակ գերեզմանին.
Եւ պատիժըս մեծամեծս ընդ քո մահուան անպարտականի։

Իշխանեմ, ես իսկ ձեռամբ սրբեմ ըղձերըս քո, Որդեակ,
Դու ողջանաս, եւ նորանշոյլ մարմնոյ հագցեմ քեզ փառաւոր։
Ո՛չ Թողից հըզօր ոգւոյդ կայ 'ի գործոյս վըտարանդի,
Քանզի, դու ոչ տեսցես զերեզմանի որդն այն կերիչ.
Այնպէս ողջ առնեմ ըզքեզ, միայն Թողում յոտս եւ 'ի ձեռաց
Կարմիր կայլակս գեղեցիկ գնչան վիրացդ արիւնաներկ.
Որ տեսանեն Թերահաւատք, եւ հաւատան խաչեալ Փրկչին։
Բեր համբուրեմ ըղձերը քո, որ 'ի խաչին հընձան հարեր,
Հարեր միայն, պղնձէ Որդեակ, եւ կոխեցեր ըզԹշնամին.
Որ յայդ կարծ, Մանուկդ իմ քաջ, ձիաւորեալ ես զօրուԹեամբ.
Էջ ես վայրաջդ 'ի սառն երկիրդ. զհետ իշխանին խաւարական.
Մտեալ 'ի տունն զանձու նորին, կապեցեր զհզօրն աշխարհակալ,
Առ զաւարն 'ի գերողէն, դարձար առ իս երամովքն.
Աւասիկ պատրաստեմ նոցա տեղի եւ օԹեւան,
Եւ քեզ զերապատիւ գահ. ընդ ինձ իմ զօրուԹեան.
Եւ ձեռս դնեմ ըզԹըշնամիսդ 'ի պատուանդան քոյդ ոտից.
Որ փոքր ինչ խոնարհ ցուցեր քան ըզհրեշտակս առեալ մարմնով.
Բարձրացցիս քան ըզնոսա փառօք պատուով պըսակեալ.
Իշխան եւ Թագաւոր լիցիս հանուր ձեռակերտաց.
Տիեզերք ամէն ընդ քո ոտիւք կացեալ հնազանդեսցին.
Եւ տաց քեզ մեծ անուն եւ քան զամէն անուն 'ի վեր.
Ում երկինք երկիր ողջոյն ծունր 'ի խոնարհ կրկնել եկեսցեն։
Այսպէս ահա մարտակիր, Մանուկդ իմ քաջ եւ յաղԹական.
Ցայդ 'ի յաջմէ Աթոռանդոյդ փառաւորեալ լիցիս դու յաւէտ.

Մտեալ էր հրնչել ժամ իններորդ, ծարաւածեալ էր կենաց Աղբիւրն
Որ 'պարտիզէն մինչեւ 'ի խաչ, վաստակեալ էր. խաչին մըշակ.
Որ 'ի վիմէն ջուր եհան, արբ զօրացաւ Իսրայէլ.
Ծարաւի եմ, ձայնը խընդրէ, նա 'ի ձեռաց ապերախտացն։
Զեն սիրոյ այլ եւս քեզ, Տէր, ոչ ջուր, ոչ հաց եւ ոչ ինչ.
Առ դու քո վերջին բան, Թող վերջանալ խաչին մըշակ.
Զէլի էլին կարդաց Յիսուս, ձայն 'ի խաչէն հնչեց յերկինս.
Էջ խոնարհեցաւ, Հայրն առ Որդին զվերջին ժամն,
Զաչըս յառեց անդ Յիսուս. Քեզ աւանդեմ ըզհոգիս.
Եւ միայն քեզ, Աստուած Հայր, խաւարն եկին յիս ոչ ինչ.

Պահ մի պահեա՛ զայդ աւանդ մինչ ես դառնամ յաւարէն.
Յուդայի հզօր առիւծն ձայն արձակեալ մռընչեց.
Հան զհոգին, առ գրկեց Հայրն, զոհըն զենաւ 'ի խաչին.
Հակեալ ըզգլուխն 'ի խոնարհ՝ մեռաւ Յիսուս, լըռեցան բանք.
Գայր ձեպով սատան իշխան մեծ գերեվարն Ադամորդւոց.
Ասէր խուզեմ ըզՅիսուս, եթէ գըտից մեղաց ինչ բան,
Զհոգին կորզեմ 'ի Հօր ձեռացն եւ պաշտպանեմ զիրաւունս.
Խուզեցի, խուզեցի, չգտի եւ ոչ զփոշի մեղաց.
Երեւոյթն էր Ադամորդի, այլ զօրութեամբ Աստուած էր նա.
Յորդանանէն մինչեւ 'ի խաչ լըտեսեցի զնորա հետս,
Ուղիղ էր իւր ճանապարհ, կեանք սուրբ եւ անարատ.
Ի վեց հազար ամաց հետէ ես չ'գտի մարդ մի նման.
Զոր ինչ տեսի՝ զայն վկայեմ, միթէ կարծիմ ես Քրիստոսեան.
Ո՛չ, քաւ այդ յինէն, զի հակառ եմ եւ յամառ.
Ո՛չ, ես չեմ հաշտ ընդ Յիսուսին, ուխտն իմ անհաշտ է յաւիտեան.
Ես գիտեմ, հզօր հոգին մըտեալ 'ի տուն իմ աւարէ,
Փութամ փակել ըզդրունս բանտին եւ ամրացեալ պահեմ զգանձն.
Զոր յԱդամայ օրէն ցայսօր ես կուտեցի պէս պէս հնարիւք.
Ինեւ մահ մըտաւ յաշխարհ, ես մեռուցի ըզմարդն անմահ.
Գերեցի զոգիս մարդկան. իմ են այդ գանձք իրաւամբ.
Ո՛հ, ես թողում որ այսօր Նազովրեցին տանի յաւար.
Եւ զինչ լինի ապա վախճանս, ո՛հ, թշուառանամ, թշուառանամ.
Եւ միայն մնայ ինձ բաժին՝ խաւար երկրի ժառանգութիւն.
Եւ հուրն այն յաւիտենից, որ պատրաստեալ է 'ի վաղուց,
Վասն իմ սատանայիս եւ Հրեշտակացըս համօրէն.
Ես ապըստամբ եմ Բարձրելոյն, իմ դատաստան վճիռն այս է.
Այսպէս ասաց սատան չար, շոգաւ եկաց առ դրան բանտին.
Հերիք է բանիցըս ողբ 'ի Գողգոթայ գերաշխարան.
Արդ՝ անկեալ Սիօնի Մանկունք, առ պատուանդան խաչին ողբոց.
Հաւատով երկիրպագցուք իբրեւ 'ի նմա խաչեցելոյն.
Եւ ապա իջեալ անդուստ 'ի վայրըն սուրբ Պատանատեղ.
Անդ երգեսցուք ըզպատանիլն եւ ըզթաղումն կենդանւոյն.
Ում ըսպաս մատուց Յովսէփ, որ աշակերտ էր Յիսուսի,
Որ տեսանէր 'ի ծածուկ եւ հաւատայր նըմա հոգւով.



Զէր նա կցորդ խորհրդոց նենգաւորացն ատեանապետն.
Իշխան էր եւ նախարար, այլ արդար էր եւ բարեգործ։
Մինչ աշակերտքն թագուցեալ եւ երկեալք, ոչ իշխէին,
Սա եւ եթ յիշեաց ըզՏէրն, որ 'ի խաչին մեռեալ մնայր.
Ել 'ի դուռն ինքն անվեհեր 'ի բաց եդեալ զահըն Հրէից,
Փութով եւ եկն յԱրիմաթեայ, մուտ համարձակ առ Պիղատոս։
Գիտե՞ս դու քաջ, ո՛վ դատաւոր, տէր քանիւն իմաստուն.
Զի ապաշնորհքն եւ զանմեղ զայն սպանին ազգ մեր նենգիչ.
Զանմեղն առ նախանձու քեզ մատնեցին իբրեւ խռովիչ.
Զնա բարբառով կշտամբելով՝ բազում բարձին առ քեզ Դատաւոր.
Լսին զամենայն ապաղակել, ո՛հ, մահապարտ յուցին զԱրդարն։
Մինչ դու յաւէտ ձանձրացար 'ի խլրժանիցըն խառնաձայն.
Եւ 'ի Դպրաց, Քահանայից, որ զաչէքն բարձր ըզդա.
Ուստի եղեր դու յանդիման ժողովրդին լուացեր զձեռս,
Քաւեալ եմ ասացեր, եւ յարենէ Արդարոյդ,
Հուսկ ապա. եւ տուր խաչել, եւ թիւրեցին զքո դատաստանն։
Արդար էր Նազովրեցին եւ անպարտ 'ի կեանս իւր.
Ո՛չ ոք լուաւ, ոչ ոք ետես եթէ Յիսուս մեղս մեղաւ.
Եւ ինքն ասէր, ո՛վ կարէ զիս, յանդիմանել վասն մեղաց։
Ծանուցաւ Որդի մարդոյ, այլ ինքն Աստուած էր ճշմարիտ,
Այսմ վկայեն նորա զարմանագործ սքանչելիքն.
Եւ թէ զի՞նչ գործեաց Յիսուս՝ պատմեսցեն քեզ աստ, ո՛վ իշխան.

Նա բժիշկ էր տկարաց դեղոց, ցաւս բառնայր միայն բանիւ.
Քայլ առին կաղքն նովաւ եւ լոյս տեսին աչքն կուրաց.
Ձայն առին խուլ ականջք, բարբառեցան լեզուք համերց,
Ձերբանայթամ անդամալոյծն, եկաւ գրկեաց Պրօպատիկէն.
Թողում թէ քանի քանի նա ըզմեռեալս յարոյց.
Դեռ երէկ զՂազարոս 'ի մեռելոց կոչեաց 'ի կեանս.
Այս հրաշից նորա պէս պէս ականատես եմ, ով իշխան.
Ես վասն այն աշակերտիլ նորին սրբոյն յօժարեցայ.
Մինչեւ ցայժմ իբր 'ի ծածուկ, այլ յայտնապէս այսուհետեւ.
Եկի ես աստ տեսնել փառքն խաչեալ Աստուածորդւոյն.
Նոր գերեզման ունիմ պատրաստ 'ի պարտիզի իմ սեպհական.
Անդ թաղեմ զիմ Վարդապետ, քանզի չունի նա գերեզման.
Տուր ուրեմն, խնդրեմ 'ի քէն զմեռեալ մարմինն նորա 'ի պարգեւ.
Պատեցից արժանապէս եւ թաղեցից ըստ պատուոյ.
Ո՜հ, որչափ մօրն նորա անհուն ցաւոց դիւր տաց եւ զէթ.
Որ առ խաչիւն թալկացեալ ալէկիզի Որդւոյն 'ի տես.
Լսէր յօժար Պիղատոս կոչէր անդէն զհարիւրապետն.
Զարմանայր ընդ վաղամեռ լինել կամաւ մեռելոյն,
Եւ ընդ մեծ հրաշիցն դէպ՝ ցուցեալ 'ի ժամ վերջին շնչոյն.
Ուստի սիրով շնորհէր զմարմինն այն հայցողին մեծափառին.
Զի յայնժամ սրտին ըղձիւք փութայր Յովսէփ ածել պատանս.
Եւ իշխան Նիկոդիմոս բերէր զմուռս եւ զհալուէս.
Երկոքին Քրիստոսասէրք 'ի Գողգոթա գլուխ ընթացեալք.
Երկիւղած եւ ջերմ ոգւով մերձեալ 'ի խաչն Աստուածային.
Զեղելոյն փառն իմ անէծ՝ առին 'ի վայր զկախեալ մարմինն.
Այսր ահա բերին, Մանկունք, եւ ըզլիճս տարածեցին.
Առ գլխովն կայր Յովսէփ եւ յոտից կայր Նիկոդիմոս,
Աստի ու անտի՝ Մարեմանք եւ Մայրն իւր ուշակորոյս:
Ոմն ըզծակեալ ձեռսն համբուրէր, եւ ոմն զոտս փիրապայց.
Եւ այլ ոմն արիւնաման մարմնոյն զվէրս լուացեալ սրբէր.
Իսկ վշտալին Մարիամ որպէս անկեալ աղէտահար
Ի վերայ գլխահար եւ գեղաթափ դիմաց Որդւոյն.
Ի վերայ լուսաւորիչ եւ կափուցեալ աչացն, ա՜հ.
Անբաժանն 'ի նմանէ խնդրէր լինել անդ 'ի մահահանն

Ո՞ տայր նըմա աջ այնպէս ընդ մի պատան դնիլ ընդ Որդւոյն.
Կենդանեացն ՚ի գերեզման թաղիլ երկուցըն գըրկախառն։
Որ յայրին ընդ հրաշալոր ծնընդեան իւր անախտ հրճուէր հոգւովն,
Ի մսուր եդեալ խանձարրապատ՝ մանկիկըն լայր, ինքըն ցընծայր,
Տեսանէր, աւա՜ղ, ըզնա մեռեալ տատէն. իբրեւ ըզմարգ,
Խանձարուրին փոխան պատան եւ ընդ մըսրոյն՝ ո՜հ, գերեզման։
Այլ Մայրըն լայր աշխարհ, ցընծայր հոգւով՝ մեռեալ Որդին.
Որ գնացեալ էր աւարտել զգանձըս հոգւոցն ՚ի գերեզմէն։
Զի՞ ասեմ կին Քաղաքեան ըզՄարեմանցն ասեմ, մանկունք,
Որ կուսին եղեալ ողբակից ըզտարփալոյն մահ սրբոյին:
Յարտասուաց նոցին թափեալ՝ թանայր մարմին Յիսուսի։
Յուշ լինէր աստանօր. Մարիամու Մագթաղինեին,
Բանին խրատուոյ, որ զհեզմանէ իւղոյն ազնիւ,
Ի գլուխ պարտեաց բաշխողին՝ գոլ նըշանակ նորին թաղման։
Հազիւ ըզգաստըն Յովսէփ զինքըն յայրական սիրտ պընդեալ.
Ողոքէր ըսփոփելով զեղերական դասս կանանցն.
Եւ ըզմարմինն անապական ըստ օրինի զմուռնելով
Ի մաքուր պատանալով եդեալ պատէր զանպարագիրն.
Զլոյսն ՚ի պատան ծրարէին, որ շլոյս անդէն ցոլայր ՚ի դուրս։
Ո՞ւմ փարէին ըզպատան, որ ըզմահու պատանք պատուել նա մեռաւ.
Զո՞ դըմէին ՚ի գերեզման, մինչ ընականո՞ կեանքըն ՚ի հող.
Այո՛, ինքն իսկ գընաց ՚ի գերեզմանս եւ մըքնեցաւ ՚ի տապանին.
Զորմէ ասաց արդ արըն Յովբ, մինչ զԱստուծոյ ճառէր բան.
Որ երէկ ըզՂազարոս ՚ի թաղմանէն կոչէր ՚ի լոյս,
Եւ լուծանէր ՚ի նմանէ զերիզապինդըն մահազգեստ.
Ինքն այսօր ՚ի մահացուած, բայց է, պատան ըզգեցոյր։
Որ Աստուած եւ պարգեւիչ անբաւ բարեացըն ճանաչէր.
Եւ խուսանելով արարածոց բաշխէր ըզձիր առատապէս.
Ո՛վ, ՚ի ծանօթ պարգեւ խընդրեաց ըզնա Յովսէփ.
Նա որ զԱստուած կարդացեալ պատմուճանաւըն լուսաշուք.
Եւ զի՞նչ ընդ այն ըզգեցաւ, ո՜հ, ըզկտաւ անարգանութ.
Եւ որ նըմին անդ ըզհոգի եւ շունչ շնորհեաց կենդանատու,
Ի մարմնի անշընչացեալ՝ համբերեաց ասա ընդ մեռեալս.
Զի նորին անշընչութեամբ՝ շունչ եհեղցէ մեռեալ յանկարծ.

*Որ 'ի շնորհէ ցամաքեալ՝ սփռեալ էաք 'ի դաշտ երկրիս,*
*Անդրէն յօդեալք 'ի մի կենդանացաք հրաշապէս.*
*Զայս հոգւովն ածեալ 'ի դաշտն՝ ետես կանուխ Եզեկիէլ։*
*Ո՛վ գործոյս Աստուածահրաշ յաւէտ 'ի մէնջ անճառելի։*
*Շունչ շնորհեաց անշնչութեամբն 'ի կրկնակի Արարչութեանս*
*Ոսկերացս հողանիւթ՝ կենդանութիւն Մեռելութեամբն։*



# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԾՐԳՈԾ

Ընդ կանանցն իւղաբերից յարձեալ զիւղ հաւատոյ՝ հրաւիրէ Մանկտին 'ի Գերեզման Քրիստոսի. ուր զվերջին գործ Տնօրէնութեան նորին յուշ ածելով՝ ափշի զարմացմամբ:

Իջանէ Քրիստոս հզօր Յաղթողն 'ի դժոխս աւար առնուլ զոգիս արդարոցն. արհաւիրօք ընկճեալ իշխանին խաւարասէր՝ խուճապի տագնապաւ և Թաքչիլ կամի յերեսացն Ահաւոր:

Աստ հոգիք արդարոց յօժարին իւրաքանչիւր առ այցելու Փրկիչն յառաջ բերելով զբանս գուշակութեանց իւրեանց:

Եւ ապա ապստիչն զփրկութեան զաջն իւր առ Ադամ և առ բոլոր Նահապետս և Մարգարէս կարկառեալ՝ խօսի այցելութեան բանիւ. և զիւրաքանչիւր նոցին որ վասն իւր գրեալ գուշակութիւնս 'ի մէջ բերելով՝ աւետիս տայ նոցա ծնութեան և քարոզէ զյաղթող փրկութիւն իւր: Ցեա՛ ամենեցուն խօսի առ Դաւիթ և ակնարկէ Նմա լինել պարագլուխ ազատեալ դասուցն և հարկանել զտաւիղն օրհնութեան մինչեւ յերկինս: Սատանայ ողբայ զաւարն, և զկործանումն իւր դառնապէս եւ յուսահատ:

Փոխեալ աստ Հրաւիրակին զեղանակ երգոյն՝ ընդ Դաւթի հարկանէ զուրախալի քնար և զյաղթականին Աստուածահրաշ եւ փառաւոր հանդէս Յարութեան երգէ հռչակելով՝ պէսպէս օրհնակօք խորհրդոյ նախագուշակեալ:

Գոհութիւն փառատրութեան առ Հայրն որ յաղթեալ 'ի սիրոյ և 'ի գթութենէ իւրմէ՝ ոչ խնայեաց մատնել զՈրդին վասն մեր 'ի մահ:

Մատուցանէ ապա զնոյն շնորհ գոհութեան առ Որդին, որ ոչ շատացաւ մարդ եղանիլ միայն 'ի կուսէն, այլ և անբաւ հեզութեամբն տարաւ այնչափ վշտաց դառնութեան, զորս մի մի վերստին յիշատակեալ՝ վերջացուցանէ:

Փրկութիւն արարածոց վէմըն Քրիստոս Սիոնի հիմն,
Ի նորափոր վիմին եղաւ եւ այն պարգեւ էր Յովսեփայ,
Եւ զոր օրհնեն զօրք Երկնից՝ 'ի զինուորացըն պահպանի։
Որ ծածկոյթ էր մերկութեան հնոյն Ադամայ 'ի դրախտին,
Ադամայ որդին Յովսէփ ընդ այն պատան տայ տրխուր։
Անմահութիւն մահկանացուաց խոնարհեցաւ 'ի հող մահու.
Որ յանմատոյց 'ի լոյս բնակէր եմուտ մարմնով 'ի սիրտ երկրի։
Արեգակն արդարութեան եղաւ 'ի գբի ստուերականի.
Որ ճառագայթ էր փառաց Հօր նա ծածկեցաւ 'ի մէջ երկրի։
Կուսածին մարմնով Յիսուս դընի 'ի կոյս Գերեզմանի,
Եւ գլխոյ երկանց լուծիչ, ով, ըմբռնի յերկունս մահու։
Արարիչն արթուն բնութեամբ՝ ննջէ 'ի մէջ մահացելոց.
Որ զԻսրայէլ պահէր անքուն, զինուորք ըզնա պահեն անքուն։
Յընծութիւն հանուրց էից արարածոց Յիսուս Բանն,
Որ ցնծայր առաջի Հօր մինչ զարարածս ստեղծանէր.
Ո՛հ, արտասուեցաւ որպէս մեռեալ 'ի մտերիմ սրտամազգեցիցն,
Եւ որ բուրէր անմահութիւն ազգի մարդկան ըղկենաց բան.
Խընկեցաւ անոյշ հոտով 'ի զգաստ կանանց Իւղաբերից։

Այսպէս երգեց այսպէս պատուեց զԹաղումըն Փրկչին Սահակ պարթեւն,

Այլ ո՞ տայր ինձ գէթ մի նուագ եւս, ա՜խ, երթայի յանշունչ մատուռդ,
Համբուրէի համբուրէի Գերեզմանիդ այն սեւ քար, ով Տէր Սահակ.
Զմիտս իմ տարար, Հօրն վեհ, գաւանեալ երգեմ զԹաղման կարգ։

Տէր հրճուեալ ընդ քո բան, որ տանի զիս 'ի զարմանս,
Զանքննելի վերջին այս գործ տեսանելով ափշեալ մնամ.
Ո՞ւր երկինք անմահութեան, ո՞ւր Գերեզման մեռելութեան,
Եւ զի՞ անմահն Աստուած 'ի Գերեզման մահու եկաց.
Եւ առ ինչ մահու լուծիչն մտաւ մահուն 'ի բերան։
Միթէ Յովնա՞ն էր Յիսուս, որ կէտն եկուլ ընդ 'ի փոր.
Զքեզ ծանուցեալ 'ի Սինայէն, պատմէ Մովսէս, Տէր ահաւոր.
Ըզկարմիր ծով պատառեցեր ըղփարաւոն սուզեր յանդունդս
զխորեմ, Տէր.
Այլ արդ եւ դու 'ի ծով մահուն ընկղմեցար մինչեւ յանդունդս,
եւ ով զքեզ հանէ 'վեր.

Ջերմն Հօր ձեռըն Հօր, որ զամենայն կրէ զօրութեամբ։
Զմեզ գիտեմ, ծանրագոյն էր, գլորեաց քո Հայր հզօրին ՚առն,
Որ քանդես, յաւէր ածես եւ ըղձըղօրն կապես անլոյծ։
Հրաշալի վէմ, յանուէս լեռնէն հատար անկար ՚ի Բեթլեհեմ.
Ըղձեմք ծընաւ կոյսն ՚ի յայրին, գլորեց ըզքեզ ՚ի մըսուր.
Տեսին ըզքեզ փոքրիկ Մանուկ, այլ մեծացար դու յոյժ յոյժ.
Վէմըդ Թագուց գլուխ ՚ի մարմին եւ կարծեցին թէ սոսկ մարդ էր.
Այլ ըղձեմք անարգեցին Իսրայէլի տան շինողք.
Վարեցին եւ գլորեցին բերին հանին Սիոնի ՚բլուր։
Վէմն ծանր էր ծանրագոյն որպէս հանին խաչին ՚ի գլուխ.
Եւ ՚ի խաչէն գլորեցին փըշաւ մինչեւ մահուան ՚գուբ։
Գլորիչներ խորհեցան, ասեն միմեանց փակենք ըզվէմն.
Ամուր փակենք, որ ճնշումի եւ չելլոյ ՚ի տեղւոջէն.
Ո՜հ, թէ յառնէ վէմն հրաշքեք՝ անշուշտ քանդէ զՅակոբայ տուն։
Ափսոս, հազար ափսոս, որ չըճանեան զմիմին խորհուրդ.
Զի վէ՞մն էր այն միացուցիչ Իսրայէլին, հեթանոսին.
Ի յերկուցն ըղձի Սիոն շինել հոգւով ճշմարտութեան։
Տաճար տաճար տացին, մեզ չէ պիտոյ Նոր Սիոն.
Միթէ Թագաւորք այնչափ զոհից առատութիւն չահն ու վկայանք;
Թէ նոր Սիոն հոգւով կազմի, զի՞նչ է ապա մեր բաժին։
Այսպէս խորհեցան եւ դատեցին անմիտ շինողք.
Եւ զարմացան երբ տեսին՝ վէմն այն եղեւ գլուխ անկեան։
Թողումք զայս, ով մանկունք. զԹագաւորն Տեառն եւ Գերեզմանն,
Թող սպահ մի աղբնի մարմնով ՚ի տապանին. Տէրըն մեռեալ.
Նա հոգւովն ամենազօր էջ ՚ի ներքին բանտըն խաւար.
Գնացցուք և մեք ըղձեալ հոգւոյն, տեսցուք թէ զի՞նչ առնէ հզօրն.
Շարժեցաւ վէմին կնքեալ Սիոնի ՚լեռնէն դէպ ՚ի դժոխս,
Գլորելով թաւալելով ահեղ եւ մեծ էր սրսաումն.
Սարսեցաւ խլթառն մահու, սասանեցաւ Սանդարամետ.
Վէմըն ջարդեաց եւ տապալեաց դժոխոց դուռն քանդեաց հիմքերն.
Միթէ հիւսի էր նա ձեւան, որ ՚ի լեռնէն փրլթի փոքրիկ.
Գլուխ գլորի մեծանայ եւ ձիւնակոյտ լինի ահեղ լեռնաչափ.
Տապալէ զինչ կայ առաջ. եւ կործանէ զամէն շինուած.
Ասեն թէ յառաջընթաց հոգւոյն հիւսն ուժգին է յոյժ.

Որ մինչ շնչէ գայ Թափոր, ծառք հին աւուրց տապալին վայր.
Քաւ թէ, Տէր իմ, զքո զօրութիւն չափեմ ես առ ընդհիւսոյ ձեռանս:
Այլ զի՞նչ արար մահու իշխան, որ գնաց փակել զդուռն իւր բանտին,
Արհամարհօք անհնարին ըմբռնեցաւ հարաւ 'ի գող.
Խուճապէր տագնապաւ կամէր Թագչիլ յերեսացն,
Եւ զերթ օձ գալարէր, սողայր առ անդ եւ ա՞ռ փախչէր.
Թէ յերկիրն՝ անդ էր Հայրն, եւ թէ 'ի դժոխս՝ մօտէր Որդին.
Ո՞ տայր նմա տեղ ուր Թագչէր, որ անցանէր այս բարկութիւնս:
Գերահաճն աւարառուն մտաւ 'ի ներքս համարձակ,
Եւ բացեալ առաջի զբունսն փակեալ յաւիտենից.
Որ նստէին 'ի ստուերս մահու կապեալ 'ի բանդ խաւարչտին,
Տեսին յանկարծ լոյս ծագեալ եւ 'ի մէջ լուսոյն՝ Փրկիչ.
Դաւիթ տեսեալ ծանեաւ զԱրդին վաղեց զբրկեց եւ համբուրեաց.
Ասաց եկիր, մէ իմ Փրկիչ, եկիր փրկել զմեզ 'գերողէն,
Արդ՝ ես ցընծամ 'ի բանս քո, որպէս այն որ գտանէ աւար բազում:
Սողոմոն մտանէր անտառ, ո՞վ երջանկութիւն իմ է Ծագումն.
Տեսէք, կարմիր եւ սպիտակ է եւ նման է խնձորի.
Որ յանտառի խնձորենեաց կախին 'ի վայր կարմիր կարմիր.
Եւ ես ցանկալեաց տեսի հոգւով խաչի 'ծառէն կախեալ այնպէս.
Սպիտակ Մարմինն բուռն զուգով կարմրացած խնձորն այնպէս.
Ես մեղապարտ եմ քո առաջ, ով որդեակ երջանկին,
Չի գնացի ընդհետ կանանց եւ պաշտեցի ըղձութիւնս նոցին.
Եւ գիտեմ Տէր, խնամածուն եմ, 'ի դժոխոց լուայ զքո բանդ;
Թէ չ'եկն կոչել զարդարս, այլ առաւել զմեղաւորս.
Ես մեղաւոր եմ, մեղաւոր եւ զիս կոչեա ընդ Արդարոցն:
Եսային դիտեց հեռուստ, կարմիր արեամբ զներկեալ զգեստն.
Գոչեց, նա է այն է Փրկիչ, որ ըղձաշէն հնձան կոխեց.
Եւ եկն արդ սրբութեամբ կոխել բարձանս եւ ըղձմունս:
Ո՜վ, Յեսսէի ծառին է այն եւ զաւազան եւ շառաւիղ:
Որ 'ի Գուսէն ծլեալ մարդ, ընդ մեզ Աստուած Էմմանուէլ.
Ցնծացէք ծանծաղեալ ոգիք, որ 'ի մահու ստուերս նստիք.
Լոյս ծագեցաւ մեզ Փրկիչն, ելէք 'ի լայն ազատութեան.
Երեմիա 'ի գբի ներքնում, դեռ տղայր նա զԵրուսաղէմ
Ասաց Տէր իմ, աչքոյն քո լուայ եւ զմտ լացեր զԵրուսաղէմ,

Գիտեմ, ով Տէր, ես յինդ արկայ 'ի գուբ տըղմին պառապանկաց,
Զարագոյն եւս արկեալ եմ աստ 'ի խորս անդունդ եւ անել,
Եկիր 'ի վեր հանել դու զիս, ո՛ ազատիչ խաչիդ արեամբ.
Եւ ես Նըստիմ ընդ հովանեաւդ, ով դու օծեալ Տէր իմ Քրիստոս:
Եզեկիէլ ուշով դիտեց, յուշ քեզ, ով Տէր, ճանաչեմ զիս,
Բաբիլոնի մարգարէն եմ, որ զիս ածեր մեռելոց 'դաշտ.
Հարց արարեր, Որդի մարդոյ, կենդանասցին ոսկերքդ այդ.
Շուարեցայ, զի՞նչ ասել, Տէ՛ր Տէ՛ր, դու զայդ գիտես միայն:
Շունչ մի շնչեա՛ց, շունչն 'ի քէն էր, կենդանացան ոսկերք մեռեալք.
Եւ արդ շընչեաց, Տէր զօրութեանց, ազատութիւն գերեալ հոգւոց.
Եւ 'ի շընչէդ մեռցի սեւ օձն, խափանեսցի մահու խայթոց:
Դանիէլ ժամադիր էր, զի լըրացան իւր ժամանակք.
Հոգւով անձկալ ապասէր նըմա, որ նըման էր Որդւոյ մարդոյ,
Որ գայր ընդ ամպս առ Հին աւուրցն եւ զայս ետես 'ի Բաբիլոն.
Հոգին հըրճուեց երբ տեսաւ, որ հասեալ կայ Որդին մարդոյ.
Մտ գընաց եւ փարեցաւ զոտիւք Փրկչին, գոչեց ձայնիւ,
Օրհնեցէք գերեալ հոգիք եւ օրհնեցէք բարձր արարեք.
Եկըն եհաս հզօր Առիւծն, որ 'ի տանէն Յուդայի,
Հանել ըզմեզ 'ի գբոյ աստի 'ի բերանոյ չար առիւծուցն.
Եւ զատամունս նորա փըշրել, խըցել ըզգուբ գըժոխոց:
Անդ էին երեք Մանկունք բոլորեցան 'ի շուրջ Փրկչին.
Ո՛ն օրհնեցէք, Անանիայ, Ազարիայ եւ Միսայէլ.
Օրհնեցէք որ էջն առ մեզ անդ 'ի հնոցին Բաբիլոնի.
Թօթափեաց զհուրն 'ի մէնջ եւ զարմացոյց ըզթագաւորն.
Որ ըզչորրորդըն տեսանէր նըման Որդւոյ Աստուծոյ:
Օրհնեմք ըզքեզ խաչեալ Փըրկիչ Աստուածորդի.
Որ 'ի հնոց գեհենին իջեր փրկել զգերեալ հոգիս.
Ո՞ւր էր Յովնան, աղաղակէր նա 'ի պորտոյ վիշապ ձըկան.
Տէ՛ր, սուր հրաման, որ մօտ գամ Քեզ, չ'կարեմ ինքնին ես խըլըտել.
Լսեմ աստի, որ Մարգարէք իւրաքանչիւր զիւր բան պատմէ.
Դոքա չ'գիտեն զդժոխոց բան, եւ ես հմուտ եմ քաջապէս.
Զի Ես բնակիմ 'ի միջավայր Մայրաքաղաքըն դըժոխոց,
Ի փոր կիտին մեծ եւ անհուն, որ զհամօրէն աշխարհ էկուլ.
Իմաստասէր աշխարհագիր տեղագծողն եմ դըժոխոց.



Ես յայն օրէն վարժեցայ, երբ յերեսաց քոց փախչելով,
Հրամայեցեր եւ կէտըն մեծ զիս ըմբռնեաց ՚ի ծովուն,
Եկուլ եւ տարաւ զիս մինչեւ ՚ի խորս անդնդոց։
Անդ տեսի յաւիտենից դրաւնըս փակեալ յերկաթի նիգս,
Անդ ուսայ թէ կան ՚ի ներքս ընտրեալ հոգւոց գանձք բազում.
Զոր ՚ի դրախտէն մինչեւ ցայսօր գերի տարաւ իշխան մահու։
Ցիշեմ, ով Տէր, զի ես յայնժամ ՚ի ձկան պորտոյ ձայն իմ բարձի,
Ի նեղութեան խմում անդ, զքեզ յօգնութիւն կարդացի.
Ո՜հ, իցէ թէ յաւելից գալ ՚ի տաճար քո սուրբ ուխտ։
Լուար, Տէր, հրամայեցեր եւ կէտն եթուք զիս ՚ի ցամաք,
Գնացի քարոզ ՚ի Նինուէ, կատարեցի զքո մեծ հրաման,
Դարձայ, մեռայ եւ թաղեցայ ընդ Մարգարէսն առաջին.
Գիտացի թէ միանգամ իջի ՚ի դժոխս, եւ այն բաւ էր.
Այլ ինձ վայ եւ հազար վայ, կրկին սուզայ ՚ի մահուն ծով.
Կէտն այն մեծ կուլ զիմ հոգին, դարձեալ մտայ ես ՚ի փորն.
Անդ զերիս տիւս զերիս գիշերս միայն մնացի՝ հաներ դու զիս.
Միթէ մնամ աստ յաւիտեան, Քոյդ փրկութեան սպասէի, Տէր.
Ես լուեցի զբան աւետեացդ, յոր օրինակ բերեր դու զիս,
Որպէս Յովնան ՚ի փոր կիտին եւ ես ՚ի սիրտ երկրի թաղիմ.
Արդ՝ լրացան երեք աւուրք, քո Յարութեան ժամն եհաս,
Հազարամեայ գերեալ հոգւոյն ազատութեան ժամն եհաս,
Քառասայր Խաչիդ սրով հար պատառեա զվիշապին փոր,

կորզեալ 'ի դուրս 'ի կըղզանկէն, զհոգիս ընտրեալ արդարոց.
Եւ 'ի վերայ մահու աղտոյն կանգնեա ըզխաչ քո յաղթանակ։

Ամբակում լուեալ անդէն զձայն Յովնանու աղերսագին,
Ցոյտ եկեալ եկաց հանդէպ յաղթող Փրկչին եւ ասաց,
Ես Ամբակումն եմ ճանաչէ՞ս, փոքրիկ գուշակ քո բանին,
Որ Սաղիմէն 'ի Բաբելոն ես ճաշ տարայ Դանիէլին.
Փոքրիկ եմ, այլ տեսի ես ըզգործըս քո մեծամեծս.
Երկեայ եւ գոչեցի, Տէ՛ր, ըզլուր քո լուայ ես,
Զարհուրեցայ, զի զքեզ տեսի 'ի մահու խաչ բարձրացեալ.
Այլ ցընծացի՝ երբ կարդացի խաչիդ դրօշակ՝ մահ եւ կեանք.
Մահ սատանին և կեանք մարդկան, որ փրկութեան քում՝ սպասեն,
Մարդիկ յերկրի, հոգիք 'ի դժոխս ազատարար Փրկչիդ սպասեմք.
Մինթէ չգիտէի՞մ ես, ո՜վ Տէր, թէ յերեսաց քո բարկութեան,
Եղեն հարուածք դըժնդակ, դըժոխք հիմնովին տապալեցան.
Ընկրկեցան մահու իշխան, հոգիքն ընդ քեզ 'վեր թռչիցեն։
Օրհնեմք զՔեզ կեանք Յարութիւն, որ անդ շընչեր մեռեալ ոսկերց,
Շընչեալ եւ տաս ազատութիւն մահու դաշտի դերեալ հոգւոցն։

Զաքարիաս եւտես ըզվէրս 'ի ձեռս Փրկչին եւ հարցանէր,
Տէ՛ր, զի՞նչ իցեն վէրքդ այդորիկ, միթէ դու զմարտ մըտէր ընդ մարդ,
Որ այդպէս վիրաւորեալ սրտմտութեամբ իջեր այսր.
Եւ 'ի դըժոխըս ունիս մըտել զնոյն պատերազմ ընդ սատանիքն.

Ո՛չ գիտես, ո՜վ Զաքարէ, Իսրայէլի մարգարէ ես,
Թէ 'ի Հօրէ եկի յաշխարհ զմարդն ազատել 'ի հին չարէն.
Ո՜հ, մարդիկ ո՛չ ծանեան զիս, այլ ընդ չարին կռեցին դաշն,
Վէրս եւ հարուածս ետուն ինձ եւ զազատիչն հանին 'ի խաչ.
Եւ գիտե՞ս թէ ո՛ք էին այդ ապիրատ խաչահանք.
Սիրեցեալ տանն Յակովբայ, որդիքն ըմբոստ եւ ապստամբ.
Որոց ըզվէրս նախ բժըշկել՝ պատուէր առի Ես 'ի Հօրէն.
Դեղ ետու ըզկենաց բան, ո՛չ ընկալաւ տուն Յակովբայ.
Այնպէս մընաց անբուժելի իւր կամակոր յամառութեամբ.
Թողի անդ ըզկենդանիս եւ թող մեռնին անհաւատ.
Եկի կոչել ըզմեռելոց հոգիս 'ի կեանս, որ հաւատան.

Լռեցին Մարգարէք, ծանեան ըզՏէրն 'ի նշանացն,

Ծանեան եւ զնոյն տգետք եկեալ հասեալ 'ի փրկութիւն,
Զոր յԱդամ նախ կորուսեալ ձայն արկանէր տարաշխարհն.
Ո՞ւր ես, Ադամ, այլ մի Թաքչիր, որպէս յայնժամ ընդ Թզենեաւ,
Պատկառեալ ամօթերես, ով նախաստեղծդ իմոյ ձեռին,
Արի որ վաղ ննջես սաստ, ե՛լ եւ կանգնեաց 'ի մեռելոց.
Եւ Արե՛ւ լուսաւոր քեզ յայտնեցայ արդ 'ի բարձանց.
Հերիք եղեւ գեղեցիկ ձեռակերտից իմոյ այդ չափ,
Ի վայրից խաւարականաց կայ փոխանակ դրախտին փառաց,
Եւ ըզքո աւերս վերծարեցի, եղէ որպէս պարտապան.
Զի Որդի եմ ըստ մարմնոյ, Հօրդ ըզպարտիս ես յանձն առի,
Որ ըզքո եւ ծնընդոցդ պատառեցից մահու զմուրհակն.
Դու չըզգաստեցեր ըզպատուէրն Հօր, զոր 'ի դրախտին ետ քեզ Հայրն,
Տե՛ս որպէս հնազանդ Որդին ճըշդիւ զամէնն կատարեաց,
Ընդ արգելեալ պտղոյն ճաշակ, Ես պահեցի ըզքառասուն օր.
Ընդ անիծից քըրտանց եւ փշոց, որ զքեզ անխնայ չարչարեցին,
Քըրտնեցայ, վաստակեցայ, միշտ անհանգիստ, անօթեւան,
Եւ զանիծիցն այն ըզփուշ բոլորեցի գլխոյս պըսակ։
Դու սփածեար մաշկեղինօք ընդ լուսանիւթ պատմուճանին,
Ի դրախտէն արտաքս անկեալ վըճիռ մահու հատաւ քեզ.
Ես Թափեալ սիրով քոյին յերկնից փառացն իմ բնածնի,
Զծառայից կերպ ըզգեցայ՝ ընդ հանդերձից մաշկեղէն.
Անդրադոյն եւ քան ըզքեզ պանդըխտեցայ աղքատ կենօք.
Եւ 'ի վերջոյ որդիքըն քո՝ զիս 'խաչ հանին անարգաբար.
Ցի՞շես արդեօք Թէ մեծապէս Հայրն իմ հոգայր վասն քո.
Եւ գիտե՞ս, զի բնակեցոյց զքեզ յանդիման դրախտին յեդեմ.
Ուստի կենաց ծառն երեւէր եւ դու յառեալ մորմոքէիր.
Ցերջանիկ դրախտէն ըզկեալ՝ նստեալ առ դրանըն ողբայիր.
Ո՞ տայր ինձ դէթ միանգամ պահպան Սերովբէն Թողուր ինձ,
Ես 'ի դրախտ մտանէի եւ քաղէի զկենաց պըտուղ,
Ուտէի եւ լինէի ընդ Հրեշտակաց ես անմահ.
Թափէի զմաղձ մահու պըտղոյն, ո՛հ, դառնահամ դառնահամ.
Ե՛ս եմ կենաց ծառն, ո՛վ Ադամ, ես եմ պտուղն անմահութեան.
Արի, մատի՛ր, եւ ճաշակեա, անմահացիր յաւիտեան.
Ես մեռուցի մահուամբ ըզմահ, զմարդն արարի անմահ Աստուած.

Սերովբէի սուրն վերացաւ, մուտ 'ի դրախտըն համարձակ։
Փութայցիր եւ դու ընդ հետ, ով Նախամայրըդ Եւայ,
Ողջ հայոց ընդ քեզ պարտին զաւակդ ամբիծ Մարիամու
Որ ծնաւ զնա կոյս յարգանդէ եւ արդ Փրկիչ քեզ առաքեաց.
Ես մարմնոյս գործչարարոք առեալ 'ի քո զդստերէդ,
Կոխելով զխաչխանեցի ընդդէմ օձին այն պատրիչ.
Որ պտղովն ցանկալեաւ պատրեալ լինել զքեզ յուսացոյց։
Պարծիր դու եւ բարձրայիր օրհնեալդ խոնարհութեանդ.
Մուտ 'ի դրախտըն երկնային, զոր ապրելոյ խնդիւ ալեւանք.
Ձեռըն քո յիս ձգեա քաղէ զպտուղն անմահութեան.
Ես եմ, Եւա՛, ծառըն կենաց, կուսին պտուղ զմայրդ ազատեաց։

Տիպ Քրիստոսի քոյ Հովուիս, Աբէլ արդար սիրող խաչին.
Մատուցողդ հաճոյական զոհ 'ի զառանցդ անդրանկածին։
Արեամբ քո ես հովիւ լինել հօտին իմ բանաւոր.
Ի վեր թողի զանմոլարն՝ եւ զհետ լինի կորուսելոյն..
Ո՛հ, գոհ զայն 'ի Գողգոթա՝ ես զատն անմեղ ընծայեալ 'ի զոհ.
Ցեղաբարձն իմ ըսպանանի, որպէս եւ դու՝ հարազատէդ։
Թափեալ արեանըդ գոչումն յերկրէ բողոք ամբարձ առ իս.
Հասեալ կամ այսօր աւադիկ ընդ քեզ ընդ այն զատ առնել զժամ։
Վասն արդարոյդ եմ եկեալ՝ եւ դու, կայէն մնացէ աստ։

Թախծելոյն կարի սրտով ընդ կրտսերոյն մահուանն անմայրոյ։
Մխիթարիչ Որդի եղեալ, Սէթ նախահօրդ 'ի կերպարան.
Հաւատով քեզ՝ ես Ադամայ որդի ծննդոյ յերկրորդութեան.
Եւ տես դու նման եմ, Քրիստոս եղէ Որդի մարդոյ,
Դու մխիթար Ադամայ, իսկ ես համօրէն աշխարհի։
Ձեռն 'ի ձեռն տուեալ եկէք, ընդ Ենովսայ նահապետին.
Որ անուանիցն 'ի միջի՝ միայն յուսացեալ կոչել ըզՏէր.
Լուայ յերկնուստ եւ աւասիկ հասի նմին յայցելութիւն։
Առ ընդ քեզ եւ զողջ քո զարմս որդի գրելով Տեառն Աստուծոյ.
Որ երբէք ոչ թիւրեցան 'նդ մարդկան դստերս կայինազարմ.
Այլ 'ի միջոյ որոշել՝ իբրեւ զոգիս յայծեաց՝ եկի.

Դու միայն մարդ կոչեցեալ ընդ մէջ մարմնոց եղեալ մարդկոյ.
Զոգի աստուածատեսիլ աներեւ 'ի քեզ պահեալ միշտ.

Արդար եւ երկիւղած, Նոյ կատարեալ 'ի մէջ ազգին.
Հանգուցիչ եղեր անդէն յանարժան գործս աշխատելոցն,
Եւ կազմելովդ ըղտապան՝ ցուցար քարոզ ամբարշտացն.
Որ ընտանիւքդ ապրանելով՝ սաւմդ, քեզ ոչ հաւատացին.
Ջրով սուզմամբ պատուհասեալ՝ անապաշաւ կորեան յերկրէ,
Վրիպեցան 'ի կենաց, օրհնեալ փայտին արդարութեան.
Որ քեզ յուսացողիդ Փրկիչ եղեւ ազատութեամբն.
Անյուսիցն ամբարշտաց՝ դատապարտիչ եւ պատուհաս:
Քառակոյս եւ ես տապան մի, կերտեցի խաչանըշան,
Ի Գողգոթա կանգնեցի՝ գոլ հանգուցիչ ամենեցուն,
Որ նորին բացեալ թեւով առ հովանեօք պատսպարին.
Եւ յենուն 'ի նա յուսով իբրեւ 'ի նմին խաչեալ Փրկիչ.
Որ յայնժամ 'ի հեղձմանէ ջուրցն ապրեցար դոյզն լաստիւ,
Արդ՝ փրկութեան մուտ 'ի նաւն եւ նաւապետ քո Փրկիչն է.
Թող 'ի հեղձումն դժոխոց մնասցեն ոգիք ամբարշտաց.
Որ ոչ հաւատացին կենաց փայտին ազատութեան:
Ջհայրենիդ յոժար թողեր, պանդուխտ շրջիլ եղեր վասն իմ.
Երբ կոչեցի յերկրէ քումմէ, դու աներկմիտ լուար ձայնիս.
Կորուսեր եւ զտուն Հօր քոյ առ միայնակ զիս գըտանել,
Աբրահամ մեծ նահապետ եւ լի յուսով հաւատացեալ.
Եկի արդ 'ի դըժոխոց կոչել ըզքեզ, ո՛վ Հայր ազգաց,
Ահա զոր դու հայցեցեր՝ արար Հայրն իմ սիրողապէս,
Պատրաստեալ զիս ողջակէզ ընդ սիրելոյդ Իսահակայ.
Ամբարձեր զաչըս քոյին անդուստ 'ի լեառըն Գողգոթա,
Տեսեր զիս թեւատարած մերկ 'ի ծառոյ Խաչին կախեալ.
Եւ որպէս նըման ճիշդ էր, որ քեզ ցուցաւ անդ 'ի լերինն,
Ի Սաբեկայ ծառէն կախեալ խոյն յեղջերաց ընդ Սահակայ.
Որ ցանկայիր տեսանել զԽաչին զենումն եւ պատարագ,
Տեսեր զայն Իսահակաւ, լցաւ խինդ քո եւ փափագ:
Ես քո եմ շառաւիղ՝ զաւակ ծընեալ առ 'ի զարմէդ,
Ինեւ օրհնին ազինք, որ հանդերձեալ են հաւատալ:
Աւաղ, զի քո որդիք անհարազատ 'ի բնութենէդ,
Վարեցան ընդ իս իբրեւ ընդ օտարի եւ թըշնամւոյ.
Հիւր եկի ես 'ի քո տուն, զիս մերժեցին, թողին արտաքս.

Դու զենուլ ըզՄիածինդ, ոչ խնայեցեր վասըն սիրոյս ․
Այլ նոքին զիս ատեցին եւ դատեցին մինչեւ 'ի մահ ․
Ողբամ զու․ զորդիսըն քո, ով Աբրահամ զի մերժեցան յինէն 'ի բաց ․
Հեթանոսք հաւատացին մըտին յերկնից ժառանգութիւն ․
Արի դու ընդ Սահակայ, բազմեաց յերկնից արքայութիւն ․
Բաց ընդարձակ ըզգոգըդ քո՝ թող գան բազմին հաւատացեալք ․
Թող որդիքըն անհաւատ ելցեն 'խաւարն արտաքին ․



Հե՛զ եւ ընդասուն Յակովբ օրհնեալդ 'ի Սահակայ,
Իսրայէլ կոչեալդ յինէն ընդ ժուժկալելդ գօտեմարտիւ ․
Դու զինեւ պինդ փարեցար ուժով ձեռինըդ հաւատոյ,
Քեզ ըզփառս․ այլում ազգի թողուլ երբէք ոչ կամէիր ․
Ո՛չ զինէն բուռըն հարին, որդիքըն քո թոյլ անպիտան,
Թողին առանց․ զիս 'ի բաց՝ ետուն զօգուտն օտարոտւոյ ․
Ոյք ինձ վաղ՝ ըսպասէին որպէս կանխաւ գուշակեցեր ․
Կորիւն եմ ես առիւծու նըման որդւոյդ քո Յուդայի,
Ի նորին շառաւիղէ․ մերընձիւղեալ առ 'ի կուսէն ․
Ելի ես բազմեցայ 'ի քառաթեւ գահն իմ փառաց,
Իջի անդուստ 'ի Գերեզմանն, ուր արդ նընջեմ առիւծանման ․
Եւ ո՞ զարթուսցէ զիս, Հայրն իմ սաստ նընջէ, Որդեակ,
Եւ ես ըզքեզ զարթուցանեմ, հզօր զօրութեամբ փառաւորեալ ․
Յակովբ ծառայ իմ սիրելի, գիտես թէ զի՞նչ ստարի ես ․

Կապեցի զորթոյս ճշգրիտ՝ զէջն ազգիդ քո պհաւատացեալս ,
Եւ զդընդակէն յաւանակ՝ ընկեղեցին հեթանոսաց ։
Լուացի եւ զպատմուճան մարմնոյս անաղտ յարեան գինւոյ ,
Զուարթացան աչք իմ սիրով, հայել 'ի քեզ արդ փրկութեանք .
Հայեաց Յակոբ 'ի դըժոխոց , հայեաց 'ի վեր յիմ տուն բեթէլ :
Տես կանգնեալ քեզ անդանօր խաչն իմ սանդուխտ յերկրէ յերկինս .
Փութացիր եւ ել ընդ այն , մուտ 'ի վերինն Երուսաղէմ .
Զերծիր ոչ յԵսաւայ , այլ անողոք 'ի բանսարկուէն ։



Ազնիւ եւ գեղեցիկ Յովսէփ ընտրեալդ 'ի մէջ եղբարց ,
Ցանկալի ծնողիդ աչաց՝ եղեալ նորին յուսոյ ծերութեան .
Ընդ իս էիս նախանձեցան որդիք հօր քո իբրեւ ընդ քեզ ,
Հաց կենաց 'ի Հօրէն՝ առաքեցայ նոցին յերկնուստ ,
Որոնեալ բազէպ բազէպ 'ի մէջ դաշտին Հրէաստանի ,
Խնդացի յուսապատար մինչ ընտոլին գլուխ ողջամբ ։
Իսկ եղբարք իմ տեսին հեռուստ՝ կորուսանել զիս խորհեցան .
Քամահեալ զկենաց հացիս , ոհ , կապտելով զիս կապեցին .
Զպատմուճան մարմնոյս իմոյ՝ ծաղկեալ գեղովըն կուսական ,
Ո՛չ անբան ուլուն այծի , այլ իմ արեամբ թաթաւելով .
Կախեցին մերկ զփայտէ , եւ տես Հայրն իմ ողբաց վերուստ ։
Ոչ ողջամբ որպէս ըզքեզ վաճառեցին զիս յԵգիպտոս ,
Այլ սպանին ձեռօք խաբեանց եւ իջուցին մահուն 'գուբ .

Արդ՝ հոգւով իմ՝ զօրութեան՝ քեզ այդ իջի գերեւելոյդ․
Ի բանտէդ խաւարչտին՝ յորեւ կենաց հանել զքեզ,
Տէր կարգեաց՝ ոչ Եգիպտոսին, այլ երկնային արքայութեանն,
Ուրանօր տէրն ընդ ծառայս՝ ծառայք ընդ տեառն թագաւորեն։



Մովսէս, ծառայդ իմ հեզ, ո՛վ ես, առ իս եկ խայտալից,
Մի սարսիր յինէն զողմամբ որպէս անդէն 'ի Սինէ լեառն.
Մեղմացան դէմք իմ ահեղ՝ տնօրէնութեամբքս մարմնաւորիկ.
Նոյն եմ անեղածին էնն 'ի Քորէբ քեզ երեւեալ,
Ի բոցահուր մորենւոյն՝ հրաշիւք պահեալ յինէն անկէզ.
Անդ եւ եթ 'ի յայդ իջի չարչարելոցն 'ի յԵգիպտոս,
Իսկ աստ հանուրց աշխարհի եւ խաւարաւ կաշկանդելոցդ։
Հրւր 'ի ցասմանէ Հօր. բարբոքեալ յոյժ զօրութեամբ,
Մինչ ներքին 'ի դժոխս իջի՝ այսպէս յերկնաւոր կայծակնաթափ,
Այրել եւ ճարակել զատուն հրղօրին դժոխոց.
Եւ անլոյծ կապեալ ըզնա՝ գրաւել զաւարն 'ի գերողէն։
Գերահրաշ է եղանակ նոր փրկութեանս իմոյ, Մովսէս.
Թէպէտ աստ իշխանաբար բուռն ձեռամբս Աստուածազօր,
Այլ անդ յաշխարհ՝ միայն մատամբ ես գործեցի խոնարհ՝ մարմնով,
Խաւարն ետես երկուացաւ, կարծեց թէ սոսկ մարդ եմ ես։
Դու յինէն պատուհասիչ Աստուած եղար փարաւոնի,
Նշանօք զարմանազան ափշեցուցեր զողջ Եգիպտոս.
Խուճապաւ հաներ անտի զազգ Յակոբեան յազատութիւն.

Իսկ ես՝ տէր Աստուած քո իբրեւ զծառայդ հեղուցայ յայժ.
Չէր ընդ իս հարուած, պատիժ, այլ քաղցր սէր եւ հեզութիւն.
Ընդ խաւարին շօշափելի՝ լոյս աշխարհի ծագեալ 'ի վերուստ.
Ընդ կարկտոյն անասնածախ՝ ցօղ զուարթարար 'ի վերայ սիզոյ.
Ընդ հրեշտակին սատակիչ՝ տիեզերաց կենդանատու.
Խաչն եղեւ իմ գաւազան, նովիմբ հարի զՀլին փարաւոն,
Եւ պատառեալ մահուն ըզծով՝ դիւր ձեզ շաւիղ բացի յերկինս.
Եւ 'ի չարատանջ յԵգիպտոսէդ յազատ վիճակ.
Որ անճաշակ մնայեր դու 'ի յԱւետեաց երկրին բարեաց.
Հրաւիրեմ ըզքեզ, Մովսէս, 'ի ճաշ երկնից արքայութեան:



Հետեւողըդ Մովսիսի եւ քան ըզնա ցուցեալ յաղթող,
Անուանակիցդ իմ Յեսու, պարտիչ ազգին Ամաղեկայ.
Տարածմամբ աղօթանուէր առ իս բազկացըն Մովսիսի,
Նմին նման եւ իմ ելեալ մարմնով 'ի լեառըն Գողգոթա,
Ի վերայ Թեւոց խաչին, որ յենարան եղեւ ինձ դիւր.
Զբազում իմ պարզի յաղերս առ հաշտութեան Հօրն ընդ մարդիկ,
Եւ զինու վառեալ անդուստ իջի յայս դաշտ իբրեւ ըզքեզ,
Խորտակել ըզզօրութիւն արդ անմարմին Ամաղեկայ,
Քանդել զգրժոյն հին Երիքով, որ այլ չկանգնի յաւիտեան:
Այլ զինչ տաս գանգատ բերից այն քո ղազգէն Թերահաւատ,
Զմեծ ողկոյզն առհաւատչեայ՝ ձիր Աւետեաց երկրին պարարտ,
Զոր ուսով բարձեալ բերեր, զի հաւատան քեզ անսերկեա.

Թէ տէր Աստուած տայ Յակովբայ ժառանգութիւն Սուրբ երկրին։
Առին զայգ-մերժող ոգիքն եւ՛ի լծակէ խաչին կախեալ,
Ճըմլեցին քարանձիգ որպէս ըղձքեզ անդ 'ի բանակն.
Եթէ ոչ ամպով փառաց պաշտպանէի շայտ առ վրանօք։
Զ'իմացան խելամտիքն եթէ պարգեւ էր այն 'վերուստ,
Որ քաղցրախորժ ճաշակմամբն՝ հաղորդ առնէր երկնից բարեաց։
Դու սակայն., որ զօրացեալ եղեր յուսով անապարակոյս,
Խրախուսեալ եւ զԻսրայէլ մուծեր յերկիրըն կաթնաբուղխ.
Ժառանգող եղեր Նըմին, յորմէ չուառքըն զըրկեցան,
Արժան է քեզ եւ այժմիկ ժառանգ լինել երկնից բարեաց։
Զօրավար ես, քաջըդ Յեսու, զքեզ զօրավար կացուցանեմ.
Ես յառաջոյ՝ դու 'ի յետուստ վարեմք տանիմք զհոգւոց բանակն։
Որ ձայնիւըդ մեծագոչ զիս կոչէիր դու անձանձիր,
Արի, Տէր, փրկեա զգերեալքս եւ մի մերժեր ըզմեզ իսպառ.
Ողորմեա մեզ, ով Աստուած, օրհնեա եւ ցոյց զերեսս քո.



Աւաղիկ հասի առ քեզ, Դաւիթ, հայրիկդ իմ ըստ մարմնոյ,
Այս քո թախանձ սրտագին շարժեաց ըզգութ սրբոյ Հօրն իմ.
Զիս ըղձման իւր 'առաքեաց բուժել պաշխարհ 'ի մեղաց.
Հանդերձեալ են տեսանել ըզփրկութիւն իմ ծագք երկրի.

Իշխանք եւ Թագաւորք խոնարհելով երկրպագել,
Ծառայել ինձ երկիւղիւ եւ համօրէն ազգք եւ ազինք։
Ո՛հ, ապառումն Յակոբ չ'ետես միայն զիմ փրկութիւն,
Զդէմս դարձոյց. թիկունս եդ եւ ղուշս իւր կափոյց յինէն.
Արդ զայն ամենայն, զոր դու կանուխ գուշակեցեր.
Թաքոյց 'ի նմին ինձ որոգայթ խարդաւանօք,
Եւ 'ի զուր տարապարտ զիս նախատել բերան եբաց.
Հատոյց չար ընդ բարւոյ, սիրոյ փոխան զատելութիւն,
Խորհեցաւ անժառանգել զանձն իմ յորդւոց 'ի մարդկանէ.
Ծակեաց զոտս իմ եւ ձեռս, եւ պիրկ 'ի փայտ սեւեռեաց,
Զարդարիչըս մերկացոյց. եւ խայտառակ եհան 'ի խաչ.
Ե՛տ 'ի կերակուր ինձ զլեղի դառնաճաշակ;
Արբոյց ծարաւելոյս քացախ փոխան ջրոյն անուշակ.
Ի խաչէն իջուցեալ՝ 'ի գբի ներքնում եդ խաւարին։
Արդ զօրութեամբ հոգւոյս եկի հանել 'ի գբոյդ խաւարային,
Եւ 'ի վեր, ով ցանկացող դու փրկութեան Աստուածորդւոյս.
Թող իջցեն այդըր նոքա, որ զայսոսիկ ինձ հատուցին։
Հար այժմիկ ընդ առաջ իմ ըզտասանաղեդ քո օրհնութեան,
Որ առաջի Տապանակին կաքաւէիր ուրախուրախ։
Ես կենդանի Տապանակն եմ, գիտես Դաւիթ,
Յի՞ս է ծաղկեալ գաւազանն եւ մանանայն կենաց հացին;
Յի՞ս է Հին եւ Նոր ուխտին Կտակարանն, Աւետարան։
Զեւ այգուն հասելոյ ժամ է զարթնուլ ինձ. Առիւծիս
Զպահապան դունըզըս զինուորաց պակուցանել մռնչելով
Որ գողացեալ համբաւեցին տեսցեն՝ Յարեան զոր խաչեցին։
Իսկ դու կրկնէ զայն բան, Դաւիթ, զոր դու հոգւովդ տեսանէիր
Ցընծացայ ես 'ի բանըս քո, որպէս այն որ գտանէ աւար բազում։
Տե՛ս, Դաւիթ, քանի շատ են, կարեմ թուել զաւուրն իմ.
Զայդ ամէն տանիմ յերկինս եւ Հօրն իմոյ տամ պարգեւ։

Իսկ թէ ո՞ւր էր դժոխապետըն սատան մինչ յաղթական
Նազովրեցին,

Վարէր տանէր զաւարըն իւր, Խաչին դըրօշն էր առաջնորդ։
Նա 'ի մութ խորշ մի զօղեալ դիտէր զելիցըն վախճան։
Մատուցեալ հրեշտակք չարին, ասեն զի՞ կաս, տէր սատանայէլ.

Թափուրացան դըժոխք համայն, փաւան պարանք եղեւ ամէն.
Մինչ վտիտ եմք եւ անարի Թողուլ զաւարըն մեր այնպէս,
Առանց կռուի՝ եւ քաջութեան գրաւէ տանի Թըշնամին,
Եւ մեք նըստիմք յողք եւ 'ի լաց որպէս կանայք եղերական.
Օ՛ն փութացի՛ մեծ զօրավար, տուր հարկանել փող մարտի
Կոչեա՛ ըզգունդըն լէգէօն եւ ըզդիւաց ջոկս համօրէն.
Պընդեսցուք զհետ աւարին, մարտ մըղեսցուք քաջաբար,
Մեք շատ եմք, անշուշտ յաղթեմք, վա՜շ թէ կալցուք զՆազովրեցին.
Ո՞ւր է այն Որդի մարդոյ, զոր խաչեցին ընդ աւազակս.
Որ պարծէր խօսէր առ իւրսն թէ յաղթեցի ես աշխարհի.
Ո՛չ, ասէր բանգէտ սատան, դուք չյիշէք զանցեալըն բան,
Յիշեցէք ըզՓարաւոն, որ պընդեցաւ զհետ Մովսիսին.
Եւ անհեղ իւր բանակօք հեղձաւ 'ի ծովըն կարմիր.
Դուք չգիտէ՞ք բան ըզՄովսէս՝ Նազովրեցին հզօր է եւ բուռն.
Որ զՂազարոս հօգին կոչեաց, ձայն իւր հասաւ անդնդարանն.
Հոգին պատռեալ նա գնաց, եւ ո՞ կարաց արգելուլ.
Եթէ պընդեմք զհետ աւարին գուցէ հասցէ մեզ պատուհաս,
Անդրադոյն քան ըզդըժոխս հեղձնումք 'ի ծով անդնդային.
Դուք չըլըսէ՞ք զխօսից բան, յորս մըտաք դուք իբր ապաստան,
Խոզեամբն զնմեգ հեղձաւ 'ի ծով, եկին եկին դեւք ջրաթաթախ.
Ո՛չ, ես խելամուտ, հեռատես եմ, չկամիմ վարել զայդ պայքար.
Գուցէ յայնժամ խափան բարձցի արքայութիւն մեր դըժոխոց.
Թողէ՛ք թողէ՛ք ըզբամ զաւարըն, զանգիտ զանձս իմ զօր կորուսի.
Ողբամ զանկումն իշխանութեանս, այլ յաւիտեան չկարեմ կանգնել.
Դուք լուեցի՞ք թէ զինչ ասաց Նազովրեցին Առաքելոյն.
Եւ ձեզ իշխանութիւն կոխել 'ընդ ոտիւք զօձս եւ կարիճս.
Վա՜հ, ես սատան եւ դուք հրեշտակք օձ եւ կարի՜ճ լինիմք մարդկան,
Եւ մարդիկ զմեզ կոխեն եւ հաւասար լինիմք հողին.
Վասըն մե՞ր ասաց Դաւիթ թէ թշնամիք Նազովրեցւոյն
Հող լիզիցեն ոտից մարդկան, անէծք անէծք մեզ յաւիտեան.

Մատեան յայնժամ դեւ մի ճարտար, որ միշտ շըրջէր ընդ Յիսուսի
Ասաց, ով Տէր, քաջալերեա՛յ, զի՞ բան խօսիս անմխիթար,
Եւ այդչափ յուսահատիս թէ մեր դըժոխք աղքատացաւ.
Նազովրեցին սակաւ տարաւ, եւ շատ բազմին եթող մեզ.

Զաւետարան ես կարդացի, զոր քարոզէր Յիսուս, գիտեմ.
Քանի՜ անձուկ եւ նեղ գծէր զուղին երկնից արքայութեան,
Եւ քանի՜ մեծ ընդարձակ լայն ճանապարհ՝ եթող մեզ,
Մեք շնորհիւ ձեր մեծութեան շատ շուտ լինումք դժոխոց՝ տուն։
Ես քաջ գիտեմ ըզմարդիկ, որ չըգնան նեղ ճանապարհ,
Զի կարի միամիտ են եւ մեղկացեալ թուլամորթ,
Եւ առ չարըն հակամէտ ՚ի բնութենէ ասաց Աստուած.
Հոգին մեծ է եւ առաւել քան ըզմարմին, ասէ Յիսուս.
Այլ ո՞վ կամի զայդ լսել, թող թէ առնել, դըժուարին բան։
Եթէ այդպէս, մեր ժողովուրդ բազում եւ շատ են, ով Տէր,
Որ ասես աղքատացաւ՝ հարստանայ դըժոխք մեր.
Եւ դարձեալ թագաւորես եւ հաստատի իշխանութիւնդ։

Ո՜չ, ո՛չ, ես յուսահատ եմ յուսահատ, զիս մի՛ ջանայք ըսփոփել,
Մինչ կարծէք խաւար հոգիք փառք եւ պարծանք են դժոխոց.
Ես համարիմ զնոսին անպէտ, անպարգ անօթ տանն իմում։
Դուք մի՛ տըքնիք զխաւարային հոգիս բերել առ խաւարն,
Որչափ դոքա յաւելուն, այնչափ կրկնին մեր տանջանք։
Ես խաւար եմ, լոյս խընդրեմ, զորդիս լուսոյ բերէք առ իս,
Զի՞նչ օգուտ ՚ի խաւարէն, խաւարն որդէն մե՛րն է մեր.
Ես եմ կամիմ, որ Յիսուսի, բաժնէն խըլէք բերէք ինձ,
Ընտրեալ հոգիք, լուսոյ որդիք, այդ են պարծանք մեր տէրութեան.
Ո՜հ, այդ ամէն անգիւտ գանձք աւարեցան ՚ի հըզօրէն։
Նզովելեցուոյն հեծանոյն՝ հանեց մաքրեց զկալ դըժոխոց,
Զատոք ցորեան ժողվեց տարաւ, զյարդըն թողուց անշէջ հրոյն։
Ո՞ւր Ադամ, ո՞ւր Եւա, Աբէլ եւ Սէթ եւ Ենովս.
Ո՞ւր Նոյ արդար եւ Աբրահամ, ո՞ւր Իսահակ եւ Յակոբ,
Երկոտասան Նահապետք բարգաւաճեալ, ազգին փառք.
Հապա Յովսէփ այն գեղեցիկ եւ մեծազօրըն Մովսէս,
Յեսու մեծ զօրավար եւ Սամուէլ եւ դատաւորք Իսրայէլի.
Դաւիթ եւ Սողոմոն, որոց թակարթ ես լարեցի,
ԶՈղորմեայն ասաց Դաւիթ եւ Սողոմոն զՈւնայնութիւնն,
Ողորմած Աստուած ներեց, զի ես չասի զՈղորմեայն.
Ո՜չ, ո՛չ ասեմ ես յաւիտեան, զի կամակոր եմ եւ հըպարտ։

Այլ ես դարձեալ պատուէր տամ ձեզ, ով կամարար հրեշտակք
եւ դեւք,
Մի աշխատիք դուք ընդունայն շահ եւ վաստակ համարելով.
Զխաւար հոգիս ածել բերել, ճանճով լընուլ ըզդըժոխս:
Ես խաւար եմ աղջամղջին եւ դուք որդիք խաւարի,
Եւ զի՞ զխաւար բերէք բարդէք դուք 'ի վերայ խաւարի.
Գուցէ խաւար հոգիք մարդկան գան դիզանան բարդ 'ի բարդ,
Խեղդի խաւարն 'ի խաւարէն եւ չքանայ մեր գոյութիւն.
Փակեմք փակեմք ըզդըժոխս ընդդէմ խաւար ոգւոց մարդկան,
Ազատ լիցի մեր բնակութիւն, զի սեպհական մեզ եդ Աստուած.
Թէ պէտք են մարդկանց դըժոխք՝ թող դատաւոր տէր հոգւոյ զայդ,
Միթէ անհուն 'ի ափեզերս չկա՞ն տեղիք պատժելոյ:
Իսկ ես եմ ճարտարապետ, հիմն ես դըրի ըզդըժոխոց.
Եւ ո՞ գիտէր թէ իմ դըժոխք՝ ծնանէր երկնից արքայութիւն.
Լինէր մարդ Որդին Աստուած, գայր կործանէր զիշխանութիւնս,
Արձակէր զկապեալ գերիս, եւ զիս կապէր 'ի հազար ամ:
Զմարդն հանէր մինչեւ յերկինս, տանէր դնէր անկելոյս 'տեղ.
Եւ զիս կապէր թողոյր այսպէս յաւիտենից յանել բանտ:
Այլ մի՛ ջանայք, անզօր ոգիք, զիս արձակել 'ի կապանաց.
Հըզօրին ձեռք զիս կապեաց եւ ո՞ կարէ քակել զայն՝
Թողէք թողէք 'ի կապանս իմ, զի ողբացից եւ յաւիտեան.
Արդարութիւն եկն յաշխարհ 'ի դատաստան ընդ իս ընդ մարդ,
Որ աշխարհի իշխան էի, Արդարութիւն ընկէց արտաքս:
Խոստովանիմ, տէր Արարիչ, արդարութիւնդ զիս դատեաց:
Այլ զի՞ է, զի՞ չկարեմ, եւ խոնարհիլ ասել մեղայ.
Ո՛չ, քանզի վէս եմ, ամբարտաւան, ինձ հակառակ է Աստուած:

Իսկ դու Դաւիթ ցընծասջիր, թող սատանայ նըզովի, ողբայ.
Պինդ կըզեալ ըզտասն աղիդ, դու զարկ դարձեալ ըզնոյն բան,
Ցընծայցյ ես 'ի բանըս քո, որպէս այն որ գըտանէ աւար բազում:
Աստ ահա փոխեմ, Մանկունք, եւ ես երգոյս իմ զեղանակ,
Հորկանեմ ուրախալի զԴաւթեան քընար աւետաւոր,
Յարեաւ Աստուած փառօք, որ սիրոյ արթուն նընջէր յերկրի.
Ցըրուեցան իւր թըշնամիք դատապարտողքն ըզնա 'ի մահ:

Տօնս հարէք, ով հեթանոսք, եւ ցնծացէք դուք առ Աստուած.
Օրհնեցէք, որ ել թեւօք Խաչին իւրոյ Ինքն 'ի բարձունս,
Առ զաւակն 'ի գերողէն՝ դարձոյց անդրէն 'ի հայրենին.
Վասն որոյ յաղթանակին հնչեմ՝ զփող մեծաբարբառ,
Նոր Յեսուն փրկիչն մեր արկ 'ի կործան զՀին Երիքով:
Ահարկու ձայնիւն իւր, որ 'ի Խաչին անդ արձակեաց.
Նոր Մովսէս հրաշարուեստ գաւազանաւըն խաչանիշ,
Պատառեալ մահուն ըզծով՝ հորդեաց որդւոց մարդկան շաւիղ.
Սուզեցաւ հին փարաւոն եւ զօրք իշխանն աշխարհակալ.
Եւ երգեմ նորագոյն մեղ Ճանապարհ ազատութեան.
Որ ոչ եւս տանի զղեկուար ընդ անապատ Սինէական,
Ուր կարօտ հացի եւ ջրոյ կրէր տրտընջող հին Իսրայէլ.
Հապա մեր, 'ի Սիոն վերին, յոր հիւթիւն է հոգեպէս.
Անդանօր Ահարոնի քոյրն ըզթըմբուկն առեալ 'ի ձեռն,
Պարագլուխ լեալ կանանց՝ երգէր ըզբան օրհներգութեանն.
Իսկ աստէն ընդ ընկըմել փարաւոնին աներեւոյթ,
Դասագլուխ լինէր կանանց Մագթաղենին Մարիամ,
Որ դեգերէր 'ի պարտիզին եւ պարտիզպան կարծեալ ըզՏէրն.
Անձկանօք հարցանէր, տէր դու բարձեր, արդեօք ըզՏէրն.
Ասա ինձ թէ ուր եդեր, զի ես առից ըզնա ինձ.
Ո՛, ո Մարիամ, միթէ Յիսուս քո քամին է, որ զայն առնուս
դու միայն.
Եւ երբ Յիսուս աղու ձայնիւ կոչեց զանուն, Մարիամ,
Մագթաղենին խանդաղատեալ փութով կամէր զոտիւք սորին.
Դեռ ասաց եմ, Մարիամ՝ մի խուճապէր մերձենալ յիս.
Ե՛րթ, ասէր, վաղագոյն դու առ եղբարսն իմ թափառեալս.
Ասա տեսի ես ըզՏէրն 'ի պարտիզին, Յարեաւ Յարեաւ:
Զուարթութիւն, որ 'ի ծննդեան հոլովոյն տայր մեծ աւետիս,
Նոյն եւ արթուն զգաստից կանանց հնչէր յայգուն տարփողելով,
Ոչ 'ի լուր նախ ուստերց, այլ դըստերաց Եւայի,
Յարեաւ, եւ զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս.
Եւ լոյսք գառանապէս զայն, որ սրբեաց Մարդկան զարատ.
Սուգ պայծառին ձեր թախծալից՝ թող փոխեսցի խնդութիւն,
Արբեսցին յուշաց կանթիւք, որ առ Խաչին ցօղեցին:

Աւգաւոր մայրըն Մարիամ խոցեալ 'ի սուրըն խորամուխ,
Յարութեամբ Որդւոյն անդէն վիրաց խոցուածքըն բուժէին,
Մագթաղենւոյն չ՚եւ համբուրել, Մօրըն խնայեաց ըզհամբոյր։
Հօտ ցըրուեալ ոչխարացն ընդ քաջ Հովուին 'ի հարկանելն,
Աւետաւոր Մարիամու, դարձեալ 'ի մի ժողովելով.
Խընդակից եղեն յոգիս ամենեքին յուսապատար.
Նա՛ յուշ բերեալ անդանօր զՎարդավառին կանխագոյն ճառ.
Եւ Թէպէտ մատնեալ կամաւ 'ի ձեռն ազգին այն դըժկամակ,
Մեռանիմ անպարտօրէն եւ զիս դընեն 'ի գերեզման.
Այլ եւ յետ երից աւուրց յառնեմ կանգնիմ ես կենդանի,
Նորահրաշ մանկութեամբ, նոր նորոգիմ արծւոյ նըման։
Գերարփին լոյս համասփիւռ 'պահ մի ծածկեալ 'ի ծոց երկրի,
Թաղմամբ երեքօրեայ՝ յինքըն ամփոփեաց ըզշառաւիղս,
Եւ դարձեալ ճառագայթող Արեւն ելաւ 'Գերեզմանէն.
Զուարթօրէր արշալոյս նոր ծագեցաւ տիեզերաց.
Փարատեալ մերժեցաւ մութն եւ ըստուերն աշխարհապատ։
Նըման փախուցելոյ մարգարէին այն Յովնանու,
Տէրըն եկաց 'ի սիրտ երկրի եւ մուտ 'ի փոր վիշապ ձըկան.
Արաժանիք, աշխարհակուլ բերան մինչու լայնաբացեալ.
Ասաց, վա՜շ, ըմբռնեմ, եկն 'ի բերանս Որդին մարդոյ.
Այլ ըմբռնել ոչ զօրեց, խորտակեցան ժանիքըն իւր.
Եւ զոր ունէր 'ի փորըն իւր զհոգիս կլլեալ 'ի յԱդամայ,
Շութափեալ եթուք 'ի դուրս յորովայնէ խոր դըժոխոց.
Եւ զի ոչ 'ի նորին Ադամ եգիտ ըզմեղս հնոյն Ադամայ.
Յոր Թափեաց ըզմահու Թոյն եւ մահացոյց ողջ ըզծնունդս։
Հօր որսորդն ամենարուեստ իւր կուսական դոյզըն խայծիւ,
Զկարթըն ձգեաց 'ի մահու ծովն եւ անդ կալաւ ըզկէտըն մեծ.
Պատառեաց ըզխոր կըզակն՝ 'ի դուրս եհան ողջ ողջ հոգիս։
Որ քանիւ տեսանողին երդնոյր 'ի յանձն իւր կենդանի,
Շօշափել յաւուր միում զըստորին վայրըս երկրի մերում.
Աւասիկ զօրեղագոյն զաջն իւր ձըգեալ զբանն 'ի վերուստ,
Շօշափեաց ած ըզքըռամբ ըզմեծ վիշապըն բանսարկու,
Ջախջախեաց զգլուխ նորին, Թաւալեցաւ կիսամեռ,
Ցընծացին հոգիք սրբոց, համբուրեցին զՓրկչին աջ.

Գոչէին օրհնեալ է Հայր, օրհնեալ Որդին, օրհնեալ բազուկըդ փրկող։
Մեռուցեր ըզմեր ոսոխն, որ դատախազ կայր միշտ մեզ։
Որ հակառակ կայր արդարոցն՝ չըթողոյր զմեզ լինել ընդ քեզ.
Արդ ազատեալ 'ի խաւարէն, տար 'ի տուն Հօրդ լուսաշէն.
Զի տացեր ուր եմն կցեմ, անդ պաշտօնեայք իմ եղիցին։
Ցուցայի 'շառաւիղէն յաղթեալ կորիւն Առիծու,
Զայն ահեղ մռընչելով՝ դող առ սաստիկ սանդարամետ.
Զարթեաւ որպէս 'ի քնոյ Տէրն, որ ննջէր 'ի սիրտ արթուն
Զ'առ Խաչիւ արբեալ զգինին, Թափեաց յիւրմէն իբրեւ հըզօր.
Որ մահուամբըն վայրիկ մի զօշըս կափոյ իբրեւ 'ի քուն,
Միթէ ոչ այլ եւս անդրէն յաւելուցու յառնել 'ի վեր։
Հատն աստ ցորենոյն՝ յանդաստանէ Կուսին բուսեալ,
Ի կալատեղ Գողգոթային կասեալ Խաչին կամնասայլիւք,
Նըման սերման յերկիր անկաւ, մեռաւ որպէս հատն ընդ հողով.
Հրաշալի էր այն հատիկն, զոր ձեռըն Հօր ցանեց երէկ.
Եւ այսօր հատն 'ի հողէն բուսաւ փընջովք բազմապատկի.
Մի հատիկ էր որ մեռաւ, զանթիւ հատիկս կենդանացոյց,
Բազմագոյն առատաբեր արդիւնս գործեաց ըստ իւր բանին.
Անհամար ննջեցելոց պըտղովք 'ի կեանս բարդաւաճեալ։
Որ առ Խաչիւ կացեալ հանդէպ ափրադրուժիցըն խօլ խուժանն,
Կախեալըն, ո՜հ, ըղփայտէն՝ վա՜շ կարդային շարժեալ ըզգլուխս.
Զամօթի հարան խայտառ եւ կորակնեալ եղեն գըլուխք.
Մինչ տեսին զոր քակեցին զտաճար մարմնոյն խաչի մահուամբ.
Զայն շինեաց զերիս աւուրս Ճարտարապետըն Յիսուս։
Նա՛ պաշտպան եկաց Որդւոյն եւ Հայրըն իւր դատաստանաւ,
Զ'առ 'ի նեղչաց զերծուցեալ՝ ծանոյց համայն աշխարհի,
Թէ Խաչեալ մեռեալ Յիսուս, Աստուածորդի է ճշգրիտ,
Եւ զհանդէս արդարութեան Խաչի Նորին՝ ցոյց փորձողացն։
Վասն որոյ նախ առ 'ի մէնջ միշտ մատուսցի քեզ օրհնութիւն,
Միրողի Հօրըդ մերոյ, որ յաղթելով 'ի գթութենէդ,
Առ սիրոյ մարդոյն անկեալ՝ ըզորդելիդ մատներ 'ի մահ.
Իբրեւ թողեալ 'ի խնամոցդ՝ թողեր 'ի ձեռըս թշնամեաց,
Զարչարեցին չարչարեցին, անձն բոլոր լըցաւ վիրօք.
Զի նորա մարմնոյն վիրօք՝ բըժըշկեսցես դու ըզվէրս

Սփոփանաց անկեալ Մարդոյն, որ խըջանէր յերկրով.
Եւ 'ի սորա աւազակաց վիրաւորեալ հեծէր ողորմ.
Որ 'ի կերպըն գըթածի եւ նուաղ ձայնիւն աղաչելոյ
Զ'ածին գութ հայցել երբեք եւ լսել անփոյթարարքն:
Զհառըն նոցին ապիկար՝ չզօրէր ըղձերս նորին բուժել,
Եթէ ոչ 'ի քէն, ով Հայր, Սամարացին եկանէր յայց.
Եւ ո՛ կարէ չափել զսէրդ, զոր սիրեցեր դու զաշխարհ,
Մինչ ետուր ըզսիրելիդ անձին քոյոյ առ 'ի մահ.
Որ յարիւն անարատ Որդւոյդ, կենդանացի մեռեալ աշխարհ.
Եւ այսպէս ցուցեր առ մարդ զանհուն սիրոյդ քո ըղձափ:

Այլ եւ քեզ Որդւոյդ անմահ՝ մարմնով առ մեր մահացելոյդ
Նուիրեսցի յաւէտ եւս շնորհ 'ի փրկելոցըս քո արեամբ,
Որ սիրով դու եղանիլ մարդ 'ի Կուսէն ոչ շատացար.
Նա եւ անբաւ զըրկանաց քո հեզութեամբըդ տանելով,
Ի ձեռաց ապաշնորհաց, ո՛հ, եւ ըզմահ ճաշակեցեր.
Թալկանամ, ով, երբ ըզգըքոյդ կիրս նըկատեմ, խաչեալդ Յիսուս,
Զարտասուելն 'ի պարտիզին եւ զըմբռնումըն կամովին,
Զկապըն քո 'ի յատենի դատաւորաց լըռելն անմռունչ.
Զհարուածով գանին ձաղկելն 'ի զինուորացըն դըժընդակ,
Զապտակն, ըզփուշ պըսակն եւ զթուքըն պիղծ՝ անարգանաց,
Զխաչակրութիւնդ 'ի Գողգոթա եւ զքայլ ոտիցըդ լըքեալ.
Զտարածումդ խաչի սեղան եւ զուժգնակիրկ սեւեռումն,
Զբարձրանալն յերկրէ 'ի խաչ՝ կալ նըշաւակ աշխարհի,
Զվէր կողի քո տիգախոց եւ զպատանելդ իբրեւ մեռեալ,
Եւ կենդանւոյդ ըզթաղումն 'ի գերեզման մահացելոց:

Այս քո վըշտաց յիշատակ եւ խաչի մահ չարչարելոյդ,
Զոր պատմէ, Աւետարան եւ ես կարդամ զմահուանդ ճառ.
Ցնծեմ եւ վըշտակրիմ, այլ եւ ցընծամ ընդ փրկութիւնդ.
Զոր ցուցեր 'ի մէջ երկրի դու նորահրաշ եղանակաւ:
Ո՛ տեսս եւ ո՛ լուաւ թէ լոյսն Աստուած գայր՝ մեր յաշխարհ.
Լոյսն 'ի Կուսէն ծնանէր մարդ, Աստուած լինէր Որդի մարդոյ,
Եւ 'ի վերջոյ երթայր կամաւ 'ի խաչի մահ եւ գերեզման.
Գերեզմանէն յառնէր փառօք, այսպէս կընքէր զխաչին ճառ:
Ես արդ անկեալ ահիւ 'ի ծունկս՝ երկրպագեմ, Գերեզմանիդ,

Ուր տարրացար դու մարմնովդ զիս գրկեցեր 'ի տապանին.
Զի զԹաղեալս մեղօք 'ի հող քո յարուԹեամբդ վերածես :
Ո՜վ. Գերեզմա՛ն, Գերեզմա՛ն, որ մահու դրան հաւասարիչն ես,
Եւ երկնից արքայուԹեան՝ դուռն միայն եւ ճանապարհ.
Ցամէն ազգաց եւ աշխարհաց երամովին դիմեն զան,
Թէ հարցանես՝ Թէ ո՞ւր երԹայք, ասեն գնամք յԵրուսաղէմ.
Քրիստոսի Գերեզմանին երկրպագել մեք աստ ուխտեմք.
Կա՛ց դու հանդէպ Գերեզմանին տես դու ո՛րպէս հոգւով ըղձիւ,
Համբուրե՛ն համբուրե՛ն զվէմն անշարժ եւ կենդանի.
Եւ հաւատան քեզ, ո՛վ Տէր, Թէ դու մեռար, Թաղեցար աստ.
Վա՛շ, մեռելոց աշխարհին, դու կեանս ետուր քո ՅարուԹեամբդ.
Անշա՛րժ մնասջիր, Գերեզման, փրկչի մահուան յիշատակ.





# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԵՐԳՈՑ



*ՍԿԻԶԲՆ երգոյս յուշ առնէ նախ զսէր Հարսին ոգազգեաց և փեսային հեռացելոյ, որ զկնի Ցարութեանն երեւի բազմիցս և Սողոմոնեան Երգոց Երգոյն ձայնիւ աւետիս տալով մերձէ 'ի նմանէ զվարանական սուգն և հաւատարիմ առնէ նմա զիւր Յարութիւն։*

*Հանէ զՄանկտին 'ի լեառն Ձիթենեաց. Նկարագրութիւն Համբարձման Քրիստոսի եւ հանդէս Հօր Աստուծոյ Հրեշտակաց տօնակցութեամբն՝ այլովքն հանդերձ։*

*Ի լեռնէն Ձիթենեաց հրաւիրէ կրկին 'ի Սիոն Վերնատուն՝ ուր զգերազօր Հոգւոյն գալստենէն՝ զքաղցրադիմի շնորհաց նորին՝ երգէ հռչակելով և գերազանց ցուցանէ զարդիւնս Հոգւոյն. որով լցան իմաստութեամբ տգէտ Աշակերտքն և զօրացան լքեալ ոգիք նոցուն։*

*Հայցուած առ նոյն Հոգին Աստուած ինքնազօր ընդունել 'ի նը-մանէ շնորհս ճշմարիտ գիտութեան։*





# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

### ԵՐԳ ՎԵՑԵՐՐՈՐԴ

Բե՛ր ինձ արդ նուագեցից Հարսին ըղձէր եւ փեսային,
Եւ զՄանկանցն առագաստի, զնորածնեալ Եկեղեցւոյն,
Հաւատով պսակաւորեալ ընդ փեսային յարուցելոյ.
Հրճուէր Հարսըն հոգեպէս, մինչ առ ինքն էր փեսայն Յիսուս.
Այլ աւա՜ղ, ժամ՝ հասեալ էր, որ վերանայր անձկալին.
Ուստի ստէպ կարօտելոյն՝ Ինքըն զաւուրս քառասուն,
Երեւէր եւ ըսփոփէր զոգիս նոցին ըղձախնծալից.
Եւ երբ Արեւ լուսաբեր՝ ծագէր դիմաց նոցին նըսեմ,
Հալածէր առ ՚ի նոցունց ըզմութ սըգոյն վարանական։
Նախ երթեալ ՚ի Գալիլեա՝ Հովիւըն քաջ եւ անձնադիր,
Նըստեալ փոքր քաղցրալուր. ձայն արկանէր փոքրիկ հօտին.
Որ թափառէր պատանդելով թագուցանէր զինքն ՚ի գեղջն։
Զայն պակաւ դիմէին առուր գառինքըն հոլուանէր,

կարօտեալ՝ Վարդապետին աղին կենաց անուշարար ,
Որպէս անձուկ ոգւով անկեալ յայնժամ երկրպագին .
Գոգ թէ վաղուց 'ի հետէ չէին տեսեալ ըղձալելին ,
Եւ լուսափայլ 'ի դէմս յառեալ՝ քաղցեալ ոգիք յագեցան ։
Այլ ոմանք երկուացան , քանզի տեսին փառաւորեալ ,
Մարմին ունէր լուսապայծառ , նուրբ թափանցիկ լուսոյ նման .
Եւ զի չէր պարզ Վարդապետն որ ընդ նոսա շրջէր անշուք .
Այլ Պետրոս եւ Յովհաննէս , այն է ասեն , հաւատացէք ,
Ճիշդ այսպէս տեսաք զնա մեք 'ի Թաբօր դէմք լուսափայլ ,
Եւ անդ լցաւ խնդութեամբ սիրտ բոլորին յուսապատար ։
Դարձեալ 'ի Վերնատունն յորժամ թաքչէր Հարսըն տըխուր ,
Զհանդուրժեալ եւս 'ի սըրտի նոր աւետեօք Մագթաղենւոյն ,
Լայր եւ սըգով վտտանէր 'ըղձալելոյն , որ մեռաւ .
Գայր յանկարծ փեսայն իւր ողջ , առ դուրս կացեալ ձայն արկանէր .
Բաց ինձ արդ , ով Քոյր իմ , մերձաւոր իմ , աղաւնիդ իմ ,
Որ խանդակաթ ես 'ի սէր քո փեսայիդ յարուցելոյ ։
Սեւաթոյր զքօղըդ սըգոյ 'ի բաց այժմիկ առ 'ի գըլխոյդ ,
Զգեցիր արդ պըճնեալ 'ի զարդ պատմուճանաւըդ Հարսնութեան ,
Ողջախոհ գօտեաւ պընդեալ՝ եկ ընդ առաջ իմ պարելով .
Քանզի ձմեռն էանց գնաց , անձրեւք անցին չարչարանաց .
Գարուն է արդ գեղեցիկ , զձայն տատրակիս յարուցելոյ ,
Աւասիկ գամ եւ հընչեմ 'ի պարտիզիդ քո փակելոյ .
Որ յանձկալըսյդ իմ զատեալ՝ զիս որոշեաց վայրիկ մի խաչն .
Եւ այրի թողեալ ըզՔեզ՝ ողբով լըցար դու յուսահատ ։
Արդ առ քեզ դարձայ կրկին եւ դու առ իս դարձիր այժմիկ ,
Պինդ դըրկեա զիս հաւատով , չունիմ այլ եւս մեկնիլ 'ի քէն .
Դու ընդ իս եւ ես ընդ քեզ սիրով կապեալ անխըզելի .
Զայս ասէր եւ դրօք փակեալ մըտեալ առ Հարսըն սըգաւոր .
Ի միջի ղօղեալ հօտին կանգնէր յանկարծ Հովիւըն քաջ .
Ցօղապէս ընդ պատուհան թափանցելով ծագեալ 'ի ներքս ,
Նոյն առ 'ի կուսէն թանձըր մարմնովն ըմբռնելի .
Հարցանէր տեղեկանայր ըզհաւատոյն ողջութենէն .
Եւ զնոսին 'ի նոյն կըրկին նոր կազդուրէր կըշտամբելով ,
Առ 'ի չկարծել զինքն անմարմին՝ առեալ ուտէր զձուկն եւ խորիսխն ։



Յետ ութից աւուրց այս ըստ առաջնոյն մտեալ առ իւրսն,
Երեւէր նոյնօրինակ Առաքելոց դասուն ամբողջ.
Ե՛կ հուպ առ իս, ասէր, Թովմաս, բեր զմատունսդ մխեա 'ի կողս,
Շօշափեա՛ զգեղարդավորոց վէր իմ կողիս ձեռօքդ քո.
Տես աչօք եւ նշմարեա զծակեալ տեղիսըն բեւեռաց,
Դաւիթ հոգւովն 'ի հեռուստ, դու 'ի մօտոյ ոչ տեսանես.
Հաւատա՛ ուրեմն յիս եւ ընդ եղբայրսըն քո դասեաց:
Իսկ Թովմաս գոչէր, Տէր իմ, հաւատացի՛ եւ հաւատամ.
Տեսի բեւեռս խաչելոյդ, դեռ կարմիր են արիւնանիշ,
Եւ մատունք իմ կարմրացան, այլ ոչ մեռայ ես քո հետ.
Որ ձայն տայի երկչոտ դասուն, ո՛ն արդ եւ մեք մեռցուք ընդ քեզ,
Տէ՛ր, մատունք իմ վկայ լիցին, խաչիդ նշան եւ յիշատակ:
Առ ծովակին Տիբերիական յայտնէր դարձեալ ըստ Յովհաննու,
Ուր Պետրոսըն ծովատենչ Տեառն ըղպատուէր անյուշ առնէր.
Փափագեալ հնոյ արուեստին որսալ ըզձուկըն դեգերէր,
Մըտերմօքըն որսակից, որ զհետ երթալ յօժարեցան:
Անդ ձկնկուլնըս կոչելով՝ յանդիմանէր Տէրն ըղնոսին,
Եւ հրաշիւք ուռկանալիր խուռըն ձկանց ըմբռնելոց,
Եւ մի ձկանըն որ 'ի կրակին եւ նորաստեղծ հացն ընդ նմին,
Ցուցանէր անդէն հրաշիւք թէ յարուցեալ Տէրն ինքն է:
Եւ ո՛վ հացով զայդ պատրաստէր այդ անձնորակ աշակերտացն,
Որ զողջ գիշերըն տքնելով՝ ոչինչ կալեալ որսաքնջէին,

Սիրոյ Վարդապետն էր, որ գործէր հօգայր զամէն.
Նորանոր ըղձանչելեօք զնուրսն 'ի հաւատս հաստատէր.
ԶՅարութիւն իւր Ճշմարիտ՝ հաւատարիմ առնէր նոցա.
Այլ ըզկնի քառասնաւուրց 'ի Ձիթենեաց լեառն հանէր.
Ո՛ն Մանկունք, եկայք եւ մեք ընդ Քրիստոսին 'ի Սուրբ լեառն.
Գալ նըմին յուղարկաւոր եւ շնորհաբաշխ յաջոյն օրհնիլ:
Ո՜վ. քանի՞ ցնծութիւն էր յաղթող Փրկչին մերում յայնժամ,
Որ ըղձոցըն հայրենի թողեալ՝ յաստիս պանդուխտ եկաց,
Անարգեալ 'ի մարդկանէ՝ դատապարտեալ եղեւ 'ի Խաչ.
Մեռեալ, բայց Յարութեամբն կեանըս շնորհեաց մահացելոցս.
Երեւեալ Ինքըն նըկուն՝ վանիչ եղեւ աշխարհի:
Եւ իբրեւ ըղձանչելի եղանակաւս փարեաց ըղմարտն,
Այսր եւ զօրագլուխն եւ նահատակըն խաչազէն,
Զինուորեալ փոքրիկ խըմբին նա քաջալեր կարգաց ասաէն.
Յաղթեցի՛ ես աշխարհի, յաղթանակաւ դառնամ յերկինս:
Զի՞ բանիւ մըտերմական խօսէր ասաէն առ սիրելին.
Այսօր 'ի ձէնջ վերանամ, երգիչ Մանկունք, Հարանարանիս.
Այսօր զողջոյն իմ տուեալ՝ յԱշակերտացըդ հեռանամ.
Այսօր ըզձեզ, Որդեակք իմ, օրհնեմ աջովս Հայրական:
Դուք լինել զօրացարուք, մի՛ լըքանիք յուսահատեալ,
Տեսիք զիս, ուսայք յինէն զնոր եղանակ իմ յաղթութեանս,
Թէ որպէս պարտ է եւ ձեզ, որ խաչակիրս գրեցայք զինուոր,
Կռուոյ վարեալ մերկամարմին՝ կըռուել մըցիլ ընդ աշխարհ.
Ընդ անձուկ շաւիղ դըժուար հետեւեցէք հանդիսադրիս,
Որպիսեօք ես ընթացայ լեալ իմ Խաչիւս նախամարտիկ.
Թէ ընդ նոյն յօժարակամ զխաչն իմ բառնայք արիապէս,
Վըկայէք եւ մեռանիք վասն կրօնի Ճշմարտութեան,
Որպէս Ես այնպէս եւ դուք յաղթանակաւ գայք յերկինս.
Գնամ պատրաստեմ ձեզ մըցանակ, եւ Ես եմ ձեր պսակադիրն.
Զոտըս ձեր ըզքօկանի նոր ամրացոյց Հայրն իմ կօշկօք,
Եւ զառաջին պատմուճան ագոյց անդրէն մերկացելոյդ.
Տիրական իշխանութեան ըղմատանին մատոյց 'ի ձեռս.
Յորժամ եզն Ես պարարակ զենայ առ ձեր 'ի Գողգոթա:
Տի՛ անվախ ընթացարուք արդ ընդ աշխարհըս բովանդակ,

Անվեհեր դուք 'ի վերայ գլխոյ չարին կոխեալ անցէք,
Քամահեալ զնետիւք նորին, զինու Հոգւոյն զրահաւորեալք.
Մատանւոյն զօրութեամբ տիրող լերուք տիեզերաց,
Խաղացէք զօձիւք, կարճօք, ձեզ ոչ վնասեն թոյնքն նոցին.
Ես փշրեցի զխայթոց չարին եւ մեռուցի զմահն ընդ ոտիւք:
Անմռունչ գառին նըման զձեզ առաքեմ 'ի մէջ գայլոց.
Մի կասեալ զանգիտիցէք 'ի սրաժանեացըն պատառող.
Խորագէտ լերուք մըտօք հանգոյն օձի դուք եւ ըզգոյշ.
Որպէս ինձ նոյնպէս եւ ձեզ դարան դընէ նենգիչ սատան.
Բիւրակերպ գաղանի հնարիւք զոտըս ձըգել 'ի թակարթ:
Որ յինէն եգաք որսորդ 'ի յալեծուփ ծով կենցաղոյս,
Մի լիցի ձեզ ըմբռնիլ յուռկան որսորդ չար սատանին.
Զօրացարուք մանաւանդ, որ զըմբռնեալս 'ի բանսարկուէն,
Ուռկանաւ քարոզութեան առ իս ձըգեալ որսայցէք:
Լերուք դարձեալ հեզագոյն դուք միամիտ աղաւնւոյ պէս,
Մինչ բըռնի դուք առաջի դատաւորաց քարշեալ տանիք.
Մինչ ըզձեզ նախատեն եւ բան ըզչար խօսին ըզձէնջ.
Մինչ անարգեալ ելանէք դուք 'ի յատենէ դատաւորաց.
Երանի է ձեզ յորժամ զըրկանս կրիցէք դուք զայսոսիկ,
Որ այսու հարազատ իմ Աշակերտ գոլ ճանաչիք:
Այլ մի լուռ մնայցէք այնչափ երբ անարգի ճշմարտութիւնն.
Ի խօսիլ զիրաւացին՝ յանդուգն եղէք եւ համարձակ:
Լոյս եդի զձեզ աշխարհի, 'ի լոյս գնացէք, մի ընդ խաւար.
Դուք Աստուծոյ քաղաքն էք՝ Սիօնի լերին 'վերայ շինեալ,
Անդ կանգնեալ է Խաչին դրօշ, եւ 'ի դրօշին ճշմարտութիւն:
Յաշտանակ Եկեղեցւոյ եդի ըզձեզ իբրու զճրագ.
Մի դուք ըզլոյս Աւետարան թագուցանէք ընդ գրուանաւ,
Զոր խօսեցայ ձեզ յունկանէ, ելէք 'տանիս քարոզեցէք:
Աղ երկրի զձեզ կոչեցի. զի համ տայցէք անհամելոցն.
Ըզխոտեալս՝ աղիւ կենաց բանից իմոց անուշեցէք:
Մայր եղէք տղայացելոցն եւ ջամբեցէք զԲանին կաթն
Զոր բանիւ ուսուցանէք՝ զնոյն գործով ցուցէք յանձինս.
Ցիս կատարեալ տեսիք զայն, զի ձեզ արդեամբք աւանդեցի.
Թէ զերկնիցն ունիք խօսիլ, զաշխարհի բան թողէք 'ի բաց.

Թէ զփառացն յաւիտենից՝ խոստեալ խոյս տուք յանցաւորէն.
Թէ զկենացն անմահականն՝ ընդ առ. աշխարհ մեռեալ լերուք.
Թէ զինէն ունիք խօսիլ՝ զխաչն առեալ հետեւեցէք ։
Լուսաւոր ըզկարըս ձեր, լոյս արարէք մարդկանց առաջ.
Զի տեսեալ հաւատասցեն, փառաւորեն զՀայրն իմ յերկինս.
Երբ զամենայն գործէք դուք, գովչիք զձեզ ծառայս անպէտս.
Եւ խոստովան եղերուք, թէ զոր պարտն էր, զայն արարաք ։
Այլ, գիտեմ, զոր ցարդ ընդ ձեզ ես խօսեցայ յայտնապէս,
Հասու ոչ եղէք լինել Թաքուն բանից իմ զօրութեան.
Ուստի փութամ առաքել զՀոգին շնորհաց եւ գիտութեան,
Որ 'ի Հօրէ ելանէ եւ գայ բնակի առ ձեզ անբաժ.
Նա բանայ ըզմիտըս ձեր եւ ուսուսցէ զամենայն,
Թէ մոռասջիք՝ զինչ խօսեցայ, նա յուշ բերցէ ձեզ 'ի միտս,
Եւ բանիցըս խորագոյն առնէ հմուտ եւ իմաստուն ։
Ես 'ի ձէնջ մեկնիմ երթամ, փոխանակ լիցի նա ընդ իմ.
Օգտաւորագոյն աշխարհի՝ լիցի սփոփիչ եւ մխիթար,
Զօրավիգ զինաւորացդ, որ ըզխաչին կրէք ըզդրօշ.
Զայն ազդու խրախուսական՝ լըքեալ ոգւոցըդ երկիւղիւ,
Զօրութիւն անդամանդեայ՝ հողանիւթիցըդ դիւրաբեկ ։
Դուք ըզՀոգւին ըզգեցեալ անպարտելի քաջանայցէք,
Ընդ աշխարհ եւ սատան, եւ ընդ մարմին մարտընչելով,
Յաղթեսջիք աշխարհի, յաղթանակաւ դարձջիք յերկինս.
Օ՛ն գնացէք, այլ մի մեկնիք 'ի քաղաքէն Երուսաղէմ,
Անդ նըստեալ ըսպասեցէք Հօրն աւետեաց, զոր խոստացայ ։

Աւարտէր. Յիսուս ըզբան եւ համբարձեալ զձեռս իւր օրհնէր,
Այն աջոյն արարչագործ, որ զկաւն արար մարդ կենդանի,
Այն աջով նորաստեղծէր զգունդ մի Ադամ իշխան երկրի.
Իշխա՛ն ոչ անասնոց, այլ տիրապէս մարդկան հոգւոց ։
Այն աջով ձեռնադրեցան նոր երիցունք Եկեղեցւոյ,
Անդէն առաքելական վարել ըզհօտըն փոքրիկ,
Պաշտել զեկեղեցին, պաշտօն չառնուլ յեկեղեցւոյն,
Քրիստոսի նմանելով զանձն 'ի փրկանս տալ բազմաց,
Զըտիրել մաքեանց վերայ եւ ոչ հօտին եւ վիճակին ։
Այդ դասապատան վիճակեց Յիսուս, դուք եղբայր էք ամէնեքին,

Որ ասաց միայն չասաց, որպէս յետինքս միայն ասեմք.
Ո՛չ, ասաց եւ արար, լոյսն հոգին սպասաւորեաց.
Այն անէծք, որ 'ի Հօրէն զեղան 'ի գլուխս յանցաւորացն,
Օրհնութիւն փոխարկեցաւ սոսա բերանովն Յիսուսի։
Լինելոյն անդրէն 'ի հող՝ դառնալ լինել 'ի հոգենիւթ
Յաստուած միանալով՝ նովիմբ 'ի դրախտն վերբերիլ։



Ընդ ստորոտիլ օրհնութեանն զօրացուցիչ եւ շնորհատու,
Նոր Եղիայն ինքնաթռիչ եւս հրաշալին կառօք մարմնոյն,
Ի միջոյ Աշակերտացն փնջրաթեւեալ վերանայր.
Զմարդըն քարշեալ տանէր 'ի վեր, թեթեւացեալ էր մարդոյն բեռն,
Զայն ըստանձնեալ էր Փրկիչն, ապա թռչէր մարդն 'ի վեր.
Որ ծանրացեալ էր նա մեղօք, յերկիր հակէր կապարի պէս։
Բայց, զի ցաւ էր յայնժամ բաժանելոյն առ 'ի սիրոյն,
Ի՞բր անթարթափ պլշուցեալ ընդ գարշապարս Վարդապետին,
Աղաղակ բառնային Եղիսէի նման մայրուստ.
Յիսուս Վարդապետ, դու ոչ միայն կառք Իսրայէլի.
Այլ եւ հանուր հեթանոսաց, զօրս քո Խաչելոյդ կենարար.
Այդպէս ունիս վեր հանել իբրեւ կառօք յերկրէ յերկինս.
Արկ այսր, ժողովեմք 'ի քէն, ոչ ըղձալիկըն մաշածոյ,
Այլ զհոգին եօթնաշնորհ, որով հարեալ զգետ աշխարհիս,
Նըման Յորդանանու պատառելով զջուրսն մեղաց,
Յայդ վեր կոյս ելցուք եւ մեք ընդ քեզ 'ի քոյդ շաւիղ նորոգ.

Զոր այդպէս հորդելով լայնես բանիս մեր ընդ առաջ։
Մի՛ զոր մեզ խոստացար 'ի յառաջումն յապաղեր,
Ո՛հ, 'ի քէն թողեալ այրի՝ այժմէն պատիւք տարակուսեալք։
Ակընկալեալ յուսայաք մանկունքըս քոյդ առագաստի
Հոգեզուարճ խընջոյս կազմեալ՝ ակումբ առնուլ եւ պարել
Ցաւէրժ 'ի Փեսայիդ յարուցելոյ սուրբ Հարսնարան.
Եւ յագիլ 'ի քո փառացդ, որ ըզգեցար նոր յարութեամբ.
Շուտ լրացաւ քառասուն օր եւ քանի՞ կարճ էր ժամանակն.
Տէ՛ր, կարօտով թողեր ըզմեզ, փութով այդպէս բաժանեցար։
Երբ ըզմիտըս մեր բացեր փըչմամբ 'ի մեզ զՀոգիդ քո սուրբ,
Իմանալ, որ վասն քո զկանխաձայն բան մարգարէից.
Այն ինչ աչք մեր բացան դիտել զանտեսդ առ 'ի նոցունց,
Ծածկեցար ամպով 'ի մէնջ իբրու զարեւ երեկորի։
Որ ծագեցար 'ի բարձանց ճառագայթիւքդ գերահրաշ,
Ի վերին մայր Սիօն՝ անդրէն յերկրէ մուտ արարեր։
Իցի՜ւ, զի դարձեալ գըտցուք ըզքեզ առ մեզ, Յիսուս,
Եւ տեսլեամբքդ տենչալի, մշ, հոգեպէս հրճուեսցուք։

Զայս նոքին, այլ զի՞նչ անդէն սպիտակազգեստ արք լուսաւորք
Երեւեալ եւ աւետիս տային նոցա յուսադրական.
Զի յանկձրաւ եղեալ 'ի վեր հայիք այդքան, Գալիլեացիք.
Սիրակաթ աչօք զկնի սիրեցելոյն յափըշտակեալ,
Այդպէս որ չեւ խաչեալ ձեր եւ դու՞ք յերկինս գնալ կամիք.
Կալ վերին 'ի Հարսնարան ընդ Փեսային ուրախակցիլ.
Մի՛ կարի ըզտարփալին յուշ բերելով ճըմլիք 'ի սիրտս,
Գայ նա վաղ դոյն օրինակ, որպէս այժմիկ գընաց յերկինս։

Թախծալից տըխուր դիմօք դարձան անտի յԵրուսաղէմ,
Եկին մըտին 'ի վանս իւրեանց, անդ խըմբէին 'ի միասին.
Համայն դասք Աշակերտաց եւ Մարեմանք եւ Մայր Տեառն.
Միշտ յաղօթըս կանխելով ըսպասէին Հօրն աւետեաց.
Խօսէին զամէն անցից, զոր կատարեաց Յիսուս Բանն։

Ե՛կ բեր արդ, ըզհրեշտակաց դասուց երգել զտօնակցութիւն
Զոր կարգաւ կատարեցին ընդ համբառնալ Բանին 'ի վեր.
Դասք ներքին խորհըրդազգածք Մարդացելոյն տնօրէնութեանն,
Առ վերին դասս անգիտակ՝ ըղձաձայնեալ բարբառէին.

Համբարձէք ըղձութիւնս ձեր, ո՛վ Պետութիւնք երկնաւորաց.
Թող մտցէ ընդ այն յաղթող Վեհ Թագաւորըն փառաց։
Որ ընդ մէջ երկնի, երկրի զխաղաղութիւն արար լինմամբն.
Համբարձէք պահպան Քրովբէք սուր ՚ի դրանէ դրախտին երկնից
Թող անցցէ ազատօրէն Ադամակերպըն Փրկիչ,
Որ եբաց զայդ Ճանապարհ, զոր փակեցիք Ադամայ դէմ.
Բացէք եւ դուք, Սերովբէք, ըզմուտ վերնոյ վարագուրին,
Թող մտցէ ՚ի ներքին կողմն անցեալ կայցէ առաջի Հօրն,
Քահանայն ինքնանուէր պատարագաւըն հաշտութեան,
Զանարատ կուսին զպտուղ ընծայել Հօրն ՚ի մարդկանէ.
Այլ վերինքըն սխրացեալ ընդ նոր այս լուր մեծասքանչ,
Նա յաւէտ ՚ի չքնաղ կերպ վերընթացող Թագաւորին,
Զարմացեալք եւ ՚ի ներքնոցըն գոլ հասուն հարցանէին.
Ո՞վ իցէ այս Թագաւոր, որ գիտակքդ էք, ասացէք մեզ,
Զի՞ դիմեալ արագապէս գայ յԵդովմայ եւ յերկրէ
Դա՛ մարդ է, մարմին ունի, զի՞ վերանայ հրեշտակի պէս,
Մեք տեսաք զԵնովք Եղիա, որք հրեշտակօք համբարձան վեր,
Կարմիր են ձորձք իւր համակ եւ գեղեցիկ է պատմուճանն.
Թագ ՚ի գլուխ եւ փեսայի նորոյ նման զարդարեալ ինքն.
Նա՛ ցընծայ հըսկայապէս եւ Ճոխաբար ընթանայ վեր.
Կարի բուռն է զօրութեամբ իբրեւ յաղթող գայ ՚ի յերկրէ.
Նորասքանչ է դրօշըն իւր խաչանիշ ՚ի գոյն արեան,
Եւ անարգել ընթանայ ՚ի Ճանապարհըս երկնաչու,
Միայնակ ինքն առանձին առանց ուրուք օգնականի.
Ո՞ իցէ, տուք մեզ նըշան զնոր Աբրայէս ամենասքանչ,
Երեւեալ զերդ առաւօտ, այլ ՚ի յերկրէ զարմանապէս.
Գեղեցիկ իբրու զլուսին ջահավառեալ բոլորապէս,
Ընտիր եւ քան զարեւ, մի՛ ՚ի ստորին յերկրէ ծագեալ
Ի հիացումն եւ նոր տեսիլ կարգեալ է մեզ երկնաւորացս.
Գոգ թէ երկնից Տէրն է ինքն եւ փառակից աթոռոյ Հօրն.
Ասացէք, ո՛վ ներքին դասք, ո՞ իցէ Վեհ այս Թագաւոր։
Է՞ք այդպէս անկարանայք զՏէր զօրութեանցըդ Ճանաչել.
Այդ իսկ է, ո՛վ Սերովբէք, որում երգէք զերեքսրբեանն.
Այն է դա, ո՛վ Քերովբէք, ում ՚ի հանգիստ փառաց լինիք.

Ո՜չ տեսիք, մինչ 'ի ծոցոյն հայրական լուսածագեալ.
Առ ձեօք անց եւ էջ յերկիր Բանն 'ի վերուստ շողանկարման.
Մուտ 'ի կուսին սուրբ արգանդ եկն 'ի մարմին անարատ,
Հրաշապէս ծնեալ նա մարդ, այլ ո՞ գիտէ զանձառ բան,
Բեթղեհեմի երկնուց վերայ մեք երգեցինք զփառսն 'ի բարձունս.
Մանուկ Աստուած մարդ ծնեալ, այլ զօրութեամբ ցուցաւ Աստուած,
Աստուած՝ բայց ըղմարդոյն կիրըս բոլոր կրեաց մարմնով։
Ի վերջնում աւուր ապա չոգաւ ինքնին 'ի չարչարանս,
Մատնեալ՝ եւ գառնապէս վըշտաց Խաչին տարեալ՝ մեռաւ.
Մարմնով եդաւ 'ի Գերեզման, այլ էջ հոգւովն 'ի ներքին բանտն.
Անդ քարոզեալ հոգւոյն արդար, հաւատացին թէ փրկիչն է.
Արձակեցան կապեալ հոգիքն եւ ընդ Փրկչին հա՛ գան 'ի վեր.
Տէրըն Յարեաւ 'ի մեռելոց, զմեռեալս յարոյց ընդ իւր
Այսպէ՛ս քոյդ մարդադիրն ըղթըշնամին իւր վանելով
Հրաշափառ յաղթանակաւ յերկրէ դարձեալ՝ գայ 'ի յերկինս.
Օ՛ն արդ երգով օրհնութեան բարձր արարէք ըղնահատակդ.
Իսկ որ հուսկ յառեալ ընդ գեղ հրաշանային կարմիր ձորձոյն
Հարցանել ոչ 'ի ներքնոցն, այլ 'ի Յիսուսէն ըղձանային.
Տէր, զի՞նչ այդ քո հանդերձ համակ 'ի գոյն բոսորագեղ.
Միթէ հընձա՞ն հարեր դու նոր որ դեռ կարմիր են սըրունքներդ.
Եւ լիահոսս առնելովդ ողջամբ դու այդ թաթաւեցեր։
Եւ ընդէ՞ր են այդ նշանք վիրաց 'ի յոտս քո եւ 'ի ձեռս,
Ընդ ո՞ւմ ինքնին մըղեր ըղմարտ, միթէ չգո՞յր քեզ զօրավիգ.
Զի՞ լռելեայն գործեր զայդ, մեք չըլուաք փողոյդ ձայն.
Եւ ո՞ւր էր քո կռուոյ տեղ, յԵրուսաղէմ քաղաք Դաւթի՞.
Ուստ 'ի վեր գաս արդ փառօք զայդ գեղեցիկ վէրս ընկալեալ.
Թէ անշուշտ որպէս ասեն ըղ քէն ներքինք լցես Աստուած,
Հաւատամք եւ մեք 'ի քեզ Տէր զօրութեանց եւ Արարիչ.
Զի՞ հապա զանեղական Աստուածութեամբըդ լուսագեղ.
Նիւթական եւ զարիւնոտ զգեցեալ ունիս այդ նորհանդերձ.
Կերպդ է իսկ Ադամային, բայց հրաշագոյն է ընթանալդ.
Նա մարմնովըն վայրաբեր, դու վեր այդու թեթեւ սլանաս.
Եւ է՞ր ըղբիւրաւոր բանակս որ քեզ եմք զինուորեալ,
Թողեր եւ գաղտ 'ի մէնջ իջեր յաշխարհս միայնակ.

Ոչ գիտեմք, թէ ի՞նչ, ով Տէր, վանիչ եղեր գոռ թշնամոյն,
Այդ մարմնոյդ մարդկային թէ զօրութեանդ Աստուածային.
Ուսո՛ մեզ աւասիկ ըղձալութեանդ նոր յեղանակ։

Այս գործ է իմ անքըննին, ով լուսատեղծ հոյլք հրեղինաց,
Միայնում յայտնեալ յինէն Եկեղեցւոյս նորածնելոյ։
Թէ տարփայք եւ դուք յաւէտ զայս ուսանիլ ըստուգապէս,
Խոնարհեալ հասէք լերուք ՚ի սուրբայնոյ Եկեղեցւոյն.
Որ ինձ Հօրսն եղեւ Նա կոյս եւ Ես Նորին փեսայ մաքուր։
Ո՞ւր արդեօք խորհուրդս այս մեծ կատարեցաւ, գիտէք, զուարթունք.
Ո՛չ ելէք եւ տեսէք զիս, ով դուք վերին Սիոնի դըստերք,
Ի լեառըն զմըռսոյ եւ հրաշակերտն իմ Հարսնարան.
Անդ ահա Նոր պատմուճան այս առեցեալ մարմնոյս իմոյ,
Որ գեղովըն կուսական՝ շուշանի պէս փայլէր յառաջ,
Դարձաւ բոսորաթոյր, մինչ ես յօրն իմ ուրախութեան,
Բազմեցայ Խաչին ՚ի գահ՝ պըսակեցայ կարմիր արեամբ։
Անդ ըզլի հընձան Խաչին ես կոխեցի արդարութեամբ,
Յորմէ կաթիլք արեան գինւոյն յայտնեալ հանդերձք իմ կարմրացան։
Ընդէ՞ն առի եւ զայս վէրս, ա՜հ, ՚ի տանէն իմ սիրելեացն.
Անկորուստ յիս պահելով՝ ցուցից նոցա յիմ գալըստեանն։

Այսպիսի օրինակաւ, ով զուարթունք, զինու մարմնոյս
Պարտեցի ըզբանսարկուն յաղթայարիչ նախատեղծին,
Որ մեղօք ախորժ պըտղոյն մարմնովըն իւր ծանրացեալով,
Ի փառաւորն բարձրութենէն անկաւ յաշխարհ վայրաքարշ.
Սէրըն Հօր զիս վարեց իջոյց ըզկնի անկեալ մարդոյն,
Որ զմարմին մեղաց նորա առի զինու աստուածութեամբս
Զծանրութիւն բարձի մեղաց, եւ անարատ պահելով զայն՝
Յերկրէ հանեմ ՚ի յերկինս այսպէս ընդ իս թեթեւընթաց։
Շուտ ուրեմն արագեցէք, ով սքանչացող Սրովբէից դասք,
Զխորանին դըստի ելք բացէք այժմիկ ըզվարագոյրն.
Յոր մտեալ մատուցից զայս պատարագ Հօրն իմ հաճոյ։

Զի՛ անդէն սուսանիացեալ սըրբանըւագ սէրափի գունդք,
Ոմն ըզփող յաղթանակի առեալ երգէր բարձրաբարբառ.
Ոմն անցեալ ըզխորանին Երրորդութեան բանայր ըզփեղկն.
Մուտ առնէր ընդ այն Յիսուս, Հայրըն յառնէր գայր ընդ առաջ.

Ըղձիւրած որդեակքն իւր ողջագուրէր ընդ Միածինն.
Համբուրէր համբուրէր ընդ նոր փեսայն Ադամակերպն.
Նորն Ադամ, հնոյն Ադամայ որդիացեալ զգեցեալ զպատկերն
Զհայրն Ադամ ածէր առ Հայրն 'ի հաշտութիւն եւ համբոյր.
Ո՜վ. սուրբ համբոյր, երկինք, երկիր, Աստուած եւ մարդ եղեն մի,
Անդ կրկնեցաւ, փառք 'ի բարձունս, խաղաղութիւն երկնից, երկրի
Եւ ոմն միջնորդ այս հաշտութեան, միակ Յիսուս եւ ոչ այլ.
Եւ ապա Դաւթի բանիւն առէր ցՈրդին Հայրն Աստուած,
Նիստ, Որդեակ, ընդ աջմէ իմ, որ 'ի յերկրէ գաս վաստակեալ.
Ա՜նց բազմիր ընդ իս յաթոռ այդ առեցեալ մարմնովդ քո.
Եւ ահա Ադամ եղեւ իբրեւ զմի 'ի մէնջ Աստուած.
Եկայք յանկարծ անդ սատան, ո՜ ո՜ միթէ ես չասացի,
Թէ ուտիցէք լինիք Աստուած, ահա Ադամ եղեւ Աստուած.
Ո՜չ. ո՜չ այդպէս, ո՜վ սրտախոս, Աստուած շրջեաց զբան քո այսպէս
Զի յայտնեսցի բանսարկութիւնդ եւ դու լիցիս խայտառակ.
Զի՞ դու ասես, ո՜վ ապստամբ, քո տեղ դժո՛խքն է դժոխք,
Ե՛րթ 'ի հուրն յաւիտենից, զքեզ այրեսցէ քո նախանձ.
Այլ դու եկ, մարդասէրդ իմ, որ պարտեցեր զմահու իշխան.
Յաղթեցեր. Մանուկդ իմ քաջ. տապալեցաւ 'ի քէն աշխարհ.
Զո՞ր պսակս հիւսեցից, եդից 'ի գլուխ քո գերագոյն,
Նոր անուն տամ ես քեզ, որ քան զամէն անուն վեր է.
Ո՛ւմ երկին, երկիր բոլոր երկրպագեն խոնարհելով.
Ո՜ն հաւատ, ո՜վ հրակերպեան հոյլք Հրեշտակաց եւ Պետութիւնք.
Պարակից եղեալ միմեանց զերգս Դաւթեան հնչեցուցէք.
Այսօր է օր փրկութեան երկրի, երկնից, մարդկան եւ ձեզ.
Արարեալ յինէն անդուստ իբրեւ օր մեծ եւ հրաշալի.
Հրճուեցէք պարելով եւ ցնծացէք ուրախամիտ.
Աւետիկ հասոյք ուսուրն, ում անձկալով ըսպասէիք.
Այլ Որդին, որպէս յայնժամ զբանն իւր առ Հայրն ուղղէր այսպէս.
Հայր, արդար, զհաճոյս կամացդ ես կամակար կատարեցի,
Առ 'ի քէն ելեալ իջի զհետ կորուսեալ մի ոչխարին.
Ի մէջ լերանց աշխարհի յոյժ որոնեալ վաստակեցայ.
Մինչ ելի. 'ի գլուխ լերինն Սիոնի գտի զայն, ածի.
Խնդութեամբ 'ի յուս բարձեալ առ քեզ հանի աւասիկ,

Զոր խառնել ընդ անմոլար Հօտին այժմիկ արժան է, Հայր.
Եւ զդրացի դասս արդարոց կոչել առ մեզ ուրախակցիլ.
Նա՝ զօրէն աւերածու կնոջն 'ի միջի տանն աշխարհին
Ճրագ վառեալ զմարմինս իմ՝ եդի Խաչին 'ի յաշտանակ.
Աւելեցի զաղբիւս մեղաց, եւ մուծ յերկիր մնացեալ.
Զառ 'ի մէնջ ըզկորուսեալ դրամըն գտի 'Ադամի ըստ անուն.
Եւ ըզժանգըն սրբելով 'ի հուր արեան իմ՝ կողահոս.
Նոր եղեւ քան առաջինն մաքուր փայլուն ոսկւոյ պէս.
Պարզ էր. եւ սրբափայլ դրամըն մարդոյն՝ 'ի բնութենէն,
Բանաւորութիւն պատրանօք առ արտաքուստ ժանգոտեցաւ.



Տանեմ զայս, յորժամ 'ի փորձ մատեայ Նըմին մարդեղութեանս.
Զ՚ի քոց հրոյս արկեալ ըզնա բորբոքելոյ 'ի մեծ սիրոյդ.
Հալեցի, սրբեցաւ ժանգն, գըտաւ մաքուր որպէս յառաջն.
Եւ ձուլեալ զայն ընդ լուսոյս միացուցի ըզնիւթականն.
Ահա, սուրբ ամենայնիւ, քեզ ընծայեմ զպատկեր մարդոյն.
Տես այն է իսկ նոյնատիպ, զոր անարատ ձեռօք ստեղծեր.
Ա՜. Հայր իմ, եւ դիր դարձեալ 'ի գանձարանդ արքայութեան.

Հայր իմ, մինչ էր 'ի պարտիզին աղօթէի առ քեզ ուժգին.
Անդ մատուցեալ մահու բաժակ, որ ես ըմպել կամեցայ.
Արիւն զայն 'ի խաչին եւ մատուցի զանձն իմ 'ի զոհ.
Ընդ անբաւ զոհիցն Ահարոնի՝ Ես քահանայս մատեայ ի զոհ.
Միանգամ պատարագեալ նուիրեցայ քեզ, ով Հայր.
Առ փրկութեան մարդոյն դու զայս՝ բաւ համարեա յաւիտեան.
Ընդ աշխարհ հաշտեաց փառն իմ, քանզի միջնորդ եմ հաշտութեան.
Եւ Քահանայս եմ մշտակեաց 'ի ներքին կողմ վարագուրին,
Քեզ յանդիման կացուցանեմ ըղխաչին մահ եւ յիշատակ,
Ես բարեխօս փառն աշխարհի, փառն այնոցիկ որ հաւատան,
Պահեմ, Հայր իմ, զհաւատացեալս, զի որդիք են Հօր բարձրելոյդ.
Զորս քեզ Որդիս գրեցի արեամբս և ժառանգորդ արքայութեանդ.
Եւ 'ի քէն հայցեմ այժմիկ, ով փառաւորիչ, Հոգի Սուրբ.
Էջ յեղբարսն իմ անուերունջ, որ վըհատեալ են տխրութեամբ.
Էջ սիրովդ արդ 'ի նոսա, որ ըսպասեն քեզ փափագմամբ.
Էջ հանդիր եւ 'ի սրտից նոցին մերժեա զահ, տարակոյս,
Որ զօղեալ 'ի Վերնատուն, ահ, պաշարեալ են երկիւղիւ.
Քանզի այն ինչ 'ի խաչի ժամն Թողի միայնակ ըզնոսին,
Տատանեալ իբրու զտերեւս 'ի շարժմանէ ուժգին հողմոյն,
Ի միմեանս հատուածեալ 'ի բաց խախտեալ տապալեցան.
Եթէ ոչ իմ Յարութիւն պնդէր զնոսին 'ի հաւատս,
Եթէ ոչ Հայրն իմ պահէր, որում աւանդ ետու յանձամբ,
Մինչ յերեկուն սուրբ Ընթրեաց, աւանդէի նոցա կըտակս.
Հասիր ով Հոգի հզօր վառեա զնոսին եւ զօրացո,
Եւ սրտիցն բեկելոց՝ վէմ անդամանդ լեր կարծրագոյն,
Տուր խրախոյս ըլքեալ ոգւոց, թող 'ի կըռիւ ընդ աշխարհ.
Քոյդ յայսմհետէ 'ի խնամս յանձնեմ զգունդն իմ փոքրիկ,
Զօրավար լեալ նոցին դու խաղացո 'ի յասպարէզ.
Գիտեմ, զի քո մատամբ յաղթահարեն ըզտիեզերս.
Դեռ տըղէտ են իմ Աշակերտք եւ Թանձրամիտ գաղիլիացիք.
Թէ մնայցեն, զինչ խօսեսցին, յուշ ած նոցին զայն ամենայն,
Եւ լի արա զհոգիս նոցա իմաստութեամբ եւ զօրութեամբ.
Զդէմս յերկիր եդեալ, Մանկունք, տացուք համբոյր
Ոտնատեղեացն.



Ի Ձիթենեաց լեռնէն իջեալ՝ եկեալք կրկին ՚ի Վերնատունն
Ուր խմբեալ ընտրելոց գունդ բազմաւէին աւետեաց Հօրն,
Երգեցիկ անդ գնդովն առ ՚ի Հօրէ զՀոգւոյն գալուստ.
Որ այն ինչ լրումն լինէր հնգից տասանց Պենտեկոստէ
Յանկըն Երրորդ, Սուրբ Հոգին գայր, ոչ մեղմագոյն փառաւորելապէս,
Այլ սաստիկ հողմոյ նման ահեղաձայն որոտալով.
Մուտ առնէր դրսոյ յանկարծ, տունն ողջ լնոյր հրաշէկ բոցով.
Երեւէին հրակերպ լեզուք եւ հանգչէին իւրաքանչիւր
Ի վերայ ընտրեալ դասուն որպէս կամէր Հոգին շնորհաց.
Աստ յայնժամ էր տեսանել զձայնից հնչումն այլատարազ.
Թէ զի՞ առանց աշխատութեան՝ ոգէտ եւ անուս Աշակերտքն
Հրաշագոյն ՚ի գործողիս առ ՚ի Հոգւոյն վարդապետեալ,
Բազմակերպ ՚ի մի վայրկեան ուսան խօսել զբազմազան ազգս.
Ի հանդէպ հաւեվարժկին խուռն ընթանայր մարդկան ժողով,
Նորալուր զդէպ հրաշից դիտել աչօք յանկարծ ձկնորսս.
Ընդ որս յաւէտ ապշեցեալք եւ ասէին սքանչանալով.
Գիտէ՞ք դուք զդոսա, որ են գռեհիկ Գալիլեացիք.
Շինականք եւ անշուք ՚ի գաւառի ծնեալք ողջոյն,
Զմի բարբառ ամենեքին եւ եթ ուսեալք ըմբռնեցին.
Բայց է, զիարդ զգեցոյր ազգաց լեզուս այժմիկ ուսան խօսիլ.
Ո՞մն ըղձանս Հռոմայեցւոց բարբառ որպէս բազիկ հնչէ,
Ոմն պերճ Հայոց բառիւք, զի՞ վայելուչ բանս յօդէ.

Ո՜ր են այս ըսքանչելիք Աստուածահրաշ ցուցեալ առ մեզ ,
Զի՞նչ արդեօք լինել կամի , եւ մեք բնաւին անգիտանամք ։
Այլ կիսոցըն խաղ առնեալ զմեծամեծօքն Աստուածայնին ,
Զհանճարով Հոգւոյն լցեալս՝ գոլ քաղցուալից՝ համարէին ,
Իսկ Պետրոս , որ առաջնոյն հարցմամբ լեզուն կակղէր ,
Նըստեալ դողայր առ խարոյկին եւ առ ահի զանձըն պահէր ,
Զի՞ աստէն յառնէր յոտին , զոր ուրացաւըն դաւանէր .
Ցի՞ս դարձուցէք ունկն , որ զարմացեալդ էք ափշութեամբ ,
Ո՛չ որպէս դուքդ կարծէք , եթէ արբեալ եմք 'ի գինւոյ ,
Այլ 'ի Հոգւոյն բաժանէ , որ ըստ բանին Յովելեա ,
Տէրըն հեղ յոգւոյ իւրմէ առատահոս 'ի վերայ մեր .
Որով արդ մեք հրաշապէս խօսիմք պէս պէս լեզուս ազգաց ։
Այս պարգեւ է Յիսուսին , ում Աշակերտ եղաք յօժար ,
Զոր դատեալ յանիրաւի՝ սպանէք զանմեղըն եւ զանպարտն .
Իսկ Աստուած յարոյց ըզնա 'ի մեռելոց հզօր ձեռամբ ,
Որ բազմիցըս երեւեցաւ փառաւորեալ մարմնովըն իւր ,
Յոյց մեզ ըզվէրս խոցեալ կողին , ընդ որ հայեցաք 'ի խաչին .
Համբարձաւ եւ զաւետիս Հօրըն իւրոյ մեզ խոստացաւ .
Զոր առաքեաց աւասիկ , ընդ որ այդչափ սքանչացեալ էք ։
Ձեզ եւս են այս աւետիքս եւ ձեր որդւոյն հաւասար ,
Որ կոչին հրաւիրանաւն 'ի հարսանիս արքայ Որդւոյն ,
Թէ դարձջիք եւ 'ի Յիսուս հաւատայցէք ապաշխարեալ ։
Այսր եւ ինձ է սքանչանալ , որպէս ճառող Լամբրոնացին
Թէ առ ի՞նչ Քրիստոսի այնչափ հրաշիցըն մեծամեծ
Ո՛չ զգաց , ո՛չ շարժեցաւ Երուսաղէմ գալ 'ի հաւատս ,
Ո՛չ գիտաց գոնէ յաւուրս Փրկչին իւրոյ զխաղաղութիւն ։
Իսկ առատանօր Պետրոսին մի բարբառոյ քարոզութեանն ,
Անձի՞նք երեք հազար աշակերտիլ յօժարեցան .
Որ այսու քարոզեցաւ արդիւնք Հոգւոյն գերազանց ։
Բանըն երթայր , Հոգին գայր , եւ զի հոգւոյն էին պահեալ
Զբանին տընտեսութիւն ածել յաւարտ եւ 'ի լրումն .
Բանն ըզմարդկան սիրտս արօրեալ՝ զԲանին կենաց ցանեաց սերմն
Թող այնպէս իբր առ հողով Ինքըն չոգաւ 'ի յերկինս ։
Եկըն Հոգին կենդանարար ցօղեաց ըզցօղ իւր 'ի վերուստ ,

Ո՜վ, անդէն չոյտ 'ի վեր ծլէին իւր Նակցին քանից բոյսք.
Պետրոսի 'ի մի հատէն, երեք հազար հատ բուսանէր։
Ցերկիր, յոր ընթացեալ սերմանահանքըն Քրիստոսին,
Հերկել եւ 'ի նմա ցանել զցորեան սուրբ հաւատոյն.
Զոյգ ընդ Բանին ընթանայր վըտակ Հոգւոյն ոռոգանող.
Ջուր տուեալ արքունեանէր, պտուղ բերէր բազմապատիկ։
Որ շըրջէր անդ խոկըրքան 'ի ջուրս երկրի համատարած
Զօրութիւն տալ եղելոցն առ 'ի Բանէն Արարչական.
Նոյն եւ 'ի մէջ մըկրտելոցն առ 'ի Քրիստոս հաւատով,
Շըրջէր Հոգին նորաստեղծէր, զնոր Ադամի ծընեալ որդիս.
Գարո՛ն աւետաւոր եկըն յաշխարհ յետ Ցիսուսին,
Որ չընչէր հողէր տանէր սառնամանիս կռամոլութեան.
Տեղի ետ ձըմեռըն ցուրտ եւ անձրեւացըն ժամանակ,
Բանաւոր դաշտաց երկրի բացան երեւըքըն ծիլնապատ,
Նորափթիթ ամենազան ծաղկունք 'ի վեր երեւեցան.
Ցանուշահոտ·բուրմանէ լըցաւ բոլոր մեր աշխարհ։
Թըզենիք անպըտուղք ընձիւղեցին զբողբոջս իւրեանց,
Այգիք՝ որք չար պտուղս ապականեալ էին բոլոր,
Կոկեցան եւ ծաղկեցան ուռք, որ քանցեալ էին յորթոյն,
Զորս նորապէս պատուաստէր մատըն Հոգւոյն յորթըն Ցիսուս։
Եւ թըք կալան զայլուէսուս, երկչոտ նըկուն նապաստակք,
Որ 'ի Հոգւոյն զօրացեալք՝ յաղթեաց 'ի բաց հալածեցին.
Եւ հաւատով ցանկապատեալ շուրջ փակեցին զայգին Տեառն։
Ցորս չկարէր այլ մուտ առնել նենգող աղուէսըն սատան,
Քանզի նոյնուհետեւ բարգաւաճէր այգին խաղան,
Զուռթ ճուռթ ողկոյզքըն կախէին, խաչն էր խեչակ բարունակաց։
Եւ ով մշակ դարմանիչ, Ցիսուսն ասաց. իմ Հայրն է.
Եւ ես եմ Որթըն ճըշմարիտ 'ի նմա տընկեալ 'ի Հօրէն,
Եւ 'ի միջի աղբիւր Հոգւոյն որպէս վտակ անհատահոս,
Ընթանայր արքունեանէր զուռս ըզնորեկ հաւատացեալս.
Որով առնէր Քրիստոսի որթն եւ տայր պտուղ հազարապատիկ։
Մեծ են ձիրք Հոգւոյն, Մանկունք, ո՛ր բան զօրէ ճառել զայն,
կամ նորին պարգեւաց, որ առ մարդիկ լինել քարոզ։
Եւայլ վառըն սորա ձայն առնէ մեզ աւետաւորութ.

Ուրախ լեր եւ ցնծայ յոյժ, ո՛վ ծարաւիդ դու անապատ.
Քանզի ջուր կենդանի բղխեալ յորդեաց 'ի քեզ առատ.
Դաշտորայք քո անջրդի՝ դարձցին յողողիւք եւ ջրարկից,
Առ որովք ուրախութիւն լիցի հաւուցըն հանապազ.
Զօրացեալ երկիրդ անբոյս՝ փոխեսցի ողջ մարգագետին,
Եւ խաշանցըք բազմահօտ անդ եղիցի մակաղատեղ:
Աւետիս տամ ձեզ, աղքատք եւ կարօտեալք ամենայնիւ,
Որ ըղձուր խնդրէք յաւէտ, ջուր կենդանի եւ անսպառ.
Բացի՛ց ես ահա զգետս յԵրուսաղէմ Սիօնի լեռնէն,
Վըտակ վտակ բաշխելով խաղացուցից 'ի մէջ դաշտացդ.
Բուսուցից յանձուր երկրէդ զծառաստան մայրի եւ ըղտօսախն.
Դըժնըկին փոխան եղէ ծառ մըրտենւոյն անուշահոտ,
Տընկեսցի ցըրպան 'ի տեղ նոճի եւ սօսին, սարդն եւ մայրն,
Կաղամախն եւ այլ ազէս ազէս ծառք վայելուչ բուսցին 'ի քեզ.
Ծանիցես դու յայնժամ, թէ ձեռն արար իմ զայդոսիկ.
Ժամ է, արդ եւ ըղձօղդ. մատուցանիցըն երգեցիկ,
Որ զուխըս փափկութեան արբեալ 'ի տանըս լեալ էք
Լըցեալ ըղձմըլեցան եւ զուարթացան յոգիս իւրեանց:
Եւ ըղձանձանքն 'ի ձեռս առեալ ըմթանայն ընդ տիեզերս
Բաշխեսցեն առատապէս հրաւիրելոցն 'ի Հարսանիս:
Մով, ցամաք՝ ուրից նոցին դիւր ճանապարհ լինէր պատրաստ,
Ո՞ կարէր հայ խոչընդոտն եւ արգելիչ հրեղէն սայրն,
Թեթեւըս թըռչէին աւետաւորքն արքայութեան,
Ծախր առեալ եւ արծուօրէն վերս սլանային սրտողքըն քաջ.
Ի վերայ լերանց բարձանց եւ 'ի մէջ ծակուց վիմաց.
Զօպիտ անասնամիտ վայրենացեալ անգիտութեամբ,
Որսային 'ի գիտութիւն լուսոյ Բանին Ճշմարտութեան.
Եւ դաժան 'ի բնութենէ փոխեալ անդրէն 'ի նոր մարդ;
Դառնային ոգի ըզգօն, հանդարտ եւ հեզ բարեբարոյ.
Նա՝ 'ի սըրտից յանդգաստանէ նոցին խըլեալ զփշաբոյս.
Զհոտ Հոգւոյն արկեալ 'ի նմա զմեղաց տատասկըս կիզէին.
Եւ հերքեալ զօրութեամբ Բանին խաւարին խորամանկս,
Ցանէին եւ տնկէին զցորեան կենաց առատապտուղ.
Եւ ահա բուսանէին հասկաւորեալ ջրով Հոգւոյն.

Ծառայքն եւ սպասաւորք Արքայ Որդւոյն Հարսանեաց
Ելեալ կացին 'ի հրապարակս՝ կատարելով զմեծ հրամանն.
Զխեղս եւ զկոյրս, կաղս եւ զաղքատս մուծին 'ի տուն Հարսանեաց.
Եւ հրաւիրակք 'ի Հօրէն առաքեցան 'ընդ աշխարհ գաղղս.
Իւր սիրելի միակ Որդւոյն ընտրել ըզՀարսն ամբիծ եւ սուրբ.
Շրջեցան, եւ երբ գտին, անդ խառնեցան, նոցա եղին.
Եւ զինչ էր այդ նոցա, Աւետարան էր եւ հաւատ.
Թողուլ ըզկուռս եւ ըզտունն հօր, երթալ զհետ հրաւիրակացն.
Հաւանէր Հայկայն յօժար, թողլոյ ըզտունն քաջ Որբէկեայ.
Ո՛չ կամէր կալ եւս 'ի նմա, որպէս ծընողըքն խընդրէին.
Եւ մինչ լուաւ զայս աւետիս, ում ըսպասէր նա խանդակաթ.
Թէ գեղոյ իւր ցանկացող Արքայորդին նոր Փեսայն
Կոչէ զինքն 'ի Հարսանիս, փեսայանալ կամի Հոգւով.
Վասն որոյ միաբանեցեալ չոգաւ ըզհետ հրաւիրակացն,
Որ ըզնա զարդարեցին նոր հանդերձիւքըն հարսանեաց.
Եւ Նարդեան անուշահոտ իւղով օծեալ շնորհաց Հոգւոյն՝
Այնպէս 'ի յառագաստ երկնաւորին մուծին յերկրէ,
Փեսային Քրիստոսի անդ կացուցին 'ի յանդիման,
Իբրեւ ըզկոյս մի ամբիծ, որպէս պարծի Անօթն ընտրեալ։

Ո՛վ հրաշալի Սիօն վերնատունդ, Հոգին 'ի քեզ վառեաց ըղձնոց,
Թըրծեաց զանօթըս հողանիւթ, Կրակէ՛ն եղեն ոսկիք անզօր.
Ո՛ զարմանագործ արուեստիւ, ուստի՞ դարձան բրուտի անօթք։
Եւ զի՞ ապա Պօղոսն ասէ, թէ մեք անօթք եմք խեցեղէն,
Գիտեմ ըզմիտըս քո, Պօղոս, 'պարծանք Հոգւոյն տալ կամիս.
Այդ խեցեղէն անօթք չէի՞ն, որ գլորեցան յամէն աշխարհ,
Տապալեցին ըզկռոց տունս, փըշրուր փըշրուր եղեն դրօշեալքն։
Խեցի անօթն այն Պօղոս, 'ի Սաղէմէն մինչ 'ի Հռոմ,
Քանդեց, տապեց զհին աշխարհ, միոյն Աստուծոյ կանգնեց տաճար,
Զաստուածոց հօր Արամազդայ, ջընջեց զանունն զՅիսուս գրեց։
Իբրեւ ըզգետ յորդեալ գընայր՝ զԱւետարան տանէր առ ազգս,
Այդ գետն էր որ վարեց տարաւ զհին կրօնին առասպելս.
Ցանծանօթին Աստուծոյ քարոզ կարդաց անդ յԱթէնս,
Կարծեցեալ սերմանաքաղն՝ յամօթ արար զիմաստունս,
Այնպէս Հոգին Աստուած զխեցեղէնս արար անյաղթ,

Այսպէս ընտրեալ անօթք վայր շրջեցին զհին աշխարհ.
Եւ 'ի վերայ սրտին եդին ըզկափարիչ Վէմն անշարժ.
Արդ 'ի վեր համբառնալով զաչըս, Մանկունք, 'ի Վերնատանս
Մաղթեսցուք հաւատով առ ինքնազօր Հոգին Աստուած,
Եւ 'ի մեզ որչափ կամի՝ հեղցէ զկաթիլ իւրոյ՝ շնորհաց,
Հոգի ուղիղ սուրբ գիտութեան եւ հանճարոյ բաշխեսցէ մեզ.
Մերժեսցէ իսպառ 'ի մէնջ ըզշնչաւոր թիւր գիտութիւն,
Ըզհաճոյն իւր ուսուսցէ, որ տայ խորհիլ միշտ ըզվերինսն։
Հոգին տայ, ոչ անխայէ թէ արժանի լիցուք պատրաստ,
Օթեւանըս յարդարել 'ի բնակութիւն նմին մաքրութեամբ։
Եւ զի միշտ ինքըն շրջի խնդրէ զոգիս երկիւղած,
Որ ըզմարմին վարէ 'ի մեղս չ'առնէ երբէք անդ դադար.
Նա՝ 'ի թիւր խորհրդոց եւ նենգաւոր մտաց փախչի,
Տրտմի յոյժ յորժամ թափուր տեսանի մեք նորին 'ի պարգեւաց։
Ուստի զանձինըս մեր խորան մաքուր գործով յօրինեսցուք,
Կենդանի տաճար լիցուք ըստ հոգեկիրըն Պօղոսի,
Զի եկեալ դադարեսցէ եւ հանգիցէ առ մեզ Հոգին։



# ՆԱԽԱՑՈՅՑ ՊԱՏԿԵՐ ԻՄԱՍՏԻՑ

## *ԵՕԹՆԵՐՐՈՐԴ ԵՐԳՈՑ*

---

Ի ՀԱՍԱՆԻԼ *յաւարտ տնօրինական Տեղեացն սրբոյ Քաղաքին՝ ածէ անդուստ 'ի գերեզման. Սուրբ Աստուածամօրն, որ է 'ի ձորն Գեթսեմանի։ Հրաշափառ Վերափոխումն նորին յերկրէ և աւանդումն ամենասուրբ և պայծառ հոգւոյն 'ի ձեռն Միածնի իւրոյ։*

*Այս հրաւիրէ զՄտնկտին 'ի գեղահրաշակ վանս Սրբոց Յակոբեանց։ Համառօտ ներբողեան 'ի Սուրբն Յակոբ որդին Զեբեդեայ և 'ի միւս Յակոբն՝ Տեառնեղբայր կոչեցեալ։*

*Ի վախճանի կոչէր Երգոցս՝ յիշեցուցանէ Մանկանցն համառօտիւք զօր դատաստանին զահաւոր ատենին զհանդէս, որ անդ լինելոց է և կրկին շնորհնական Տեղւոյն յիշատակելով՝ յուշ արկանէ նոցա զերախտիսն Քրիստոսի։*

*Գոհութիւն Հրաւիրակին առ սէրն իւր Յիսուս և կնիք երգոց բանից։*

---



# ՀՐԱՒԻՐԱԿ

## ԵՐԿՐԻՆ ԱՒԵՏԵԱՑ

### ԵՐԳ ԵՕԹՆԵՐՈՐԴ

Մնաց ինձ աւանդն տաղաւարին զձեզ հրաւիրել, ով Մանկունք,
Ի հանդէսն աշխարհահաւատեան 'ի ձորըն մեծ Յովսափաթու,
Ի գերեզման հրաշալի Մօրն Աստուծոյ Մարիամու.
Որ այն ինչ գայր հասանէր փախճան ի կենաց աշխարհի,
Մօրն ու Որդին երթալ պատրաստ էր. լինել երկնից Թագուհի,
Զի ուր Ծնունդ՝ անդ պաշտօնեայք, այլ յու՞ էր կայան, զի Մայր էր։
Իջանէր որպէս յառաջն մեծ Գաբրիէլ աւետաւորն,
Ի լեառըն Ձիթենեաց տայր բարբառ կուսին վերայ.
Ուրախ լեր եւ արդ, ասէր, ով երջանիկ Մայր Յիսուսի.
Հանդերձեալ ես ահաւասիկ կալ ընդ աջմէ Որդւոյն փառօք։

Միածին Որդեակըն քո, որ Թող ընդ քեզ չոգաւ յերկին,
Ի պատիւ ծնողին ամբիծ նա խոնարհի գայ առ քեզ.
Հրաւիրել ըզՄայրդ 'ի յերկրէ տանել վերին յԵրուսաղէմ.
Շատ եղեւ քեզ, Մայր Տեառն, կալ 'ի հովտի, վըշտաց աշխարհ,
Եւ այդպէս աղքատին կեանըս վարել, կրել տառապանս,
Անհանգիստ զօր ամենայն հալածեալ յազգականացդ:
Եկն ահա քո ժամն ուրախ, թողուլ զաշխարհ երթալ յերկինս,
Կալ ընդ Որդւոյդ եւ նա ընդ քեզ մնալ անբաժան յաւիտեան.
Քանզի յայնժամ հոգեզուարճ Մայրըն հրճուէր յայս աւետիս,
Ուրախալից դառնայր անդէն 'ի տնակըն իւր աղքատիկ.
Ժողովեալ գային առ նա պաշտող կանայքըն խաչակիր.
Եւ Առաքեալք, որ քարոզանկիւն 'նդ աշխարհ բոլոր սփռեալ էին,
Նոյն գային հասանէին յԵրուսաղէմ ազդմամբ Հոգւոյն,
Հանդիսադիր լինել Կուսին 'ի գերեզման եւ 'ի յերկինս.
Անդ ակըմբեալ բոլորէին շուրջ ըզմահճօք Մօրն անմահին,
Զարդազգեստեալք լուսալառ, եւ պաշտէին զտիւ եւ գիշեր,
Անդադար քաղցր երգովք, ըզԿոյսըն սուրբ օրհնաբանեալ:
Հոգին ազդեալ էր, գիտէին եթէ Որդին միածին,
Որ 'ի ձեռս Հօրն աւանդեաց անդ 'ի խաչին ըզՀոգին,
Վայելէր իսկ եւ արժանի, որ ինքն առցէ զՄօր հոգին.
Եւ ահա շարժումն եղեւ, մերձանային տանն առիք,
Իջանէր Տէրն 'ի յերկնուստ գայր եւ կանգնէր ըզգըլխով Մօրն,
Լուսափայլ ամպն էր առից իւր պատուանդան եւ կայան.
Եւ հոլանի գըլխոյ Կուսին, Թափօր լերին հրաշից պէս:
Հրճուէր հոգին կարօտ Մօրն, զուարթանային դէմքն առ Որդին,
Ասէր, Որդեակ, եկիր դու հանգուցանել զվաստակեալ Մայրդ.
Առ ահա զհոգիս իմ, ստեղծող հոգւոց, Տէր իմ Յիսուս,
Աւանդէր քաղցրութեամբ 'ի ձեռս Որդւոյն աւանդատուր,
Այնպէս դիւր եւ հեշտ, որպէս խընծոր տայր 'ի ծոցոյն.
Պետրոս հայէր եւ զարմանայր ընդ լուսազեղ պայծառ հոգին,
Հարցանէր ստեղծող 'Բանէն եւ պատասխան առնոյր անդ.
Թէ զոգիս մարդկան այդպէս պայծառ ստեղծի ըսկըզբան,
Այլ սիրեցին մարդիկ ըզմեղս, հոգին դարձաւ խաւարազգած.
Զ'գիտես, Պետրէ, մեղքն ըզհոգին խաւար առնէ չարին պէս,

Իսկ անմեղին եւ արդարոյն հոգին պայծառ է լուսոյ պէս։

Վերանայր Տէրն անդրէն, զՄօր լոյս հոգին տանէր 'ի լոյսն,
Եւ այս պաշտող կանայք պատանեցին 'զմարմինըն սուրբ,
Եւ բարձեալ Առաքելոց օրհներգութեամբ եւ սաղմոսիւք,
Ցայս տապան բերեալ եդին զանօթ դամբանն, Թադուցելոյ.
Ուր պահ մի 'ի պահ ետուն, մինչ մնայր անդ Լուսոյ Մայրն։
Քաւ, որ ծընաւ զանապականն՝ ապականէր զՄայրն 'ի հողին.
Բանն, որ 'Կուսէն զմարմինն էառ, զմարմինն արար անապական,
Մինչ չարար հրաշալէս ըզՄօր մարմինն անապական.
Հաւատամ, Տէր, ոչ երկբայիմ, քո բան հրաշք է՛, հրաշք։
Եւ զի յետ երից աւուրց Վերափոխէր Կուսին մարմին,
Այլ թէ որպէս, ես չգիտեմ. Աստուծոյ բան է ով գիտէ.
Հաւատք, հաւատք, այս է միակ հաստատեալ ոգւոյն կրօն։

Բարդուղիմէ Առաքեալ, որ դեգերէր 'ի տար աշխարհ,
Ի փոխումն Աստուածամօր, նա գայր ձեպով, ոչ ժամանէր.
Որ ըզԿուսին տապան գըրկեալ լայր եւ ողբայր անմխիթար,
Պաղատէր Թախանձանօք, ով Առաքեալք եղբայրակիցք,
Տուք ինձ հրաման, որ զկափարիչն առնում 'ի վայր բանամ զտապանն,
Մինչ կընքեալ են քահանայք եւ կամ զինուորք պահեն ըզնա.
Ո՛չ, ես բանամ եւ համբուրեմ ըզձեռըն Մօրն սրբասուն,
Որ սընուցիչ եղեւ Բանին եւ գըրկարան Աստուածորդւոյն.
Է՛, Բարդուղիմէ, դու բաց եւ տես, փոխեցաւ Մայրն
եւ գերեզման Թափուր է։

Անդ որդեգիրն Յովհաննէս պարզէր ըզձեռն առ Պետրոս,
Տո՛ւր, ասէր, Բարդուղիմեայ դու զտիպ Կուսին կենդանագիր,
Թող սփոփանս եւ մխիթար լիցի ոգւոյն թախծելոյ.
Ընկալեալ զայն խնդալից, առ որ անչափ ըղձիւ տենչայր,
Համբուրէր եւ անձկաբեկ սիրտըն լինէր բերկրապատար,
Լեալ այնպէս պարգեւագիւտ, դառնայր ուրախ 'ի վիճակն,
Անձեւացեալ աշխարհին զայն ընծայէր գոլ պահապան,
Եւ հալածիչ խաւար չարին 'ի տեղւոջէն դիւատարաստ։
Ուր առ ափովն Տիգրիս գետոյ շինեցաւ վանքըն Հոգեաց,
Անդ ժողովեալ Կուսան կանայք աւետաւորք Բանին կենաց,
Քարոզեցին զԱւետարան եւ գործեցին հրաշըս պէս 'ի պէս։

Մարմնով անմարմնացեալ՝ լուսեղինաց նմանեալքն,
Հայելւոյ փառքն էր Հոգւոյ տուն, մարմին մեռեալ առ աշխարհ,
Եւ ո՞ւր պայծառ այդ հոգիք, հոգիք դարձան առ աշխարհ,
Գնա՛ց, այլ ոչ դառնայ Ճգնաւորաց ժամանակ։

Այժմ մեք, ո՛ Մանկունք, առ տապանաւ Կուսին՝ անկեալ
Արտասուօք պաղատեսցուք, զի բարեխօս լիցի առ մեր
Յաւիտենին աշխարհախումբ առ անաչառ Որդին դատող։
Քանզի սաստ գայ 'ի կատարել ըղձալ մարդկան ժողովելոց,
Հեծանաւն արդարութեան զգործսն կշռէ յերկնից ամպոց,
Զյարդքն ա՜հ, անշիջելի հրոյ գեհեննին մատնէ յայրումն։
Մի՛ ուրեմն հանցուք 'ի մեռաց զահեղ աւուրն բղխատուցումն,
Մի՛ մեղօք՝ անմխիթարար ելցուք յառաջեան Դատաւորին,
Եւ լուիցուք զահեղ վճիռն, Երթա՛յք յինէն, ո՛վ անիծեալք.
Այլ, զոր սիրոյ ձայնիւ կոչէ. Եկա՛յք, օրհնեալք Հօր իմ։
Որ քաղցելոց բըրդեցիք հաց, ծարաւելոց ետուք ջուր.
Որ զգեցուցիք ըզմերկ Թշուառն, ժողովեցիք զօտարն 'ի տուն.
Որ հիւանդին գնացիք 'ի տես, բանտարկելոյն ելիք յայց.
Եկի՛ք ծառայք, որ սիրեցիք զԱւետարան եւ ըզպատուէրան,
Սիրել զԱստուած՝ եւ զընկերն, որ համառօտ եղբայր է,
Մտէք յերկնից ուրախութիւն յաւէտ ընդ Տեառըն լինիջիք։

Այժմ դուք, որդիք խաւարի, որդիք անգութք եւ անհնուէրք,
Որ չարարիք ողորմութիւն, ոչ աղքատին, ոչ ծարաւին,
Ոչ օտարին, ոչ հիւանդին, եւ ոչ անտէր բանտարկելոյն,
Ոչ մերկացեալ ողորմելոյն, որ դեգերէր առ դուրըս ձեր,
Թո՛ղ այս անդր, եւ կրափեցիք զանաւաղն՝ եւ ճընշեցիք չարաչար։
Եւ զի՞ ասա միայն արդարոց ըզգթութիւն յիշէ Տէր,
Ընդ այն եւ եթ կըշռէ ըզվարձս, անյուշ անէ զայլ բարի գործս.
Յո՛յց տայ արդեօք թէ քան զամէն սէր ընկերին եւ գթութիւն.
Մեծ է առնել, զի սէր ծնանի զայլ բարի գործս.
Եւ առ այս ճառաբանէ քեզ հոգեխօսըն Պօղոս.
Թէ զամենայն ես առնեմ, մինչեւ մատնել զանձն իմ յայրումն,
Թէ չունիցիմ զընկերին սէր, ոչինչ օգտեմ 'ի գործոցն.
Սէրն է միայն որ կենդանի առնէ ըզգործս ըստ հաւատոցն։
Յո՜չ ձեզ, Մանկունք, սատարուք, չմոռանալ սէր ընկերին,

Ունել զսորով եւ զգթութիւն եւ մարդասէր հոգի ազատ.
Յարաբերել անխափանիր, երկնաւոր Հօր նմանելով.
Որ հաւասար տայ աշխարհի զանձրեւըն իւր եւ զարեւ.
Այսպէս լինիք ճշգրտապէս բարի որդիք Բարձրելոյն.
Դատաւորին լսէք ըղձայն, Եկա՛յք, օրհնեալք Հօր իմոյ.



Մինչեւ ցարդ, այնիւ Մանկունք, 'ի բոլոր վայրս Տնօրինական
Մարդացեալ Աստուածորդւոյն, շրջեցաք ընդ իս` հասաք 'ի լրումն.
Հրաժարեմ այժմիկ ըղձեալ եւ խաչակցացն 'ի վկայարանս,
Վեհագոյն եւ հրաշակերտ 'ի սուրբ Աթոռըն Յակոբեանց,
Գրիգորին եւ Տրդատայ շնորհիւ ձօնեալ Հայոց պարգեւ,
Բարձրացեալ յարմարապէս 'ի գլուխ լերինըն Սիոնի.
Ուր հանգչի գլուխըն պատուեալ Առաքելոյն Յակոբայ

10

Որ ընդ խորումն հարազատի խոստմնայքին ըմպել զբաժակն ։
Անդ 'ի հանգիստ կայ եւ մարմնով, որ արդարոյ կրէր զանուն,
Միւս Յակոբայ աշակերտ, որ Տեառնեղբայր յորջորջէր ։
Նախ 'ի մատուռն մտեալ տացուք համբոյր Գըլխոյն այնմիկ,
Որ պարծանք է Հայոց ազգին, ում ժողովուրդ դիմէ յուխտ.
Խնդրել առնու, քանզի Աստուած փառաւորէ զծառայն իւր ։
Աստանօր զքարի բողբոջըն Զեբեդեայ դրուատեցից,
Զառաքեալն Յակոբըն ասեմ, քան ըզնախնիսն դերազանցեալն.
Նա եւ եթ 'ի մի գիշեր ըզցանկալին արկեալ 'ի բուռն,
Թողուլ երբէք ոչ կամէր, չեւ ըզփափաք սըրտին առեալ ։
Նա զերրեակ ամիս ողջոյն զտիւ եւ գիշեր միշտ անբաժան,
Ցանկալւոյն ըզհետ շըրջեալ՝ սիրով նորին սիրային ընդոյր ։
Նա ցաւոցն ամոլայքըն չհանդուրժելով՝ ձըգէր ըզՏէրն,
Կաղացեալ այլ ոչ կարէր վազել ըզկնի եւ ըմբռնել.
Օրինակ որդւոցն Թոմայ, որ կաղացան կամօք իւրեանց,
Զհետ շաւղացն երկնաշու ճըշմարտութեան ճանապարհին ։
Նա որոշեալ 'ի նոցունց՝ ճեա քաջաշնորհ երեւեցաւ,
Զօրացաւ եւ քաջընթաց անկաղ ոտիւք սուրբ հաւատոյն,
Հետեւեցաւ Քրիստոսին եւ երկնատար կենաց ուղւոյն ։
Նա զորդիս երկաթատամն ծընեալ մարմնով տայր աշխարհի,
Իսկ սա եղեւ Առաքեալ դնաց 'ի վիճակն իւր 'ի Սպանիայ,
Անդ ըզԲանն քարոզեաց այն մոլեկրօն անաստուածիցն.
Ի Քրիստոս հոգւով ծընեալ՝ զազգըն ողջոյն՝ տայր երկնից ։
Որ Յիսուսին խոստացաւ յօժար ըմպել զմահուն բաժակ,
Այլ անդ, ուր Տէրըն իւր սուրբ յիւր ազգէն դըժընդակ.
Վասն որոյ դառնայր անդուստ եւ 'ի Սողիմ աճապարէր,
Տեառըն իւր նըմանելով, որ եկն ինքնին 'ի չարչարանս ։
Ուր 'ի ժամու Հերովդեսէն եդաւ 'ի բանտ զերդ Յովհաննէս,
Արք ըզնոյն բաժակ արեան համամաք գըլխոյն Քրիստոսանուէր.
Ում համբուրման տարփացեալք 'ի սպաս հասին զուարթունք երկնից
Եւ բարձեալ զայն 'ի միջոյ լուսապիտակ դաստառակաւ,
Բերին այսր յԵրուսաղէմ, ուր սրբաւորք նըստեալ լային,
Աստուածամայր եւ Յովհաննէս եւ Յակոբոս Առաքեալք,
Անդ առաջի նոցա եդին ըզգըլուխըն սուրբ արիւնթաթախ ։

Քանի՛ցս եւս կրկին կոծ յաւելոյր մտերմացն,
Լացի՛ն լացի՛ն եւ ապա Թաղուցին առ ղանգիւտ գանձի։
Սիրելի էր Յակոբայ բնակիլ գլխովն 'ի Սուրբ Երկրիս,
Լինել հուպ վեհագունի Գլխոյն մեռեալ եւ յարուցեալ.
Իսկ մարմնովն կալ յիւր վիճակին, ուր քարոզեաց ըզկենաց Բանն,
Իբրեւ յօդիչ որոշելոցն 'ի մի գլուխըն Քրիստոս.
Յոր միանան համօր անդամք եկեղեցիք հեթանոսաց։
Նա՛ մասամբըն իւր միով զինքն ընծայեաց ազգիս Հայոց,
Իսկ միւսովըն՝ ժապհական իւր վիճակին Սպանիոյ։
Այսպէ՛ս Թէ աստ եւ Թէ անդ պարգեւ անգիւտ բաշխեցաւ,
Եւ հոգւովն առ Քրիստոս միշտ բարեխօս նոյն՛ եւ մեզ.
Ուր արդ՝ նըստի յաջմէ Փրկչին՝ արեամբն 'ի մահ մըկըրտելով։
Դիմեսցուք այժմ 'ի նըշխարս եւ փոքրիկանըն Յակոբայ.
Որ ամփոփին յԱւագ խորան առ սեղանով վիմին անշարժ.
Վըշտըմբեր ծըգնող ոսկերք, որ փըշրեցան յազգէն ժըպիրհ։
Փոքրի՛կ, այլ մեծու Թեամբ շնորհացըն իւր յոյժ անքանակ.
Արդա՛ր, զի անարատ գնայր 'ի շաւիղս վարուց իւրոց,
Տեառնեղբայր, զի ազգական եւ մերձաւոր էր Քրիստոսին,
Ամոխակ սիրանուոց 'ի մի տոհմէ շառաւիղեալք։
Այսքի՛նք պատուեալ եղեւ 'ի մէջ գլխոյն Առաքելոցն,
Նախաթոռ յԵրուսաղէմ՝ նըստիլ 'ի գահ Դաւթի որդւոյն։
Յիսուսին նըմանելով սիրեաց եւ սա զՅակոբայ տուն,
Անդ եկաց, անդ քարոզեաց, որ զԻսրայէլ ածէր 'ի լոյսն։
Այլ բանիւըն իւր խրատու գրէր խօսէր առ հեռաւորս,
Առ 'ի սփիւռս երկոտասան Հրէից ազգացըն նորակոչ.
Յորդորէր, սակ հաւատոյն ապաստանիլ ընդունայն է,
Եթէ ոչ տալ՝ ըզպըտուղ գործոց բարեաց՝ փոյթ ունիցիք։
Ծառ էք նոր Քրիստոսատունկ, որ արդ՝ ծաղկեալ էք հաւատով;
Տո՛ւք պըտուղ, զի մի՛ հատանիք սուր տապարաւն եղեալ 'ի հուպ։
Սիրտ վառեալ աննիւթ բոցովն եւ նախանձու Եղիային,
Ո՛չ նըման նըմին փախչէր՝ զանգիտելով յազգէն ոսոխ,
Այլ իբրու զվէմ հաստատուն կայր 'ի միջի գայթակղելոցն,
Ըզշինողըս կըշտամբէր, որ զվէմն անկեան անարգեցին։
Դարձեալ սիրով աղաչէր ընտրել անդրէն զայն 'ի շինուած,

Հաւատով միանալ եւ հաստատիլ 'ի վէմն անշարժ։
Մի՛, աղէր, հորեալ 'ի նա դուք մերժիցիք մանր 'ի կորուստ,
Եւ հողմով բարկութեան հասեալ այսր անդր ցրուեսջիք։
Այլ որդիքն ապառում ձանձրացեալ յոյժ յանդիմանչէն,
Խորհեցան խարդաւանել զԵրանելին Ներսէս 'ի մահ,
Դարան գործել Արշակայն եւ կալ անմասն յօրհնութենէն։
Վասն որոյ հնարիւք հանեալ զնա տաճարէն 'ի յաշտարակ՝
Եւ անդուստ արկին 'ի վայր, որ բարձրացաւ հոգւովն յերկինս.
Մինչ ոչ մեռաւ աղանչելեօք՝ Թափչով ըզգլուխն փշրեցին,
Բարձին զԱրշակն յաշխարհէս, զի դըժպըհի էր Նոցա յոյժ։
Մատուցեալ արդ, ով Մանկունք, եւ մեք ոգւով փափագողքն(*),
Արշակայն նըշխարաց տացուք համբոյր սիրոյ շըրթամբք.
Երկնամբարձ գըլխոյն այնմիկ, որ զհամայնից գլուխն Քրիստոս
Ընդունէր, վասն այնորիկ Թափչով հարեալ խորտակեցաւ.
Աչացն արտասուահեղ, որ վասն ազգին լայր եւ հոգայր,
Բերանոյն որ լոյս բըղխէր որպէս խորան Աստուծոյ,
Որ վըկայ լինէր Բանին եւ դաւանէր ըզնա Քրիստոս,
Որ դըպրաց՝ փարիսեցւոց յանդիմանիչ էր անաչառ..
Ձեռացն Աստուածակիր, որ պաղատէր տարածելովն,
Որ զպատարագն արիւնագեղ նախանուէր մատուցանէր։
Սրտին այն սըրբագոյն, որ Յիսուսին էր բնակարան.
Որ անխառն էր եւ անախտ 'ի բնաւ չարեացըն եկամուտ.
Ծընգացըն խըստացեալ 'ի կըրկնելոյ ծունր 'ի յաղօթս,
Որ տըկար էր եւ կըլթաս առ 'ի պահոցըն պընդութեան.
Ոտիցն ընթացելոց միշտ 'ի տաճարըն սըրբութեան,
Որ 'ի տես հիւանդաց՝ երթայր հոգայր եւ աղօթէր։
Համբուրիւ ողջունեսցուք զբոլոր մարմինն սըրբազընեալ,
Զպատարագն անուշահոտ եւ ըզբանաւորըն ողջակէզ,
Ըզպարկեշտն եւ ողջախոհ ըզկուսութեամբըն զարդարեալ,
Ըզտաճարըն մաքրութեան կազմեալ մասամբքն արդարութեան,
Ուր եկեալ Քրիստոս ընդ Հօր՝ օթեւանէր ըստ իւր բանին։

---

(*) Սարգիս վարդապետ Շնորհալի կոչեցեալ, որ զԿաթուղիկեայց թուղթս մեկնեալ է լի ճոխաբանութեամբ։

Որ երգոյս ձայնիւ, Մանկունք, ելք հոգւով յԵրուսաղէմ,
Ուր յայտնեցաւ սէրն Աստուած՝ անճառ սիրովն առ մարդիկ.
Տիպ սիրոյն Աստուածային նկարեցաւ 'ի հոգիս ձեր,
Բեթլեհէմի Մսուրոյն նկար, Սիոնի Լերին Խաչին նկար.
Սուրբ Յարութեան վէհ տաճարին, Գերեզմանին վիմին նկար.
Երանի՜ ձեզ թէ պահիցէք 'ի հոգիս ձեր զնկարեալսն։
Իբրու 'ի վէմս քանդակեալ անեղծ մնասցեն այս յիշատակք։
Զայսոսիկ յուշ ածելով՝ նորոյ Սիոնի ծնեալ Մանկունք,
Ի սէր Փրկչին վառեալ մտօք՝ ծն փութայցէք յԵրուսաղէմ.
Յոր ածի ես ըղձեղ հոգւով եւ Հրաւիրակ եղէ երգովս։
Արդ յիշատակ թողում ձեզ այս, ես մեռանիմ երթամ առ հարսն,
Քանիցս անգամ թէ ընթեռնուք միշտ յիշեցէք զԵրուսաղէմ.
Եւ յիշեցի, երիցս անգամ եկի տեսի զԵրուսաղէմ.
Շրջեցայ, համբուրեցի, յորս կոխեցին ոտք Փրկչին,
Ուխտ եդի որպէս Դաւիթ ոչ մոռանալ զԵրուսաղէմ։
Առ քեզ բանիս ըղձեմ դարձուցից արդ, սէր իմ Յիսուս,
Քեւ ըղձնիք յաւարտ երգոյս դընեմ վերջին վայելչորէն,
Խոստովանիմ թէ քո շնորհ քերթող առնէ զծերն ապիկար.
Խրախուսեալ 'ի քէն, ո՛վ Տէր, անդ յիսկզբան մտի յայս դուռն.
Քե՛զ ընդ Երանելոյ՝ տամ ընծայեմ ըզգոհութիւն։
Ո՛վ քո սիրոյդ, միթէ հո՞ւր է, զոր արկեր դու յերկիր մարդկան,
Որ զհամօրէն աշխարհ վառէ՝ վարեալ տանի յԵրուսաղէմ.
Վարեցե՛ր եւ զիս, ո՛վ Տէր, մինչ ես հոգւով կայի վարեալ,
Այլ դու արդ հոգւով մարմնով զիս վարեցեր յԵրուսաղէմ։
Մինչ Մանուկ էի տղհաս յիս թագուցեր սիրոյդ ըզկայծ,
Եւ վառեցեր զճրագ բանիդ, որ լոյս տայր ինձ կենաց շաւիղ.
Արդ հասի ես, անցին զինեւ եօթանասուն ամք ծերութեան.
Ծերեմ 'ի քէն, լոյս իմ Յիսուս, պահեա զճրագն իմ լուսավառ,
Ո՛հ, չիջանիմ ես 'ի խաւար եթէ քո լոյս չպահէ զայն։
Եւ մի՛ հաներ զհոգիդ յինէն մինչչեւ իցեմ ես մեռեալ.
Զի յամենայն 'ի սրտէ զՄարդեղութիւնդ սիրեցից,
Եւ յիշեցից զԵրուսաղէմ, Սիոնի Սուրբ Լեառն
եւ Խաչին ճառ։
Դաւիթ գոչէր, Երուսաղէմ, ո՛վ Նախասկիզբն ուրախութեանս,

Թէ մոռանամ զքեզ չըյիշեմ, Թող կըցեսցի լեզուս 'ի քիմս,
Եւ ես ըզնոյն կրկնեմ, Յիսուս, յիշել ըզքոյդ Երուսաղէմ.
Տուր ինձ արեւ, Տէր, զի կեցից եւ յիշեցից զԵրուսաղէմ.
Ցորչափ չըմնչէ հոգիդ յիս երգ, ես երգեցից զԵրուսաղէմ:
Այլ թէ կատրէ մահն ըզգըրիչս եւ խորտակի ոգւոյս քընար,
Ես յայնժամ 'գերեզմանէս երգեմ Երկոյս յիշատակաւ.
Զի երգահան եմ Սուրբ Երկրիդ եւ Հրաւիրակ Սիոնի որդւոց:
Զի՞նչ արիտուր կարէի տալ, ով մեծատուր շընորհաց աղբիւր.
Անբաւ սիրոյդ, Խաչիդ մահուն փոխարինել մարդ ունի՞ բան.
Ես ունիմ սիրտ, զայն ետու քեզ, ասա՛ Որդեակ, բաւ է այդ:
Իսկ դու զի՞նչ տաս ինձ, ով Տէր, յաշխարհի աստ նեղութիւն.
Արդա՛ր ես, Տէր, բայց ապա տաս ԱՐՔԱՅՈՒԹԻ՛ՒՆ, ԱՐՔԱՅՈՒԹԻ՛ՒՆ.

ԵՒ ԱՅԼ ՈՉԻՆՉ

ԱՄԷՆ



# ՀԱՄԱՌՕՏ
## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ Ի ՎԵՐԱՅ ՍՈՒՐԲ ՏԵՂԵԱՑՆ
## ՈՐՔ ՑԻՇԱՏԱԿԵԱԼ ԵՆ
## Ի ՀՐԱՒԻՐԱԿԻՍ

---

ՆԱԶԱՐԷԹ. *Յիսուսի հայրենիք հեռի կայ յԵրուսաղէմէն իբրեւ երից աւուրց ճանապարհ, յորում էր հայրենի տունն Աստուածահօրն Յովսեփայ և է արդ վանք 'ի ձեռս Լատինաց. ունի վայելչաշէն տաճար մի։ Իսկ տեղին, յոր էջ Գաբրիէլ և աւետիս ետ կուսին՝ քանի մի աստիճանօք խոնարհագոյն է քան զյատակ եկեղեցւոյն և ունի նմանութիւն Բեթլեհեմեան այրին։*

ՅՈՎՀԱՆՆՈՒ ԾՆՈՒՆԴ. *Իբր մի ժամ և կէս հեռի է յԵրուսաղէմէն, 'ի լեռնակողմն՝ ուր շինեալ կայ վանք Յովհաննու ծննդեան. ունի գեղեցիկ և վայելուչ եկեղեցի մի 'ի ձեռս Լատին կրօնաւորաց։ Իսկ բուն ծննդավայր ցածուն այր մի է. քանզի վիճակեցաւ Մըկրտիչ ծառայն Տեառն իւրում նմանելով 'ի մէջ այրի ծնանիլ։*

ԲԵԹՂԵՀԷՄ. *Քաղաք Դաւթի, բացագոյն կայ յԵրուսաղէմէն իբր երկու ժամ յարեւմտեան 'ի հարաւակողմն, յորս կառուցեալ կան երից ազգաց՝ Յունաց, Հայոց և Լատինաց ընդարձակ վանորայք և բազմաթիւ սենեակք 'ի պէտս միաբան կրօնաւորաց և ուխտաւորաց։ Մեծ եկեղեցին, որ իբր գաւիթ համարի Սուրբ Ծննդեան տաճարին, ընդարձակ է յոյժ, շինեալ 'ի վերայ միաձոյլ քարեղէն մեծամեծ յիսնից սեանց, որ կամար թուի յառաջագոյն, որքատաշ քարամբք յօրինեալ լինէ, բայց արդ տեսանեմք 'ի կարծրագոյն փայտից շինեալ է 'ի վերջին ժամանակս։*

*Իսկ այրին հովուաց հրաշալի տեղին Սուրբ Ծննդեան Փրկչին մերոյ՝ է 'ի ներքոյ Աւագ խորանին, յոր իջանեն աստիճանօք և 'ի*

վերոյ չինեալ կայ սեղան կիսաբոլոր · հուպ ամին հանդէպ Ծննդեան սեղանոյն կայ Մսուրն անբանից, ուր եդաւ նորածին մանուկն Յիսուս և ընծայեցաւ 'ի մոգուցն ։

ՅՈՐԴԱՆԱՆ ԳԵՏ · Հեռի կայ յԵրուսաղէմէն իբրեւ միոյ աւուր ճանապարհ · որ 'ի հիւսիսոյ 'ի հարաւ ընթացեալ թափի 'ի մեռեալ ծով ։ Եւ մեռեալ ասի զի չիք 'ի նմա կենդանի ։ Այժմ յեզերս Յորդանանու կան երկու փոքր վանորայք Յունաց, որք իբրեւ հիւրանոցք ծառայեն Յոյն ուխտաւորաց որք կարի ջերմեռանդ են երթալ Յորդանան լուանիլ ջրովն, որով լուաց Փրկիչ զմեղս աշխարհի ։

ԼԵԱՌՆ ՓՈՐՁՈՒԹԵԱՆ · Կայ հանդէպ Երիքովի յարեւմտից կուսէ, և է փոքրիկ լեռնակ ուր եկաց Տէրն մեր և ժուժկալեալ զքառասուն օր՝ յաղթեաց փորձիչ դաւաճանին ։

ՏԻԲԵՐԻԱԿԱՆ ԾՈՎ · Որոյ ջուրն անոյշ է և ձկնաւէտ, և ձգի հիւսիսոյ 'ի հարաւ, ուր մարմնացեալ Աստուածորդին յաճախ շրջէր յեզերս ծովակին, և անդ ընտրեաց զձկնորս Առաքեալս, որ առաջին զմարդիկ 'ի կեանս ։

ԼԵԱՌՆ ԹԱՓՕՐ · Կայ հանդէպ Նային քաղաքին · յառաջին ժամանակս 'ի գլուխ Թափօրական լերինն բազում մենաստանք շինեալ կային, որք յերեսաց արշաւանաց քանդեցան · բայց արդ մնացեալ կան դարձեալ 'ի ձեռս Լատինաց եկեղեցիք և յիշատակք Յիսուսի հրաշալի Այլակերպութեան ։

ԲԵԹԱՆԻԱ ԳԻՒՂՆ · Զմի ժամ հեռու յԵրուսաղէմէն եւ կից է 'ի պարանոց Ձիթենեաց լերինն ։ Անդ է գերեզման բարեկամին Ղազարու, զոր յարոյց Տէր 'ի մեռելոց ։ Անդ էր և տուն Սիմոնի բորոտին · ուր հրաւիրեցաւ Յիսուս 'ի մատակայ աւուրս չարչարանաց և օծաւ 'ի մեղաւոր կնոջէն ազնիւ իւղով նարդեան ։

ՍԻՕՆ ԼԵՌՆԱՏՈՒՆ · Որ է մերձ Փրկչին վանուց մերոց 'ի հարաւակողմ · զոր շինեաց Դաւիթ արքայն և անդ հանգոյց զտապանակն Աստուածային ։ Ի մեծահաւատ Հեղինէ թագուհւոյն շինեալ կայր աստ յառաջին դարս քրիստոնէութեան՝ կրկին եկեղեցիք, մինն 'ի ներքոյ իջման Հոգւոյն Սրբոյ, բարձրագոյն կաթուղիկէիւ և միւսն 'ի ներքոյ նորին, ուր կան շիրիմք Դաւթի և Սողոմոնի · էր երբեմն 'ի ձեռս Լատինաց · իսկ 'ի վաղուց հետէ Արաբացիք գրաւեալ են և չիք որ 'ի քրիստոնէից մտանել անդր ։

ԳԵԹՍԵՄԱՆԻ ՁՈՐՆ. Յոր ցուցանեն զպարտէզ ուր աղօթեաց Յիսուս 'ի գիշերին մատնութեան. փոքր ինչ բացագոյն է յԱստուածածնայ գերեզմանէն. Այժմ 'ի ձեռս Լատինացւոց է պարտէզն. և 'ի շրջապատ պարսպին 'ի ներքուստ կողմանէ յարմարեալ գետնափոր կան Յիսուսի խաչչարչարութեան զանազան դէպք եւ ձեռամբ արձանագործ փոքր պատկերք:

ՏՈՒՆՆ ԱՆՆԱՅ ՔԱՀԱՆԱՅԻՆ. Որ այժմ եկեղեցի և վանք Հայոց. շինեալ 'ի Հայրապետական քաղաքին առ պարսպաւ սուրբ Յակոբեանց վանուց, փոքր այլ եկեղեցիկ յորժամ եւ կոչի առ նախիկին ձիթենի Քրիստոսի. քանզի յորժամ ըմբռնեցին զՅիսուս նախապէս անդր տարան, և ծառն յոր կապեցին զՏէրն սա առաջինս, առ է:

Թերևս զարմանայ ընթերցող, թէ ծառն այլուր մինչև 'ի քանի դարս. Այն, զայդ քաջ գիտեն Արաբացիք, զի յորժամ կարի ծերանայ ծառն՝ զայն կտրեն 'ի հողաբերանոյն եւ անդրէն արմատք նոր մատուցանեն շառաւիղս արձակեն, զի արմատք ձիթենւոյն կենդանի միայն են թէ պահպանին հողով և մատուցանել:

ԱՊԱՐԱՆՔ ՊԻՂԱՏՈՍԻՆ. Որ կայ 'ի մէջ քաղաքին առ Ճանապարհաւ, որ հանէ 'ի դրանէն արևելից. թէ և 'ի ժամանակէ անտի բազմապատիկ փոփոխութիւնս կրեալ է, բայց կայ այժմ տեղին այն շինեալ զինուորանոց ատրուշաւ:

Հանդէպ այսմ 'ի միւս կողմ Ճանապարհին է տեղին ձաղանաց և տափ Փառաց պսակի. քանզի յորժամ մերկեալ եհան Պիղատոս դատաւոր վասն մահուանն կենարարին, այսր ածին զինուորքն զՅիսուս, պսակ կապեալ բոլորակի 'ի փշոց եդին 'ի գլուխ նորա և այլ այլ եւս անարգանս կրեցին ձաղկեցին զՏէրն մեր:

ՍՈՒՐԲ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՎԵՀԱԳՈՅՆ ՏԱՃԱՐՆ. Յոր ընդ մտանելն 'ի բարձրաբերձ դրանէն, հանդէպ առաջի աչաց երևի վէմն Պատանքին, որ անուանի օծանելութեան գործէ 'ի հողի մարմնոյն. և իբր աչօք նկատէ 'ի վերայ նորուն կենդանին յարութենէ մեռոցն աւուրսն տարածեալ 'ի վերայ վիմին 'ի մահկանացու ձեռաց պատանին. Ոմ, քանի՛ փոքրիկ արարիչ մեղաւորաց առ խաչանիշ դրէ մի 'ի վերայ վիմին եղեալ համբուրեն ապաշխարաւ եւ թողուն զմահ Տեառն:

ԳՈՂԳՈԹԱ. Ձեռնարան անուանեալ պաշտօն բարձրացեալ կայ 'ի մէջ

լայնածաւալ Տաճարին Ս. Յարութեան. ընդ որ ելանեն աստիճանօք, և անդ խակյն հանդէպ աչաց երևի Մարդադէմ պատկեր խաչելոյն. որ կայ բազկատարած 'ի փայտ մահու սևեռեալ. ընդ որ 'ի հայելն ո՞ լիցէ այն, որ սրտիւք ոչ ճմլիցի, և անկեալ առ. պատուանդան խաչին ոչ երգեսցէ. « Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք, և զխաչելութիւնդ քո փառաւորեմք. եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ », և այլն.

ՏԱՐԱԾՄԱՆ ՏԵՂԻՆ. Մօտ առ ընթեր կայ 'ի ձախակողմ Գողգոթային. ուր խաչահան զինուորք տարածեցին նախ զՏէրն 'ի վերայ փայտ խաչին զօտս և զձեռս քարշեալ բևեռեցին, և ապա անդուստ վերացուցեալ աղաղակաւ բերեալ կանգնեցին 'ի գագաթան Գողգոթայի գօլ 'ի տեսիլ և նշաւակ ամենեցուն.

ԳԵՐԵԶՄԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ. Որ ընդունարան եղև մեռեալ խաչելոյն և ուր պահ մի ննջեաց Յուդայի Առիւծն, կայ 'ի միջակէտ Ս. Յարութեան Տաճարին. յորոյ վերայ շինեալ կայ փոքրիկ գմբէթ մի, որ չէ այնքան վայելուչ և արուեստաշէն.

Յառաջին դրանէ Գերեզմանատանն՝ ընդ մտանելն՝ կայ առաջի մի վէմ, յորոյ վերայ լուսափայլ Հրեշտակն նստեալ աւետէր կանանց՝ « Զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս ». յերկրորդ դրանէն մտեալ՝ անդ է ահա Փրկչին Գերեզման և վէմն անշարժ, որ 'ի Բեթլեհեմի Մօրէն հոլովեցաւ. խորտակեաց զզօրութիւն մահու և աշխարհի իշխանին. և յարուցեալ 'ի մեռելոց գոչեաց զօրութեամբ « Ո՞ւր է, մահ՝ յաղթութիւն քո և ո՞ւր դժոխք՝ խայթոց քո ». Ո՞վ ասա կարող է չափել զհաւատս ջերմեռանդ հաւատացելոյն, որ անդադար մտանեն ելանեն 'ի Գերեզմանատանն. և համբուրեն զմահու վէմն, որ կեանս եւս մահացեալ ոգւոց:

Երանի թէ ճշգրտահան նկարիչ լինէի և կարէի նկարել այն վսեմագոյն հանդէսն, որ լինի 'ի վերջի շաբաթ օր 'ի ժամ լուսահանութեան.

Բոլորովին սուրբ Յարութեան Տաճարն ցնծայ զանազան քրիստոնեայ ազգաց լի հաւատացելովք. յայն մեծ օր, զոր Աստուած առանձին ստեղծ՝ Քրիստոսի ժողովրդոց ցնծութեան օրն է. Նա բուռն ցնծութեամբ ծափս հարկանէ. երգէ զԴաւթին քնար. Ծափս հարէք, ամենայն հեթանոսք. Յայտին եւ 'ի վերայ գմբէ-

թին կացեալ զգիրս իւր կարդա․ «Լուսաւորեա՛ց լուսաւորեա՛ց Երուսաղէմ, զի հասեալ է լոյս քո»․ խաժամուժ կարծեցեալ ամբոխն Լո՛յս լո՛յս աղաղակէ և ահա Լուսահան պաշտօնեայք որք կան կի ներքս Մատրան Գերեզմանին 'ի կանթեղացն անտի զխրձունս մոմեղինաց վառեալ տան 'ի դուրս։ Եւ ահա աստ է տեսանել․ ժողովուրդ ցնծութեան աղաղակաւ և որոտմամբ վերացուցանէ ըզՏաճարն։ Աստ է տեսանել թէ որպէս լուսատենչ հաւատացեալք զլոյսն 'ի ձեռանէ միմեանց յափշտակեն․ եւ բարւոք առնեն, զի արքայութիւն երկնից բռնաբարի եւ բռունք յափշտակեն զնա։ Եւ ահա 'ի խուռն վայրկեանի տաճարն և իւր համազգային հաւատացեալք 'ի մէջ լուսոյ ողողին։ Եւ Աստուած Հայր այսպէս փառաւորէ զտեղի սրբութեան Որդւոյ իւրոյ․ զի ասաց ինքն «Հա՛յր, փառաւորեա՛ զՈրդի քո, զի և Որդի փառաւորեսցէ զքեզ»։

Քաղաքակրթեալ լուրջ և զգօն մարդ մի տեսանեմ, որ 'ի բացուստ կացեալ ուշով դիտէ յայս տեսարան, և 'ի միտս իւր դատաստան առնէ․ մինթէ այս իցէ երկիւղածութիւն և փառաւորութիւն Տաճարին Աստուծոյ։ Լրջամիտ մարդն այսպէս դատի և անդէն գայթակղի 'ի միտս։

Այլ թէ որ յուշ ածէ զբան Փարիսեցւոյն՝ ոչ գայթակղի, այլ առաւել շինի 'ի հաւատս, զի ասացին նոքա վասն Յիսուսի․ «Միթէ յիշխանաց կամ 'ի փարիսեցւոց ոք հաւատա՞ց 'ի նա, այլ այն խաժամուժ ամբոխն, որ ոչ գիտեն զօրէնս և նզովեալք են»։

Այո՛ Քրիստոսի հաւատացող, և զՔրիստոս սիրող և պաշտող՝ պարզամիտ և խաժամուժ ամբոխն էր, որ յաճախ երթայր զկնի նորա, ուր և երթայր։ Այո՛ այդ հասարակ և առաւել աղքատիկ դասուն ժողովուրդն է, որ յիշէ զԵրուսաղէմ և զտեղիս յիշատակաց մարդացելոյն Աստուծոյ, յամենայն տարի ջերմեռանդ ոգւով դիմէ յուխտ, և 'ի վաստակոց քրտանց իւրոց բաժին հանեալ կաթիլ կաթիլ նուիրէ Ս․ Տեղեաց 'ի պահպանութիւն եւ 'ի փառս փառաւորելոյն Երուսաղէմի։

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏԵՂԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ․ Է 'ի կատար լերին Ձիթենեաց յարեւելից կուսէ յանդիման քաղաքին․ ուր թէպէտ յառաջին դարս շինեալ կայր փառաւոր եկեղեցի, այլ զանազան բազմադիմի պատճառանօք քանդեալ է եկեղեցին, միայն շրջապատ Ս․ Տեղւոյն

պարապեալ, և 'ի միջի կայ դմբէթ մի, յորում կայ Ոտնատեղին Յի-սուսի : Ի տարւոջ մի անգամ յամենայն քրիստոնեայ ազգաց 'ի տօնի Համբարձմանն անդ վրան հարեալ՝ պատարագ մատուցանեն 'ի յիշա-տակ հրաշափառ Համբառնալոյն Մարմնացեալ Աստուածորդւոյն ; որ եթող զաշխարհ և գնաց առ Հայրն . յետ կատարելոյ զխաչին և փրկութեան խորհուրդ :

ԳԵՐԵԶՄԱՆ ԱՄԵՆՕՐՀՆԵԱԼ ԿՈՒՍԻՆ . Որ ամփոփեալ կայ 'ի մէջ ձորոյն Գեթսեմանի և է խորագոյն յոյժ գրեթէ քառասուն և ա-ւելի եւս աստիճանօք իջանեն 'ի վայր : Յառաջագիծ Տաճարին խա-չաձեւ իմն է . և վերին կամարք կարի հնաշէն երեւին : Ասեն թէ 'ի վերայ խորագոյն տաճարին՝ յառաջին դարս կայր հրաշակերտ եկեղեցի, զոր 'ի վաղուց քանդեալ են արշաւանաց տաք : Յամենայն աւուրս անխափան 'ի մէնջ և 'ի Յունաց պատարագ մատուցանի 'ի վերայ գերեզմանի Մօր Տեառն : Ո՞ կարէ պատմել առա զջերմե-ռանդութիւն սրանց և առաւել կանանց որք գան երամովին, եւ գրկեն զտապան երկնից Տիրուհւոյն, լան եւ խնդրուածս առնեն 'ի նմանէ . որ վասն իւր ուխտաւորաց բարեխօս է առ Որդին իւր Միածին :

ԱԹՈՌ ՄՐՑՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ . Որ է միակ Հայոց և առանձին սեփ-հականութիւն . արդարեւ չնաշխարհիկ է, և մեծահաշակ անուանք համայն քրիստոնեայ ազգաց տեսութեան տենչալի հանդիսանայ, իբրեւ զերկին պանծայ մեծվայելչութեամբն իւր 'ի քաղաքին Ե-րուսաղէմ . բարձրացեալ 'ի վերայ լերինն Սիոնի . ուր հանգչէր եր-բեմն տապանակն Աստուծոյ և ուր Դաւթի արքունիքն էր, որ 'ի հաղածանս իւր սիրահար էր Սիոնին . և երգէր Սաղմոսարանաւն . « Որպէս սիրելի են յարկք քո, Տէր զօրութեանց . ցանկայ և փա-փագի անձն իմ 'ի գաւիթս քո » :

Սուրբ Յակոբեանց վանք, ոչ միայն իւր նուիրական գրիւք պանծալի է . այլ և իւր լայնածաւալ ընդարձակութեամբ մեծ ա-ռաւելութիւն ունի քան զայլ ամէն վանօրայս, որք կան յԵրուսա-ղէմ 'ի ձեռս այլ և այլ քրիստոնեայ ազգաց : Վասն այս իսկ զար-մանան ուխտաւորք Եւրոպիոյ և ասեն՝ չգիտե՞մք, թէ որպէս յա-ջողեալ է, զի այսպիսի անզուգական հաստատութիւն մի՝ բաժին վիճակեալ է, այն անկեալ և նուաղեալ ազգին Հայոց : Զայս ասեն

եւ չգիտեն զանցելոյ պատմութիւն՝ թէ Հայք ոչ միայն զվանս Սուրբ Ցակոբեանց, այլ և զեօթնասասուն վանորայս ունէին յԵրուսաղէմ յառաջին դարս. որոց աւերածեալ տեղիք դեռ եւս նշմարին։

Սուրբ Ցակոբեանց՝ վանք շուրջանակի ամրափակեալ է պարսպօք և 'ի միջի շինեալք կան թէ 'ի Նախնեաց անտի և թէ 'ի Նոր ժամանակս առաւել քան զեօթն հարիւր սենեակք. 'ի պէտս միաբանից և ուխտաւորաց. յորս իբրեւ մեծագործ և հոյակապ շինուածք համարին. Պատրիարքարանն; Ուսումնարան և մի եւս Նոր Թաղ. որ յիշատակք են 'ի Տէր Հանգուցեալ Ցովհաննէս Պատրիարքին։ Բայց 'ի յայնչափ շինուածոցն որ իբրեւ զփոքրիկ քաղաք մի ձեւանայ, վանքն ունի նաեւ ընդարձակ պարտէզս, որք առաւել եւս ընդարձակեն և վայելչացուցանեն զսահմանս վանուց։

Սուրբ Ցակոբեանց վանուց տաճար և եկեղեցին թէ և փոքր է, այլ գեղեցիկ է յոյժ իւր ներքին վայելչութեամբն. 'ի վերայ չորից սեանց հաստատեալ է կաթուղիկէն. համայն որմունք եւ սիւնք տաճարին զարդարեալ են զանազան խորհրդաւոր պատկերօք. որք յանդիման առնեն աչաց զՀին և Նոր Կտակարանի պատմութիւն. զեկեղեցւոյ հարց և զՄարտիրոսաց նահատակութիւն։ Իսկ յաջակողմ տաճարին կայ այն հրաշալի մատուռն, ուր ամփոփեալ է Գլուխն Ցակոբայ Առաքելոյն. յորում հաստատեալ կայ կիսաբոլոր մի սեղան. և յաւուրս շաբաթու միշտ պատարագ մատուցանի։

Իսկ Սուրբ Ցակոբեանց տաճարին փառք, եկեղեցւոյ արարողական պաշտամունք, Մեծահանդէս տօնից պայծառափայլ հանդերձանք, թէ որպիսի Հրաշափառութեամբ կատարին ամենայն կարգաւորութեամբ, ես ոչ կարեմ զնոյն վայելուչ նկարագիր հանել 'ի համառօտութեանս, միայն աչք պիտին տեսանել։

Ոչ մոռանամ 'ի վերջ ծանօթութեանս յիշել հակիրճ բանիւ զհամայն միաբանական ընտանիս Սուրբ Ցակոբեանց մեծի Տանն. յորում պարունակին ոգիք իբրեւ հարիւր և ութսուն. և բաժանին 'ի զանազան դասակարգութիւնս. Եպիսկոպոսք, Վարդապետք, Սարկաւագունք, Ուրարակիրք, Դպիրք. անդամք համարին նա եւ քրձազգեաց միաբանք, մայրապետք։ Որոց իւրաքանչիւր դասակարգութիւնք ամենայն խղճամիտ հաւատարմութեամբ կատարեն

